ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

По ленинскому пути

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



6

ՀՈՒՆԻՍ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



---

# ՔԻՄԻԱՆ Ի ՍՊԱՍ ԴՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը ուրվագծել է մեր երկրում ժողովրդական տնտեսության հզոր վերելքի հոյակապ ծրագիր։ Այն համարձակ ու ստեղծագործական մտահղացումները, որոնք իրենց մարմնացումն են գտել համագումարի պատմական որոշումներում և նրանցից անմիջականորեն բխող պարտիական հետագա փաստաթղթերում, ուղղված են սոցիալիստական էկոնոմիկայի բուռն զարգացման, մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու բարգավաճման, սովետական ժողովրդի բարօրության վեհ ու ազնիվ նպատակին։*

*Պարտիայի XX համագումարը ստեղծագործական աշխատանքի նոր լիցք ու ավյուն տվեց, թևավորեց ու հերոսական գործերի նպատակամղեց աշխատավորական միլիոնավոր զանգվածներին։ Պարտիայի, կառավարության ու ժողովրդի համատեղ ջանքերն արդեն տալիս են իրենց պտուղները։ Պայքարի արդյունքներն իրոք հիասքա՜նչ են, անսահմանորեն վիթխարի։*

*Մեծ աշխատանքների նախագծումներին համապատասխան վերջերս իրականացվել են պետական խոշոր նշանակություն ունեցող մի շարք միջոցառումներ արդյունաբերության ու շինարարության կառավարումը կատարելագործելու, կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու ուղղությամբ։*

*Սոցիալիստական էկոնոմիկայի բնագավառում ձեռք բերված հաջողությունները թույլ են տալիս ավելի ու ավելի լավ բավարարելու աշխատավորների նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքները։ Եվ դա օրինաչափ երևույթ է, քանի որ սոցիալիզմի պայմաններում մարդը յուր բոլոր պահանջմունքներով հանդերձ գտնվում է հասարակության ուշադրության կենտրոնում։ Մեր պարտիայի ու կառավարության համար չկա ավելի մեծ հոգս, քան ժողովրդի կարիքների ու պահանջմունքների նկատմամբ եղած հոգատարությունն է։ Այդ մասին են կրկին անգամ վկայում վերջին 1—2 տարում ձեռնարկված միջոցառումները. բարձրացվել է ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը, կրճատվել է աշխատանքային օրը, ավելացել են պետական կենսաթոշակները, ջանքեր են գործադրվում առաջիկա 10—12 տարում բնակարանների պակասը վերացնելու ուղղությամբ։*

*Սովետական մարդու նկատմամբ մեր պարտիայի ու կառավարության ջերմ հոգատարությամբ է տոգորված ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի՝ «Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին» որոշումը։ Այն միջոցառումները, որոնք*

շարադրված են պլենումի որոշման և այդ հարցի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, մի նոր ավանդ են կոմունիստական շինարարության մեջ, նշանակալից նոր քայլ ՍՍՌՄ տնտեսական գլխավոր խնդրի՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին ամենակարճ ժամկետներում հասնելու և անցնելու խնդրի լուծման գործում:

Մեր երկիրն անշեղ վերելք է ապրում, հաստատ ու աներեր ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները: Պլենումը մարքսիզմ-լենինիզմի դիրքերից գնահատեց սովետական կարգի պատմական հաղթանակներն անցած 40 տարիների ընթացքում, սովետական մարդկանց մաքառումների ու ջանքերի հերոսական ուղին: Սովետական պետության գոյության ժամանակաշրջանի միայն 20 տարուց փոքր ինչ ավելի հատվածում մեր երկիրը հնարավորություն է ունեցել զբաղվելու խաղաղ ստեղծագործ աշխատանքով: Բայց որքա՜ն մեծ ու իրոք տիտանական է եղել նրա առաջընթացը նոր հասարակարգի կառուցման դժվարին ու մարդկության անծանոթ ուղիներով: Կարճ ժամկետում հաղթահարելով դարավոր տնտեսական հետամնացությունը՝ սովետական ժողովուրդն իր Հայրենիքը դարձրեց ինդուստրիալ-կոլտնտեսային հզոր տերություն, ստեղծեց հզոր, ժամանակակից բարձր տեխնիկայի վրա խարսխված սոցիալիստական էկոնոմիկա: Նա աշխարհում առաջինն իր երկրում կառուցեց սոցիալիզմ և ՍՍՌՄ-ը վերածեց սոցիալիստական աշխարհի անառիկ ամրոցի:

Մեր Հայրենիքի մեծագույն նվաճումն է գիտության ու տեխնիկայի բոլոր ճյուղերի չտեսնված ծաղկումը: Սովետական մարդիկ տիրապետեցին ատոմային էներգիայի գաղտնիքին, կարողացան աշխարհում առաջինն այդ էներգիան կիրառել խաղաղ նպատակներով, ստեղծել միջմայրցամաքային բալիստիկ հրթիռներ և Երկրի արհեստական արբանյակներ:

Տնտեսական շինարարության բնագավառում ձեռք բերված հաջողությունների արդյունք են ամենից առաջ այն բանի, որ պարտիան ու կառավարությունը հետևողականորեն անց են կացրել ու իրականացնում են մեծ Լենինի ցուցումները ծանր արդյունաբերության առավել զարգացման մասին:

Անսահմանորեն բարձրացել է ՍՍՌՄ հեղինակությունը միջազգային ասպարեզում. ամբողջ աշխարհում խաղաղության պահպանման, ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդման համար իր մղած աննկուն պայքարով նա նվաճել է երկրագնդի հարյուր միլիոնավոր մարդկանց սերն ու վստահությունը:

Պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը, որը ջերմ արձագանք գտավ և միահամուռ հավանության արժանացավ սովետական մարդկանց կողմից, պետական և քաղաքական հսկայական նշանակություն ունի: Նա ապահովում է ծանր ինդուստրիայի, սոցիալիստական էկոնոմիկայի հետագա բուռն զարգացումը, տեխնիկական պրոգրեսը մեր տնտեսության բոլոր ճյուղերում:

Քիմիական արդյունաբերությունը ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերից մեկն է: Մետալուրգիայի, վառելիքային ու էներգետիկ արդյունաբերության, մեքենաշինության և շինարարական ինդուստրիայի հետ մեկտեղ քիմիան կարևոր դեր է խաղում կոմունիստական շինարարության մեջ: Վ. Ի. Լենինը գրել է. «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը



նախ և առաջ պահանջում է ապահովել խոշոր ինդուստրիայի նյութական հիմքերը՝ զարգացնել վառելանյութի, երկաթի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության արտադրությունը» (Երկեր, հատ. 27, էջ 307):

Պարտիան ու կառավարությունը միշտ էլ մեծ ուշադրություն են նվիրել քիմիական արդյունաբերության զարգացմանը: Անցյալում, նախառևոլյուցիոն Ռուսաստանում, փաստորեն չի եղել քիմիական արդյունաբերություն: Սոցիալիստական շինարարության տարիներին մեզ մոտ կառուցվել են քիմիական հազարավոր ձեռնարկություններ, ստեղծվել է ժամանակակից հզոր քիմիական արդյունաբերություն: Բավական է նշել, որ 1957 թվականին քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1913 թվականի համեմատությամբ մեծացել է 112 անգամ: Ներկայումս Սովետական Միությունը քիմիական արտադրանքի ծավալով ԱՄՆ-ից հետո աշխարհում գրավում է երկրորդ տեղը:

Մեր երկիրը քիմիական արդյունաբերության զարգացման տեմպերով առաջ է անցնում առավել զարգացած կապիտալիստական երկրներից: Եթե 1937 թվականի համեմատությամբ 1956 թվականին քիմիական արտադրանքի թողարկումը ՍՍՌՄ-ում ավելացել էր 7 անգամ, ապա այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում այն ավելացել է 4,1 անգամ, Անգլիայում՝ 3, Ֆրանսիայում՝ 2,3, իսկ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում՝ 2,1 անգամ:

Մեծ զարգացում է ապրում քիմիական արդյունաբերությունը Սովետական Հայաստանում: Ռեսպուբլիկայի արդյունաբերության այդ հիմնական ճյուղը, որն ամբողջապես նոր է ստեղծվել Սովետական իշխանության տարիներին, զարգացել է տեղական հանքային հարուստ հումքի, էժան հիդրոէլեկտրաէներգիայի և գունավոր մետաղաձուլության արդյունաբերական մնացուկների բազայի հիման վրա: Մեզ մոտ կառուցվել են ժամանակակից բարձր տեխնիկայով հագեցված այնպիսի խոշոր ձեռնարկություններ, ինչպիսիք են Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, Երևանի Կիրովի անվան, «պոլիվինիլացետատ», ռետինե-տեխնիկական իրերի, խրոմպիկի, Էջմիածնի պլաստմասսայի գործարանները, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատը և այլն: Այդ ձեռնարկությունները երկրին տալիս են սինթետիկ կաուչուկ, կալցիում-կարբիդ, կաուստիկ սոդա, սինթետիկ ամիակ, պլաստմասսաներ, վինիլացետատ, ծծմբաթթու, հանքային պարարտանյութեր և նրանցից ստացվող ածանցյալ նյութերը՝ ավտոդողեր, ռետինե-տեխնիկական իրեր, ներկեր և այլն:

Չնայած ձեռք բերած մեծագույն նվաճումներին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նշեց, որ մեր երկրում քիմիական արդյունաբերության և հատկապես սինթետիկ նյութերի արտադրության ներկա մակարդակն ու զարգացման տեմպերը չեն բավարարում ժողովրդական տնտեսության աճող պահանջները: Չնայած առկա բոլոր հնարավորություններին մեզ մոտ պատշաճ ուշադրություն չի դարձվել քիմիական այդ նոր արտադրությունների զարգացմանը. արհեստական և սինթետիկ թելերի, պլաստմասսաների և սինթետիկ այլ նյութերի արտադրությամբ մենք լրջորեն ետ ենք մնում կապիտալիստական մի շարք երկրներից: Արհեստական և սինթետիկ թելերի թողարկմամբ Սովետական Միությունը աշխարհում գրավում է վեցերորդ տեղը, իսկ պլաստմասսաների արտադրությամբ՝ հինգերորդ տեղը:

Քիմիան այժմ վճռական դեր է խաղում մեր տնտեսության, տեխնիկայի

բոլոր բնագավառներում: Պարտիան ժամանակին նկատեց սոցիալիստական տնտեսության այդ ճյուղի, հատկապես նրա նոր արտադրությունների զարգացման և արդի գիտության նվաճումների միջև ստեղծված անհամաչափությունը և ժամանակին նպատակամղեց սովետական ժողովրդին՝ քիմիական արդյունաբերությունը բարձրացնելու ժողովրդական տնտեսության ժամանակակից պահանջների և համաշխարհային գիտության ու տեխնիկայի նվաճումների մակարդակին:

«Ներկայումս,— ասված է պլենումի որոշման մեջ,— ծանր արդյունաբերության մեջ, գիտության մեջ և տեխնիկայում ձեռք է բերված այնպիսի մակարդակ, երբ մենք, վնաս չհասցնելով ծանր ինդուստրիայի հետագա առավել զարգացմանը և երկրի պաշտպանունակությանը, կարող ենք զգալիորեն ավելի արագ տեմպերով ավելացնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, որպեսզի մոտակա 5—6 տարում լիովին բավարարենք բնակչության պահանջմունքները գործվածքների, հագուստի, կոշիկի և այլ ապրանքների ասպարեզում: Այդ խնդրի լուծման գործում մեծ նշանակություն ունի քիմիական արդյունաբերության ավելի արագ զարգացումը»:

Մեր երկիրն ունի այն ամենը, ինչ անհրաժեշտ է քիմիայի արագ զարգացման համար: Կան հումքի անսահմանափակ պաշարներ՝ նավթ և բնական գազեր, նավթավերամշակման ու կոքսաքիմիայի նյութեր, ֆոսֆորիտներ, ծծումբ, կալիական աղեր, թերթաքարեր, ինչպես նաև փայտանյութ, գյուղատնտեսական արտադրության մնացուկներ և այլն: Ունենք մեքենաշինություն, որը կարող է քիմիական արդյունաբերությանը տալ բարձր արտադրողական սարքավորումներ, ապարատներ, ունենք տնտեսության այդ ճյուղը վճռականորեն առաջ մղելու ընդունակ բանվորական, ինժեներա-տեխնիկական լավագույն կադրեր, գիտական խոշոր ուժեր: Այստեղ կարևորն այն է, թե պարտիայի կողմից առաջադրված խնդիրը հաջողությամբ լուծելու համար ինչպես կօգտագործվեն առկա բոլոր նպաստավոր պայմանները:

Պարտիան սովետական ժողովրդի առջև բաց է արել ստեղծագործական աշխատանքի նոր լայն ասպարեզ, զարգացման լայն հեռանկարներ: Բավական է նշել, որ պլենումի որոշմամբ նախատեսվում է 1959—1965 թթ. քիմիական կարևոր նյութերի արտադրությունը մեծացնել առնվազն 2—3 անգամ, իսկ արհեստական և սինթետիկ թելի և պլաստմասսայի արտադրությունը՝ 4,5—8 անգամ:

Այստեղ խոսքը վերաբերում է պոլիմերային միացությունների՝ սինթետիկ ու արհեստական թելերի, պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի արտադրության արագաթափ զարգացմանը: Պոլիմերները բարձր մոլեկուլային օրգանական միացություններ են, որոնց ստեղծումն ու պրակտիկ գործադրումը հանդիսանում է ժամանակակից քիմիայի կարևորագույն նվաճումը:

Քսաներորդ դարը պոլիմերների դարն է: Ներկայումս քիմիկոսները գիտեն մոտ երեք միլիոն օրգանական միացություններ և ավելի քան 50 հազար հանքային (ոչօրգանական) նյութեր: Այդ քանակի նյութերից համաշխարհային քիմիական արդյունաբերությունն արտադրում է մոտ 20 հազար բազմազան պրոդուկտներ: Բնության մեջ քիչ են բնական պոլիմերները (բամբակ, մետաքս, բուրդ, կաշի, կաթ, միս, անտառանյութ, բնական կաուչուկ և այլն), որոնցից պատրաստված արտադրանքի ասորտիմենտը խիստ սահմանափակ է: Գիտությունն ստեղծել է նոր, արհեստական պոլիմերներ, որոնց համար



հումք են հանդիսանում հիմնականում նավթը, բնական գազը, կոքսաբենզոլային արդյունաբերության պրոդուկտները, ածխաջրածնային արդյունաբերական գազերը, ցելյուլոզան և այլն: Ներկայումս քիմիան բաց է արել անսպառ հնարավորություններ սինթեզելու ցանկացած պոլիմերային մոլեկուլները և նրանցից ստեղծելու մարդու համար անհրաժեշտ այնպիսի առարկաներ, նյութեր, որոնք չեն եղել նախկինում:

Պոլիմերները հեղաշրջող, վճռական դեր են խաղում էկոնոմիկայի, տեխնիկայի մեջ: Այժմ չկա մարդկային գործունեության մի բնագավառ, ուր քիմիան չգտնի իր կիրառումը. սինթետիկ և արհեստական նյութերը խոր կերպով թափանցել են ժողովրդական տնտեսության համարյա թե բոլոր ճյուղերը, լայն օգտագործում են գտնում տեխնիկայում, բժշկության մեջ և կենցաղում: Սինթետիկ նյութերը շատ վաղուց դադարել են սուրրոգատ (փոխմիջոց) կամ բնական նյութերի (մետաղներ, տեքստիլային մանրաթել, բնական կաուչուկ և այլն) ոչ լիարժեք փոխարինիչներ լինելուց: Ներկայումս առանց այդ նյութերի լայն օգտագործման հնարավոր չէ հրթիռային տեխնիկայի, ավտոմոբիլային և ավիացիոն արդյունաբերության, մեքենաշինության, էլեկտրատեխնիկայի և ռադիոտեխնիկայի, նավաշինության և այլ ճյուղերի արագ զարգացումը:

Սինթետիկ ու արհեստական նյութերից պատրաստված շինվածքները, առարկաներն իրենց հատկություններով ոչ միայն չեն զիջում, այլև հաճախ զգալիորեն գերազանցում են բնական հումքից պատրաստված առարկաներին: Նրանք ունեն մեծ ամրություն, փոքր տեսակարար կշիռ, թեթև են, ճկուն, լավ էլեկտրամեկուսիչ, հեշտ վերամշակելի. նրանցից պատրաստված առարկաներն էժան են, գեղեցիկ ու բարձրորակ: Քիմիան տալիս է հսկայական ավտոդողերից մինչև հազվագյուտ դեղերը, պողպատից ամուր պլաստմասսայի ատամնավոր անիվներից մինչև շղարշե գործվածքները: Նեյլոնի թելերից պատրաստված բարակ պարանն իր ամրությամբ չի զիջում պողպատե ճոպանին. որոշ պլաստմասսաներ ավելի ամուր են, քան շատ մարկայի պողպատներ:

Սոցիալիզմը առատություն է, մարդու պահանջմունքների առավելագույն բավարարում: Սինթետիկ ու արհեստական նյութերի արտադրությունը նպաստում է այդ առատության ստեղծմանը, իր հետ բերելով ժողովրդական լայն սպառման առարկաների լիություն: Քիմիան տալիս է հիանալի գործվածքեղեն, կոշկեղեն, հագուստ, տնային և տնտեսական գործածության առարկաներ, դեղեր, բուրավետ նյութեր և այլն, հարստացնելով ու լավացնելով նրանց ասորտիմենտը:

Պլենումում ընկեր Խրուշչովը իր զեկուցման մեջ բերել է բազմաթիվ օրինակներ, որոնք ցույց են տալիս արհեստական և սինթետիկ նյութերի դերն ու նշանակությունը մեր կյանքում: Այսպես, նախատեսվում է 1965 թվականին արհեստական կաշվե կոշիկի արտադրությունը հասցնել 93 միլիոն զույգի. բնական կաշվից լրացուցիչ կերպով այդ քանակի կոշիկ արտադրելու համար հարկավոր կլիներ մորթել մոտ 2,5 միլիոն գլուխ խոշոր եղջերավոր և 4 միլիոն գլուխ խոզ ու մանր եղջերավոր անասուն: 1965 թվականին արտադրվելու է 5 միլիոն քառակուսի մետր արհեստական կարակուլ. դա համապատասխանում է մոտավորապես 30 միլիոն կարակուլի գառան մորթու և այլն:

*Պարտիայի Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումները, որոնք կազմում են XX համագումարի կողմից նախանշված մեծ աշխատանքների բաղկացուցիչ մասը, հնարավորություն են տալիս արագացնելու քիմիական արդյունաբերության, և հատկապես սինթետիկ նյութերից պատրաստված առարկաների արտադրության զարգացումը մեր երկրում։*

*Սինթետիկ նյութերի մասսայական արտադրության իրագործումը հնարավորություն կընձեռնի 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացնելու սինթետիկ ու արհեստական թելի հետ խառը գործվածքների թողարկումը՝ բրդե գործվածքներինը՝ 2,3 անգամ, մետաքսե գործվածքներինը՝ 1,75 անգամ, բամբակե գործվածքներինը՝ 6 անգամ, արհեստական և սինթետիկ թելից պատրաստված վերնահագուստի և սպիտակեղենի տրիկոտաժինը՝ ավելի քան 9 անգամ, գուլպեղենինը՝ 3,2 անգամ, արհեստական կարակուլինը՝ 14 անգամ, արհեստական կաշվե կոշիկինը՝ 2,3 անգամ, մանրածակոտկեն թեթև ներբանով կոշիկի արտադրությունը՝ 40 անգամ։*

*Քիմիայի նորագույն նվաճումները հնարավորություն են տալիս ժողովրդական տնտեսության մեջ ավելի լրիվ օգտագործելու երկրի բնական բազմահարուստ ռեսուրսները։ Ինչպես տեսնում ենք, գյուղատնտեսությունից ստացվող բնական հումքից բացի, սինթետիկ նյութերի օգտագործումը հնարավորություն կտա մեծապես ավելացնելու հագուստի, կոշիկի, գործվածքների, տնային և տնտեսական գործածության առարկաների արտադրությունը։ Դա միաժամանակ մեծ չափերով փոխարինելու է գալիս սև ու գունավոր մետաղներին, համաձուլվածքներին, խոշոր ռեզերվներ է ստեղծում արագացնելու շինարարության, հատկապես բնակարանային շինարարության տեմպերը, բարձրացնելու նրա որակը և իջեցնելու շինարարական աշխատանքների ինքնարժեքը։*

*Քիմիական արդյունաբերության զարգացման նպատակով ներդրվելու են հսկայական միջոցներ։ Բավական է նշել, որ 1959—1965 թթ. կառուցվելու և վերասարքավորվելու են 257 քիմիական և նրան հարակից ձեռնարկություններ։*

*Վերջերս տեղի ունեցավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հերթական պլենումը, որը լայնորեն քննարկեց ու միահամուռ հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումներին։ Նա կոնկրետ միջոցառումներ մշակեց ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ ու արհեստական նյութերի արտադրության զարգացումն արագացնելու մասին, սահմանեց տնտեսության այդ ճյուղի զարգացման հիմնական ուղղությունները։*

*Առաջիկա 1959—1965 թվականներին զարգացման նոր, պայծառ հեռանկարներ են բացվում ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համար։ Նախատեսվում է կառուցել քիմիական արդյունաբերության, առանձնապես սինթետիկ նյութերի նոր արտադրությունների մի շարք ձեռնարկություններ, ընդլայնել ու վերակառուցել գործող առանձին գործարաններ։ Այդ նպատակով յոթամյակի ընթացքում ընդհանուր առմամբ ներդրվելու են 5,6 անգամով ավելի շատ կապիտալ միջոցներ, քան ներդրվել են անցած 7 տարում։ Դա հնարավորություն կտա ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման 1957 թվականի մակարդակը 1965 թվականին գերազանցել մոտ չորս անգամ։*



*Մեզ մոտ քիմիական արդյունաբերությունը զարգանալու է տեղական*
*բնական հարստությունների, Ղարադաղից ստացվող բնական գազի լայն օգ-*
*տագործման և էներգետիկ ռեսուրսների ընդլայնման բազայի վրա։ Պլենումը*
*նշեց, որ քիմիական արդյունաբերությունը մեզ մոտ հիմնականում զարգա-*
*նալու է քիմիական նոր արտադրությունների՝ արհեստական ու սինթետիկ*
*նյութերի արտադրության գծով։*

*Վերակառուցվելու և լայնացվելու է Երևանի Կիրովի անվան գործարանը։*
*Ացետիլենը, որը ներկայումս ստացվում է կալցիում-կարբիդից, կստացվի*
*բնական գազից։ Դա հնարավորություն կընձեռի սինթետիկ կաուչուկի և*
*կաուստիկ սոդայի արտադրությունն ավելացնել մոտ երկու անգամ, տնտե-*
*սել մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, իջեցնել ացետիլենի արտադրանքի*
*ինքնարժեքը։ Այստեղ կազմակերպվելու է պոլիվինիլքլորային ձյութերի արտա-*
*դրություն, որը լայն կիրառում կգտնի կաբելային արտադրանքի պատրաստ-*
*ման գործում՝ տնտեսելով մեծ քանակությամբ գունավոր մետաղներ և կաու-*
*չուկ։ Այդ ձյութերի բազայի վրա հնարավոր է կազմակերպել մոմլաթի,*
*արդուզարդի իրերի, տնային գործածության առարկաների, սանտեխնիկական*
*սարքավորումների արտադրությունը և այլն։*
*«Պոլիվինիլացետատ» գործարանի վերակառուցման և ընդարձակման*
*հետևանքով կավելանա՝ քացախաթթվի արտադրությունը 6,8 անգամ։ Այս-*
*տեղ կազմակերպվելու է ացետիլցելյուլոզայի արտադրությունն այն հաշվով,*
*որ այն լրիվին բավարարի Կիրովականում կառուցվող ացետատային մետաք-*
*սի գործարանի պահանջմունքները, ինչպես նաև կազմակերպելու մեկուսիչ*
*ու պլաստմասսային նոր տեսակի նյութերի արտադրությունը։*
*Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի զար-*
*գացումը հիմնականում ընթանալու է երեք ուղղությամբ՝ կազմակերպվելու է*
*արհեստական կորունդի, մելամինի, դիցիանդիամիդի արտադրությունը։ Ար-*
*հեստական կորունդի (նա իր կարծրությամբ մոտենում է ալմասին) արտա-*
*դրությունը լայն կիրառում կգտնի գործիքաշինության և սարքաշինության*
*մեջ, կփոխարինի ժամացույցի քարին, կօգտագործվի թանկարժեք զարդեր*
*պատրաստելու համար։ Կորունդի բազայի վրա Արզնիում կազմակերպվելու է*
*ժամացույցի և տեխնիկական քարերի արտադրություն։ Թողարկվող դիցիան-*
*դիամիդը և մելամինը հիանալի նյութեր են հանդիսանում պլաստմասսայի*
*արտադրության համար։*

*Ախտայի շրջանում սինթետիկ նյութերից կազմակերպվելու է կապրոնա-*
*յին կորդի արտադրություն, որը լիովին կբավարարի Երևանի ավտոդողերի*
*գործարանի պահանջը։ Բամբակե կորդի փոխարեն արտադրության մեջ կապ-*
*րոնային կորդի կիրառումը թույլ կտա 40 տոկոսով երկարացնել ավտոդողերի*
*գործածության ժամկետը և ավելի քան 20 տոկոսով կրճատել ավտոդողերի*
*պատրաստման համար պահանջվող կորդի և կաուչուկի ծախսումները։ Միա-*
*ժամանակ Սևանի շրջանում կազմակերպվելու է ապակեմանրաթելի արտա-*
*դրություն, որը մեկուսիչ նյութեր կտա էլեկտրատեխնիկական արդյունա-*
*բերության համար։*

*Պլենումում առաջ քաշվեցին ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբե-*
*րության հեռանկարային զարգացման մի շարք ակտուալ, կարևոր հարցեր,*
*պրոբլեմներ, որոնք արժանի են ամենայն ուշադրության և ուսումնասիրու-*

Թյան։ Խնդիր դրվեց Ղարադաղից ստացվելիք բնական գազից բացի, քիմիա-
կան արդյունաբերության մեջ լայնորեն օգտագործել տեղական հումքային
հարստությունները՝ նեֆելինային սիենիտները, կերակրի աղը, բարիտը,
բաղալտը, դրանց հիման վրա ստեղծելով սինթետիկ նյութերի նոր տեսակ-
ներ։ Ինչպես հայտնի է, սինթետիկ թելեր, պլաստմասսաներ և օրգանական
այլ նյութեր ստանալու գործում մեծ դեր է խաղում քլորը, որն ստացվում է
կերակրի աղից։ Երկրաբանական հետախուզությունները ցույց են տալիս,
որ մեզ մոտ կան աղի անսպառ պաշարներ։ Հայաստանում քլորը ստացվում
է էլեկտրոլիզի միջոցով, որի հետևանքով ծախսվում է մեծ քանակությամբ
էլեկտրաէներգիա։ Մինչդեռ արդի քիմիական գիտության ու տեխնիկայի մեջ
կիրառվում է քլորի ստացման քիմիական եղանակը. մեզ մոտ այդ եղանակի
կիրառումը հսկայական չափով կկրճատի էլեկտրաէներգիայի ծախսումները։

Պլենումի մասնակիցներն առաջ քաշեցին նուրբ քիմիայի զարգացման,
արհեստական բրդի, օրգանական ապակու ստացման, Ալավերդու պղնձաքի-
միական կոմբինատի խարամի մնացուկների, ինչպես նաև արդյունաբերական
վնասակար գազերի օգտագործման, նավթամթերքների ու մասնավորապես
ցածրօկտանային բենզինի բազայի վրա քիմիական նոր արտադրություններ
կազմակերպելու, քիմիայի զարգացման նպատակով կերամիկ նյութերի ար-
տադրություն ստեղծելու հարցերը։ Կարևոր նշանակություն են ստանում
ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների ճըշ-
գըրիտ տեղաբաշխման ու տեղադրման, արդյունաբերությանն անհրաժեշտ
կադրերի պատրաստման խնդիրները։

Արհեստական և սինթետիկ նյութերի արագաթափ զարգացումը, գյուղա-
տնտեսական հումքի հետ միասին, լայն հեռանկարներ է բաց անում ռես-
պուբլիկայի թեթև արդյունաբերության զարգացման համար։ Սինթետիկ թե-
լերի արտադրությունը մեծապես կավելացնի գործվածքեղենի, տրիկոտաժի
և գուլպաների թողարկումը։ Արհեստական մանրաթելը թեթև արդյունաբերու-
թյան մեջ որպես հումք օգտագործելը հնարավորություն կտա 1965 թվակա-
նին՝ 1957 թվականի համեմատությամբ, բրդե գործվածքների ու մետաքսե
գործվածքների, գուլպաների և տրիկոտաժե սպիտակեղենի, տրիկոտաժե վեր-
նազգեստի արտադրությունը մեծ չափով ավելացնելու, որը կբավարարի սո-
վետական ժողովրդի աճող պահանջները։ Քիմիական նոր տեսակի նյութերը
լայն կիրառում կգտնեն կաշվե-կոշկեղենի, պոլիգրաֆ, կահույքի, շինարա-
րական, ապակեղենի արդյունաբերության, լաք ու ներկերի արտադրության
մեջ և այլն։

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը
անմիջականորեն կապված է էներգետիկայի զարգացման, էներգետիկ բազայի
ընդլայնման հետ։ Այս հարցի լուծումը առաջին հերթին և սերտորեն առնչ-
վում է Սևանա լճի ջրերի դարավոր պաշարների խելացի օգտագործման հետ։
ՍՍՌՄ Մինիստրների Սովետը 1958 թվականի մայիսի 27-ին որոշում ընդու-
նեց «Հայկական ՍՍՌ էներգետիկ տնտեսության հետագա զարգացման միջո-
ցառումների մասին»։ Դա հայ ժողովրդի բարօրության, ռեսպուբլիկայի ժողո-
վըրդական տնտեսության հետագա զարգացման նկատմամբ պարտիայի ու կա-
ռավարության մեծագույն հոգատարության մի նոր, վառ դրսևորումն է։ Այդ
որոշումը հնարավորություն կտա մեծապես ընդլայնելու ռեսպուբլիկայի էներ-
գետիկ բազան։ Արագացվելու է Սևան—Հրազդան կասկադի էլեկտրակայան-



ների շինարարությունը, Որոտան և Դեբեդ գետերի վրա կառուցվելու են հիդ-
րոէլեկտրակայաններ, բնական գազով աշխատող խոշոր ջերմաէլեկտրակա-
յան, ինչպես նաև կառուցվելու է էլեկտրաէներգիայի բարձր լարման հաղոր-
դագիծ Ադրբեջանից դեպի Հայաստան։

Դա հնարավորություն կտա արագաթափ զարգացնելու ռեսպուբլիկայի
ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, և առանձնապես քիմիական
արդյունաբերությունը։

ՀԿՊ Կենտկոմի պլենումը նշեց, որ չնայած կատարված մեծ աշխատան-
քին, ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում
արտադրական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման ներկա մա-
կարդակը ետ է մնում արդի գիտության և տեխնիկայի պահանջներից։
Զգձգվում են քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների շինարա-
րական աշխատանքները, կառուցվող օբյեկտները ժամանակին չեն ապահով-
վում տիպային և ոչ ստանդարտ տեխնոլոգիական սարքավորումներով։ Ան-
հրաժեշտություն կա Հայաստանում կազմակերպելու քիմիական արդյունա-
բերության նախագծային-հետազոտական ինստիտուտ։

Պլենումը լուրջ թերություններ բացահայտեց գիտա-հետազոտական հիմ-
նարկների աշխատանքում. մեր գիտնականները և մասնագետները դեռևս քիչ
ուշադրություն են դարձնում քիմիական արտադրության տեխնոլոգիայի կա-
տարելագործման, քիմիական արդյունաբերության զարգացման ակտուալ մի
շարք պրոբլեմների ուսումնասիրության ու մշակման վրա։ Գիտա-հետազո-
տական հիմնարկների, բուհերի խնդիրն է՝ ընդլայնել և ուժեղացնել գիտա-
հետազոտական աշխատանքները քիմիական գիտության բնագավառում և
մասնավորապես բարձրպոլիմերային ու սինթետիկ նյութերի ստացման ուղ-
ղությամբ. նրանք պետք է գործարար օգնություն ցույց տան ռեսպուբլիկայի
քիմիական արդյունաբերության ձեռնարկություններին սինթետիկ նոր նյու-
թերի յուրացման և թողարկման գործում։

Պարտիայի կողմից առաջադրված խնդրի իրագործման համար պահանջ-
վում է վճռականորեն բարելավել գիտա-հետազոտական աշխատանքը քի-
միայի բնագավառում, հաղթահարել սինթետիկ ու արհեստական թելերի,
պլաստմասսայի գծով կատարվող գիտահետազոտական ու փորձնական աշ-
խատանքների կազմակերպման գործում եղած թերությունները։ Պետք է խե-
լացի, արդյունավետ օգտագործել այդ նպատակին հատկացվող գումարները,
կենտրոնացնել գիտնականների ուժերը ակտուալ, հրատապ թեմաների վրա,
նրանց ջանքերն ուղղել քիմիական նոր նյութերի ստացման առավել արդյու-
նավետ մեթոդներ և ուղիներ որոնելու, տեխնոլոգիական նոր առաջավոր պրո-
ցեսներ ստեղծելու վրա։ Ժամանակակից քիմիան ամբողջությամբ վերցրած՝
գիտության զարգացման նոր բնագավառն է։ Այն առաջ մղելու, տեսական
նոր պրոբլեմների մշակման և հետազոտության բնագավառում արևմուտքի
գիտնականներին հասնելու և անցնելու համար հարկավոր է ավելի սերտորեն
միավորել սովետական քիմիկոսների, ֆիզիկոսների, բիոլոգների համատեղ
ջանքերը։

Քիմիական արդյունաբերության և ամենից առաջ սինթետիկ նյութերի
արտադրության ավելի արագ զարգացումը մեծ նշանակություն ունի մեր
երկրի արտադրողական ուժերի հետագա զարգացման, բնական հարստու-
թյունների առավել արդյունավետ օգտագործման համար։ Դա կարևորագույն

գործոն կլինի ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմության, ծանր արդյունաբերության հետագա վերելքի համար և հումքի մի նոր անսպառ աղբյուր կհանդիսանա ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը շեշտակիորեն ավելացնելու համար։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Մայիսյան պլենումի փաստաթղթերը գտնվում են սովետական ժողովրդի ուշադրության կենտրոնում։ Դրանք քըննարկվում են պարտիական ժողովներում, կոմունիստների ու անպարտիականների շրջանում։ Որպեսզի մենք կարողանանք հաջողությամբ լուծել համաժողովրդական այդ խնդիրը, անհրաժեշտ է, որ պարտիական, սովետական, կոմերիտական և տնտեսական կազմակերպություններն ավելի բարելավեն կազմակերպական և բացատրական աշխատանքը մասսաների շրջանում։ Նրանք պետք է ամեն մի աշխատավորի գիտակցությանը հասցնեն Մայիսյան պլենումի և ՀԿՊ Կենտկոմի պլենումի որոշումները, ցույց տան այդ որոշումների ամբողջ վեհությունը, այն մեծ հոգատարությունը, որ պարտիան ու կառավարությունը անդադրում ցուցաբերում են կոմունիզմ կառուցող մարդկանց ամենօրյա կարիքների ու պահանջմունքների նկատմամբ։ Պետք է աշխատավորների շրջանում կազմակերպել քիմիական գիտելիքների, քիմիական գիտության նվաճումների լայն պրոպագանդա, այդ գործում ներգրավելով մեր լավագույն գիտնականներին, մասնագետներին։

Պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն ու կատարելագործեն կազմակերպական աշխատանքը, գլխավորեն մասսաների պայքարը գործի վերածելու հոյակապ աշխատանքների նոր կանխագծումները։

---

# ՆՈՐ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ, ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

Ա. ՄՆՋՈՅԱՆ

ՀԳԱ վիցե-պրեզիդենտ

Այսոր եթե հետադարձ հայացք գցելու լինենք մեր ռեսպուբլիկայի քի-
միական արդյունաբերության զարգացման պատմական անցյալի վրա, ապա
պետք է ասենք, որ միայն սոցիալիստական ռևոլյուցիայից հետո էր, որ հիմք
դրվեց մի քանի քիմիական գործարանների, ռեսպուբլիկայում ստեղծվեցին
առաջին կադրերը և տրադիցիաներ քիմիական արդյունաբերությունը կազմա-
կերպելու և ղեկավարելու ուղղությամբ։ Առաջին արդյունաբերական ձեռնար-
կությունների ստեղծումը սերտորեն կապված էր Սևանի ջրերի օգտագործման
և ռեսպուբլիկայում հիդրոէլեկտրակայանների շինարարության հետ։ Ելնելով
այն թեզից, որ բնական հիդրոռեսուրսների օգտագործման միջոցով ստացված
էլեկտրաէներգիան իր ցածր արժեքով մրցակից ունենալ չի կարող, ռեսպուբ-
լիկայում զարգացվեց էլեկտրատար արդյունաբերություն, ստեղծվեցին Երե-
վանի և Կիրովականի կարբիդի գործարանները, որոնք և հիմք հանդիսացան
առաջ քաշելու ռեսպուբլիկայում օրգանական նյութերի արդյունաբերության
զարգացման հարցը։

Երևանում արտադրվող կարբիդի բազայի վրա ստեղծվեց ացետիլենի և
նրա մի շարք ածանցյալների՝ վինիլացետիլենի, նայիրիտի, կարբինոլի և այլ
նյութերի արտադրություն։ Կիրովականի կարբիդի գործարանի բազայի վրա
ստեղծվեց ռեսպուբլիկայում պարարտանյութի՝ կալցիումի ցիանամիդի ար-
տադրությունը։

Այս գործարաններն իրենց հերթին ծնեցին քլորաջրածնի, կծու նատրիու-
մի, ամիակի, սելիտրայի և շատ այլ անօրգանական և օրգանական պրո-
դուկտների արտադրություններ։

Բնական էր, որ առաջին հնգամյակների տարիներին Հայաստանի քի-
միական արտադրությունը բավական մեծ տեղ էր գրավում ոչ միայն ռեսպուբ-
լիկայի էկոնոմիկայում, այլև իր սպեցիֆիկ արտադրությամբ ամբողջ Միու-
թյան քիմիական արդյունաբերության բալանսում։ Դա այն տարիներն էին,
երբ մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկան բնութագրելիս, իրավամբ նրան համա-
րում էին զարգացած քիմիական արդյունաբերության օջախ։

Եթե անցած տարիների ընթացքում երկրի ինդուստրացումը, ծանր ար-
դյունաբերության զարգացումն ու վերելքը խոշոր հումքային բազաներ ստեղ-
ծեցին մի շարք շրջաններում ու մարզերում և ապահովեցին ոչ միայն եղած
գործարանների ընդարձակումը, այլև նոր միավորների ստեղծումը, ապա մեր
ռեսպուբլիկայում կարիք եղավ հրաժարվել ոչ միայն էլեկտրատար արտա-
դրության նոր միավորներ ստեղծելուց, այլև կասեցնել ստեղծված միավոր-
ների հետագա աճը։

Սրա հիմնական պատճառը այն էր, որ մեր ռեսպուբլիկայում օրգանա-

կան քիմիայի զարգացումը հիմնվել էր ոչ միայն դրսից ներմուծվող ածուխի բազայի վրա, այլև Սևանի ջրի ոչ ռացիոնալ օգտագործման վրա։

Այստեղից պարզ է, որ նման հիմքերով ստեղծված արդյունաբերությունը անսահման լայնանալ չէր կարող և պահանջվում էր նոր, ռադիկալ միջոցառումներ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը ու վերելքը ապահովելու համար։

Շնորհիվ պարտիական ու պետական օրգանների ձեռք առած միջոցառումների, այսօր մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը կանգնած է զարգացման նոր փուլի շեմքին, արդեն որոշված է ստանալ եղբայրական ադրբեջանական ռեսպուբլիկայից հանքային գազ, որը հնարավորություն կտա կարգավորելու մեր ռեսպուբլիկայի ոչ միայն վառելիքի, էներգետիկայի հարցերը, այլև կհանդիսանա նոր հումքային բազա եղած քիմիական արդյունաբերության զարգացման և տեխնոլոգիական որոշ պրոցեսների կատարելագործման համար։

Այս խոշոր ու անհետաձգելի միջոցառումը, կապված հանքային գազի ներմուծման և օգտագործման հետ, այսօր ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի հոյակապ որոշումից հետո ստանում է առավել խոշոր նշանակություն։

Ով ծանոթ է մեր ռեսպուբլիկայում գոյություն ունեցող քիմիական արդյունաբերության հետ, նա առանց վարանելու կարող է ասել, որ մինչև հիմա ստեղծված ինչպես անօրգանական, նույնպես և օրգանական պրոդուկտներ արտադրող գործարանները ոչ միայն էլեկտրատար են, այլև իրենց արտադրությամբ մեծաքանակ են ու էժանագին։

Չպետք է մոռանալ նաև այն հանգամանքը, որ ստեղծելով ծանր քիմիական արդյունաբերություն, պատշաճ չափով հոգ չի տարվել նրա բազայի վրա վերամշակման գործարանների լայն ցանց կազմակերպելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը սինթետիկ նյութերի ստացման և նրանց բազայի վրա արհեստական խեժերի, մանրաթելերի արդյունաբերության լայնացման մասին, քիմիայի բնագավառում աշխատողներից պահանջում է լուրջ վերաբերմունք և բազմակողմանի նախապատրաստում, առանց որի դժվար կլինի ապահովել անթերի կատարումը այն ամենի, ինչ պահանջում է այդ կարևորագույն որոշումը։

Ելնելով նշված սկզբունքներից, մենք կամենում ենք արծարծել քիմիայի զարգացման մի քանի հարցեր, որոնք եթե մոտակա տարիներին հնարավոր չէ լուծել, ապա դա կարելի կլինի իրականացնել մոտ ապագայում, որը խոշոր զարկ կտա ամբողջ քիմիական արդյունաբերության զարգացմանը։

Մեզ թվում է, որ այսօր մի որևէ մարզում, շրջանում, ռեսպուբլիկայում ծանր քիմիական արդյունաբերություն ստեղծելու առաջին պայմանը պիտի լինի տեղական հումքի առկայությունը։ Եթե մինչև օրս նման պայման կարող էր համարվել նաև էլեկտրաէներգիայի, վառելիքի բազաների առկայությունը, իսկ հումքը կարող էր բերվել դրսից, այսօր այդ հարցերը կորցնում են իրենց ակտուալությունը, քանի որ շատ մոտ ապագայում լուծված կլինեն միասնական էլեկտրամատակարարման և գազամատակարարման սիստեմների հարցերը։ Սրանք պատճառ են, որոնք այսօր իրավունք են տալիս նոր արտադրությունները նախագծել հումքի հիմնական վայրում և նախագծել մեծաքանակ արտադրության օբյեկտներ։

Պետք չէ մոռանալ, որ սրանք ամենաքիչ աշխատատար օբյեկտներ կլի-



նեն, որովհետև հենց առաջին օրվանից պետք է ավտոմատացման և մեխանեն, որովհետև հենց առաջին օրվանից պետք է ավտոմատացման և մեխա- նիզացիայի ենթարկվեն։ Եթե այս տեսանկյունով վերլուծենք մեր քիմիական արդյունաբերությունը, ապա պիտի ասենք, որ մեր ռեսպուբլիկայում քանի դեռ չի լուծված տեղական օրգանական հումքի հարցը, ծանր քիմիան հիմքեր ունի զարգանալու միայն տեղական սիլիկատային նյութերի, գունավոր և հազվագյուտ մետաղների բազայի վրա։ Ակնհայտ է, որ նեֆելինների բազայի վրա Ախտայի քիմիական կոմբինատի ստեղծումը խոշոր միջոցառում է տեղական հումքի օգտագործման տեսակետից, հումք, որի պաշարները կարող են օգտագործվել և գալիք սերունդների կողմից։

Այլ է օրգանական սինթետիկ նյութեր ստեղծելու հարցը։ Մինչև այժմ, ինչպես ասված էր վերևում, մենք, օգտագործելով Սևանի դարերի ընթացքում կուտակված ջուրը և ներմուծելով ածուխ՝ ստեղծել ենք կարբիդի, ացետիլենի և նրա բազայի վրա օրգանական նյութերի արտադրություն։

Այժմ մեր ռեսպուբլիկայում մեծ քանակի գազի (մեթանի) ստացումը մի կողմից, մեթանի բազայի վրա ացետիլենի, մեթանոլի, ֆորմալդեհիդի և մի շարք այլ նյութերի ստացման տեխնոլոգիայի մշակումը մյուս կողմից, քիմիական արդյունաբերության որոշ ճյուղերի վերակառուցման պահանջ են հարուցում։ Այդ վերակառուցումը նախ և առաջ վերաբերում է ացետիլենի ստացմանը, որը մինչև այժմ (ինչպես մեր ռեսպուբլիկայում, այնպես էլ մի շարք այլ վայրերում) ստացվում էր կարբիդից։ Այսօր, երբ լուծված է մեթանի պրոբլեմը, աննպատակահարմար է ծախսել էլեկտրաէներգիայի ահռելի քանակներ կարբիդ ստանալու համար, երբ առանց խոշոր ծախսերի ու առանց կարբիդի կարելի է ունենալ նույն ացետիլենը։

Ահա թե ինչու գազը բացի կոմունալ նպատակների համար օգտագործելուց, պիտի օգտագործել նաև քիմիական արդյունաբերության մեջ իբրև հումք ացետիլեն ստանալու համար։

Հանրահայտ է, որ ացետիլենը ժամանակակից քիմիայի լավագույն ելանյութերից մեկն է, որի բազայի վրա կարելի է ստեղծել ոչ միայն ծանր օրգանական քիմիա, մեծաքանակ, սահմանափակ նոմենկլատուրայի և ցածր արժեքի պրոդուկտներ, այլև նրա հիման վրա հնարավոր է զարգացնել օրգանական քիմիայի այնպիսի ճյուղեր, որոնք պահանջվում են փոքր քանակություններով, բարդ են ու բազմապիսի իրենց տեխնոլոգիական պրոցեսներով, պահանջում են մեծ քանակությամբ որակյալ մասնագիտական կադրեր ու բարձր արժեք ունեն։

Մենք կարծում ենք, որ մեր ռեսպուբլիկայի համար նպատակահարմար է առաջիկայում նաև զարգացնել երկրորդ տիպի քիմիական արդյունաբերություն, որովհետև ներմուծվող հումքի բազայի վրա ստեղծված արտադրությունը բոլոր պարագաներում կլինի լիմիտավորված, դրա համար էլ ձեռնտու կլինի այն ենթարկել խոր վերամշակումների և արտահանել բարձր արժեքի քիմատչելի նյութերի ձևով։

Եթե մեր ռեսպուբլիկայում արդեն ստեղծված ծանր օրգանական քիմիայի արդյունաբերությունը ստացվող գազի բազայի վրա մենք այսօր նախատեսում ենք վերակառուցել ու լայնացնել, կարճ ժամանակում յուրացնել նոր տեխնոլոգիան ու երկրին տալ մեծ քանակությամբ կաուչուկ, վինիլացետիլեն, ստեղծել քացախաթթվի, ացետիլ ցելյուլոզայի, պոլիքլոր վինիլային խեժերի, կապրոնային կորդի արտադրություններ, ապա հարկ է, որ լուրջ

մտածենք նաև քիմիայի զարգացման հեռանկարների մասին, նոր հումքային պրոդուկտներ ներմուծելու կամ տեղում ստեղծելու մասին:

Հակառակ դեպքում մենք կկրկնենք այն սխալը, ինչ թույլ ենք տվել առաջին հնգամյակներին մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը ստեղծելիս:

Մենք կարծում ենք, որ յոթամյա պլանով նախատեսված կապիտալ գումարները պիտի ծախսել ոչ միայն եղած արդյունաբերության լայնացման վրա գազի օգտագործման միջոցով, այլև ստեղծել քիմիական արդյունաբերության նոր ճյուղեր, որոնք իրենց բնույթով ավելի օգտավետ պիտի լինեն մեր ռեսպուբլիկայի համար:

Հարցի այսպիսի լուծումը հնարավորություն կտա հետագայում զարգացնելու քիմիական արդյունաբերության և ծանր օրգանական սինթեզի, և թեթև, գուցե և նուրբ օրգանական սինթեզի բնագավառները:

ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը պիտի դիտել լայն տեսանկյունով և պիտի հաշվի առնել, որ հարց չի դրված միայն լայնացնել եղած արտադրությունները, յուրացնել հայտնի մեթոդները և նրանց բազայի վրա ստեղծել նոր տեսակի կաուչուկներ, պլաստմասսաներ, արհեստական թելեր, շինարարական նյութեր և այլն: Անհրաժեշտ է այս բոլորի հետ մեկտեղ, զարկ տալ քիմիական գիտության, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, հասնել այն բանին, որ հնարավոր լինի ելնելով ամեն մի նպատակի համար պահանջվող պրոդուկտի անհրաժեշտ հատկություններից՝ նախատեսել նրա քիմիական բաղադրությունն ու կառուցվածքը:

Դրան հասնելու համար մեր երկրում ծանր քիմիական արդյունաբերությանը նոր հնարավորություններ ու թափ տալու հետ մեկտեղ, պիտի հիմք ստեղծել քիմիական գիտության զարգացման համար: Այդ հարցի լուծման առաջին ու անվիճելի պայմանը՝ քիմիական մաքուր ռեակտիվների արտադրության ստեղծումն է:

Չնայած կայացվել են բազմաթիվ որոշումներ, կազմվել են խոշոր ծրագրեր, բայց քիմիական մաքուր ռեակտիվներ ստեղծելու գործը շատ քիչ է շարժվել իր տեղից: Ռեակտիվների պակասը մեր երկրում թողել է իր դրոշմը ինչպես քիմիական գիտության զարգացման, այնպես էլ մասնագիտական կադրերի պատրաստման գործում:

Ամեն մի մասնագետ, որը ինչ-որ չափով առնչվում է էքսպերիմենտալ գիտությունների հետ, իր աշխատանքում չի կարող զգացած չլինել ռեակտիվների անհրաժեշտությունը և չի կարող հաշտվել այսօրվա վիճակի հետ:

Ռեակտիվների բացակայության պատճառով հաճախ հնարավոր չի լինում լուծել շատ խնդիրներ: Լինի դպրոց, թե հիվանդանոց, գիտական հիմնարկ, թե գործարանային լաբորատորիա, շատ տարբեր նպատակներով օգտագործում են քիմիական ռեակտիվներ, առանց որի շատ հաճախ բժիշկը չի կարողանում ճիշտ դիագնոզել հիվանդությունները, անալիտիկը՝ որոշել արտադրվող համաձուլվածքների բաղադրությունը, աշակերտն ու ուսանողը՝ յուրացնել քիմիայի առարկան, քիմիկոս հետազոտողը՝ ստեղծել նոր միացություններ: Դժվար թե մեր կյանքում գտնենք մի բնագավառ, որը գործ չունենար քիմիական ռեակտիվների հետ: Հայտնի է, որ ռեակտիվների արտադրությունը աշխարհում ամենալայն ձևով իր ժամանակին կազմակերպված է եղել Գերմանիայում: Ռեակտիվների արդյունաբերության ստեղծումը Գերմանիայում պա-



հանջել էր լուրջ ու մանրակրկիտ հետազոտական աշխատանք, սա իր հերթին կոփել էր քիմիկոսների ահագին բանակ, այսպիսով որակյալ կադրերը ծնել են արդյունաբերության նորանոր բարդ ճյուղեր, իսկ արդյունաբերությունը իր հերթին խթանել էր քիմիական բարձր որակի կադրերի պատրաստմանը: Այդպիսով արդյունաբերության բնույթն ու կադրերի փոխադարձ ազդեցությունն իր ժամանակին ապահովել են նրանց երկրում քիմիական գիտության առաջընթացը: Այս օրինակը ցույց է տալիս, որ ռեակտիվների արտադրությունը չպետք է համարել հասարակ, փոքրիկ մի գործ, չպետք է նայել այդ հարցերի նշանակության վրա քանակական տեսանկյունով: Հայտնի է, որ ռեակտիվների արտադրության գործը ծանր ու պատասխանատու, բայց պատվաբեր ու շնորհակալ գործ է, քանի որ առանց ռեակտիվների ու կիսապրոդուկտների ոչ մի քիմիկոս չի կարող բազմակողմանի զարգացնել քիմիական գիտությունը երկրում, ապահովել արդյունաբերության վերելքը ու պատվով կատարել Մայիսյան պլենումի այն որոշումը, որի կենսագործմամբ առաջիկա տարիներում քիմիայի ասպարեզում մեր երկիրը աշխարհում կգրավի առաջին տեղը:

Մենք կարծում ենք, որ ամեն մի մասնագետ, ինչպես քիմիական արդյունաբերության, նույնպես և գիտության հարցերում այսօր պիտի նպաստի Հայաստանում ստեղծել օրգանական բարդ սինթետիկ նյութերի արտադրություն,
ինչպես նաև օրգանական ռեակտիվների արտադրություն:

Դրա համար հիմք կարող են հանդիսանալ տեղում արդեն ստեղծված և յոթամյակի համար նախատեսված քիմիական գործարանների կիսապրոդուկտները, գյուղատնտեսական և այգեգործական նյութերի մշակումից գոյացած թափուկները: Այսպիսի գործարանների ստեղծումը իհարկե կպահանջի
ոչ միայն ժամանակ, միջոցներ, այլև որակյալ կադրեր:

Քանի դեռ ուշ չէ, պիտի ձեռնարկել այդ գործը, որովհետև ամեն մի կորցրած տարի հետաձգում է ոչ միայն քիմիայի, այլև այն բնագավառների առաջ-
ընթացը, որոնք կապված են քիմիայի զարգացման հետ:

Մեր ռեսպուբլիկայի համար այս և նման արտադրությունների ստեղծումը կունենա նաև այն նշանակությունը, որ կավելանա մասնագիտական բարձրագույն կրթություն ունեցողների կարիքը և երիտասարդության այն մասը, որ ձգտում ունի բարձրագույն կրթություն ստանալ, ավելի ազատ կկողմնորոշվի
և կկարողանա ավելի օգտակար ձևով ծառայել երկրին:

Չի կարելի չնշել արտադրության մի այլ ճյուղի ստեղծման մասին, որը դեղագործական քիմիան է: Օրգանական քիմիայի այս բնագավառը չնայած երիտասարդ է իր արպատմականորեն ամենահինն է, սակայն տակավին դյունքներով, մի բնագավառ, որի ամենափոքր հաջողություններն անգամ ավելի շատ են հուզում մարդկանց, քան քիմիայի այլ բնագավառներում ձեռք բերված մեծ հաջողությունները:

Սա օրգանական քիմիայի այն բնագավառն է, որը կոչված է ապահովելու մարդու անվրդով կեցությունը իր գոյության տարիներին, ապահովելու պայ-
քարը հիվանդությունների ու դժբախտ պատահարների ժամանակ:

Դեղագործական քիմիայի հաջողությունների շնորհիվ մարդն այսօր ազատագրված է մի շարք բակտերիալ ու տրոպիկ հիվանդություններից, ամենաբարդ վիրահատումները դարձել են հասարակ ու մատչելի գործ: Սակայն դեռևս կան լուծման կարիք ունեցող շատ հարցեր, ինչպես նաև կան բազմաթիվ լուծված հարցեր, որոնք նորից վերանայվելու կարիք են զգում, որովհետև այս

այն բնագավառն է, որը պահանջում է անընդհատ նորոգում, թարմացում և առայժմ վիճակն այնպիսին է, որ ոչ միայն այս բնագավառի արդյունաբերությունը, այլև գիտությունը ետ է մնում։

Եթե այսօր հարց է դրվում առաջիկա տարիներում ապահովել մեր երկրի առաջնությունը սինթետիկ նյութերի, բարձր մոլեկուլյար միացությունների բնագավառում, որոնք անհրաժեշտ են լայն սպառման ապրանքների, բնակարանային շինարարության հարցերը արագ լուծելու համար, ապա կասկածից դուրս է, որ քիմիայի այն հարցերը, որոնք պիտի ապահովեն մարդու առողջությունը և երկարակեցությունը՝ չեն կարող վրիպել մեր տեսադաշտից։

Մեր ռեսպուբլիկան այսօր ունի բոլոր անհրաժեշտ պայմանները ստեղծելու դեղանյութերի արտադրության ձեռնարկություններ։ Մենք ի վիճակի կլինենք շատ կարճ ժամանակում յուրացնել ոչ միայն հայտնի, բայց դեռևս մեր երկրում չարտադրվող շատ կարևոր պրեպարատների, այլև ստեղծել սեփական նոր դեղանյութերի արտադրություն։

Մեզ համար օրինակ կարող են ծառայել այնպիսի պետություններ, ինչպիսին են՝ Չեխոսլովակիան, Հոլանդիան, Շվեդիան, որոնք աշխարհում առաջավոր տեղ են բռնում իրենց դեղանյութերի և ֆիզիոլոգիական ակտիվ այլ պրեպարատների արտադրությամբ։

Այս ամենը կարծեք պարզ է բոլորի համար, սակայն գործնական ոչ մի քայլ չի կատարվում հարցերը տեղից շարժելու նպատակով։

Մինչդեռ մեր Պետպլանը ծրագրում է քիմիական արդյունաբերության զարգացումը միայն այն բնագավառներում, որոնց մեջ մենք ունենք որոշ փորձ և հաջողություն։ Իհարկե, նոր գործ սկսելը շատ ավելի դժվար է։ Սակայն այդ շատ անհրաժեշտ գործ է և չպետք է թողնել այն, հույս ունենալով որ ուրիշները կզբաղվեն նրանով։ Քանի որ ուրիշները ևս չեն զբաղվում այդ հարցերով և մենք ոչ միայն ետ ենք մնում, այլև ի վիճակի չենք լինում հիվանդին տալ այն ամենը, ինչ գիտությունն արդեն ստեղծել է, գեթ որոշ չափով թեթևացնելու համար շատերի վիճակը։

Թերևս դրությունն այլ լիներ, եթե մեր ռեսպուբլիկայում քիմիական կադրերի պատրաստման գործը կազմակերպված լիներ մի քիչ ավելի լավ։

Քիմիկոսներ պատրաստում են մեզ մոտ համալսարանում, պոլիտեխնիկական և մանկավարժական ինստիտուտներում։ Համալսարանի և մանկավարժական ինստիտուտի սաների մեծ մասը գնում են մանկավարժական աշխատանքի, իսկ արտադրական և գիտական հիմնարկները համալրվում են պոլիտեխնիկ ինստիտուտի և մասամբ էլ համալսարանի շրջանավարտներով։ Քիմիական բոլոր նշված ֆակուլտետներում՝ չնայած հարուստ ծրագրերի՝ ուսանողը քիմիան ստիպված է սովորել տետրակով կամ լավագույն դեպքում՝ գրքով։ Էքսպերիմենտը փոքր տեղ է գրավում ուսման պրոցեսի մեջ, մինչդեռ քիմիկոս ուսանողը ոչ միայն իր ուսումնական ժամերին, այլև ամեն մի ազատ օր ու ժամ պիտի օգտագործի գործնական աշխատանքի վրա։ Հայտնի է, որ ապարատուրայի և հատկապես ռեակտիվների պակասը, ոչ միայն անդրադառնում են ուսանողի որակի վրա, այլև ամբիոններում աշխատող մասնագետների աճի վրա։

Քիմիան էքսպերիմենտալ գիտություն է և նրանով տարվել, խորանալ ու արդյունավետ աշխատել կարելի է միայն այն դեպքում, երբ մարդ կարողանում է փոքրիկ թե մեծ մտահղացումները փորձով ստուգել։



Գործնական աշխատանքների պակասը, արտադրության միակողմանիությունը չէին կարող չանդրադառնալ մեր քիմիական կադրերի մտահորիզոնի վրա, որն իր հերթին նույնիսկ անկախ ամեն մեկի ցանկությունից պիտի բերեր որոշ սահմանափակման։

Մեզ թվում է, որ այդ սահմանափակման արդյունքն է թերևս և այն հանգամանքը, որ մեր ռեսպուբլիկայի լավագույն մասնագետներից շատերը, որոնք կոչված են կազմակերպելու ու կառավարելու քիմիայի արդյունաբերությունը ռեսպուբլիկայում, դուրս չեն ուզում բերել մեր օրգանական քիմիան նեղ շրջանակներից։

Անհրաժեշտ է, որ գոնե այժմ ճշտվեն մեր ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության ու գիտության զարգացման հիմնական ուղիները և դրա հիման վրա ճշտվի նաև այն ֆակուլտետների ուղղությունների հարցը, որոնք կոչված են պատրաստելու քիմիկոսներ։ Դրան զուգահեռ պիտի բարելավել դասավանդման գործը, ապահովել մեր բարձրագույն ուսումնական հաստատությունները էքսպերիմենտալ բազայով և այլ հնարավորություններով։ Բոլոր պարագաներում չպիտի մոռանալ, որ ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշման կենսագործումը կապված է ոչ միայն կապիտալ ներդրումների, շինարարության ու մոնտաժային աշխատանքների հաջող կատարման, այլև կադրերի հաջող պատրաստման ու բաշխման հետ։

Ինչպես քիմիական արդյունաբերությունը, այնպես էլ գիտությունը մեր երկրում վերջին քառասուն տարիների ընթացքում այնքան են աճել ու զարգացել, որ հնարավոր չէ որևէ համեմատություն անցկացնել ցարական ժամանակաշրջանում եղած վիճակի հետ։ Եթե այսօր նշվում է, որ քիմիայի որոշ բնագավառներ մեզ մոտ դեռևս ետ են մնում մի շարք երկրներից, ապա այդ արդյունք է լոկ այն բանի, որ մենք հնարավորություն չենք ունեցել անհրաժեշտ չափով ուժեր ու միջոցներ կենտրոնացնել քիմիայի բոլոր բնագավառների վրա։

Չէ որ մեզ անհրաժեշտ է եղել համարյա դատարկ տեղում և շատ սահմանափակ ժամանակի ընթացքում ստեղծել ոչ միայն այն ամենը, ինչ այլ երկրներում վաղուց էր ստեղծված, այլև ետ չմնալ քիմիայի հարցերում առաջատար երկրների առաջընթացից։

Հայտնի է, որ մեր Միության մեջ ստեղծված քիմիական գիտական հիմնարկների ցանցում որոշ տեղ գրավում են և մեր ռեսպուբլիկայի հիմնարկները։

Վերջին տարիների ընթացքում միութենական ակադեմիային առընթեր գործող կոորդինացիոն խորհրդի միջոցով ճշտվեց մեր քիմիական գիտական հիմնարկների աշխատանքների ուղղությունները և պարզվեց նրանց տեղն ու մասնակցությունը երկրի քիմիական գիտության ու արդյունաբերության զարգացման գործում։

Սակայն այժմ, երբ Մայիսյան պլենումը հրամայական հարց է դրել լայնացնել քիմիական արդյունաբերությունը երկրում, մեր գիտական հիմնարկները հեռու մնալ չեն կարող այս հարցի իրականացումից։ Պահանջվում է, որ ամեն մի գիտական կոլեկտիվ միանգամ ևս վերանայի իր աշխատանքի ուղղությունն ու ծրագիրը, նախատեսի աշխատանքի այնպիսի կազմակերպում, որ թեորետիկ հարցերի լուծման հետ մեկտեղ արդյունաբերությանը տա նոր հումք, նոր կատարելագործված մեթոդ, կամ ներդրման համար արժեքավոր նոր առաջադրանք։

Մեր գիտական հիմնարկների արդյունավետ աշխատանքը ապահովելու

համար, անհրաժեշտ է կոնկրետ միջոցառումներ կիրառել նրանց լաբորատոր բազան լայնացնելու ու կահավորելու ուղղությամբ, համալրել կադրերով։

Պետք է մեր գիտական հիմնարկներին կից ստեղծվեն փորձնական արտադրական ցեխեր, այս ցեխերի ստեղծումը կապահովի մշակվող հարցերի լուծումը տեխնիկական պայմաններում, կճշտի նոր առաջարկների արտադրության մեջ ներդնելու ռեալությունը, հնարավորություն կտա արագացնելու էկոնոմիկայի և նախագծման աշխատանքները. այս ամենը ի մի վերցրած կարագացնեն նոր ու արդյունավետ հարցերի արդյունաբերական լուծումը։

Այս սկզբունքներով կազմակերպված ամեն մի քիմիական գիտական հիմնարկ, որի աշխատակիցները հստակ պատկերացնեն իրենց գործն ու անելիքները, կկարողանան գործնականորեն մասնակցել ոչ միայն այսօր մեր առաջ դրված պրակտիկ հարցերի լուծմանը, այլև իր աշխատանքներով նախադրյալներ ստեղծել ինչպես քիմիական գիտության, նույնպես և արդյունաբերության հետագա վերելքի համար։

Կասկած չկա, որ քիմիական արդյունաբերության ու գիտության համար այսօր նախագծված խոշոր ծրագրի իրականացումը կապահովի մեր երկրի տնտեսության ու ժողովրդի կյանքի բարեկեցության նոր վերելք։

---

# ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԼԱԳԵՐՈՒՄ

ՍՏ. ԲՈՋԱՐՅԱՆ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը շարունակում է խորանալ։ Պատերազմը չարդարացրեց ԱՄՆ-ի և Անգլիայի մոնոպոլիաների հույսերը, որոնք նպատակ ունեին համաշխարհային կապիտալիստական շուկայում ազատվել իրենց գլխավոր մրցակիցներից և այնտեղ անբաժան տիրապետության հասնել։ Ընդհակառակը, երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով այնպիսի իրադրություն ստեղծվեց, որն օբյեկտիվորեն պայմանավորեց հակասությունների հետագա սրումը իմպերիալիստական տերությունների միջև։

Հիրավի, կապիտալիզմի շահագործման ոլորտից մի շարք երկրների դուրս գալու հետևանքով իմպերիալիզմի համար տեղի ունեցավ վաճառահանման շուկաների անվերադարձ կորուստ։ Խիստ սահմանափակվեցին առևտրական կապերը սոցիալիստական երկրների հետ, ծնվեց սոցիալիստական համաշխարհային շուկան, սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզման պրոցեսը։ Կապիտալիստական երկրների համար վատթարացան վաճառահանման համաշխարհային շուկայի պայմանները, աճեց գործազուրկների մշտական բանակը, արտադրական հզորությունների խրոնիկական թերբեռնվածությունը։ Անցան կապիտալիզմի համար շուկաների համեմատական կայունության ժամանակները։ 1957 թվականի դեկտեմբերին գործազուրկների թիվը ԱՄՆ-ում կազմում էր 3,7 միլիոն մարդ, իսկ 1958 թվականի սկզբին՝ 6 միլիոնից ավելի, Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում՝ 1 միլիոն 212 հազար մարդ, Իտալիայում՝ մոտ 2 միլիոն մարդ, Ճապոնիայում ամբողջ աշխատավոր բնակչության մոտավորապես 27 տոկոսը լրիվ և մասամբ գործազուրկներ են։

Նշված գործոնները նեղացնում են կապիտալիստական երկրների արտադրության բազան, ճեղքվածք են առաջացնում արտադրական հնարավորությունների և եղած շուկաների միջև։

Պատերազմը ավելի ուժեղացրեց արտադրության ու կապիտալի համակենտրոնացման պրոցեսը։ ԱՄՆ-ի միայն 5 ֆինանսական խմբեր վերահսկում են 220 միլիարդ դոլարից ավելի կապիտալ, Մորգանի և Ռոկֆելլերի ֆինանսական խմբերը՝ 125 միլիարդ դոլար։ Ամերիկյան պրոգրեսիվ թերթերից մեկը ԱՄՆ-ի ներկայիս կառավարությունն անվանել է «միլիարդատերերի կաբինետ»։ Արդարև, ԱՄՆ-ի պետական քարտուղար Ջոն Ֆոստեր Դալլեսը «Սալլիվեն էնդ Կրոմվել» իրավաբանական ֆիրմայի ղեկավարն է, ֆիրմա, որ ներկայացնում է «Ստանդարտ օյլ օֆ Նյու-Ջերսի» ռոկֆելլերյան մոնոպոլիայի

շահերը։ Ամերիկյան պրոգրեսիվ տնտեսագետ Դերեկ Կարտենը գրել է. «Մոնոպոլ իրավունքների և կոնցեսիաների հասնելու իրենց փորձերի մեջ ԱՄՆ-ի հինգ գիգանտ նավթային ընկերությունները մեր պետական դեպարտամենտը օգտագործում են իբրև մանկլավիկ... 2500 միլիոն դոլարը արտասահմանում պաշտպանելու համար հնարավոր է, որ «մեծ հնգյակը» անընդհատ անշեղ ճնշում կգործադրի պետական դեպարտամենտի վրա, ստիպելով դրան փոխելու դիվանագիտությունը և այն վարելու այնպես, որպեսզի դա բոլորից լավ համապատասխանի նրանց շահերին (Дэрек Картэн, «США в 1953 г.», М. 1953, стр. 144)։

Երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով Գերմանիան բաժանվեց երկու մասի։ Արևմտյան Գերմանիան կախման մեջ է ԱՄՆ-ից, դեռևս կատարում է նրա թելադրանքը, Ճապոնիան օկուպացված է ամերիկյան զորքերի կողմից, Ֆրանսիան և Իտալիան ԱՄՆ-ի տնտեսական և քաղաքական ազդեցության տակ են գտնվում։ Խիստ կերպով թուլացել են Անգլիայի դիրքերը։ Միայն ԱՄՆ-ը պատերազմից դուրս եկան հարստացած և ուժեղացած։ Ամերիկյան մոնոպոլիաները լայն էքսպանսիա ձեռնարկեցին համաշխարհային կապիտալիստական շուկայում, ուժեղ հարվածներ հասցնելով իրենց «դաշնակիցներին»։ Նպատակ ունենալով անբաժան տիրապետության հասնել համաշխարհային կապիտալիստական շուկայում, ամերիկյան իմպերիալիզմը հանդես է գալիս «օգնության» քաղաքականության դիմակի տակ, կիրառում ապրանքների դեմպինգ, տարբեր պլաններ («Մարշալի պլան» և այլն)։ Տրումենի ծրագրի «չորրորդ կետը», որը քողարկվում էր «հետամնաց երկրներին տեխնիկական օգնություն» ցույց տալու կեղծ լոզունգով, փաստորեն նպատակ ուներ ամերիկյան մոնոպոլիաներին հնարավորություններ ստեղծել ազատ կերպով թափանցելու կախյալ և գաղութային երկրները և դրանք օգտագործել որպես հումքի աղբյուրներ, վաճառահանման շուկաներ ու կապիտալի ներդրման ոլորտներ։ Այսպիսով ամերիկյան մոնոպոլիստական շրջանները պատերազմից հետո վճռական գրոհ ձեռնարկեցին իրենց մրցակիցների դեմ՝ նրանց արտաքին շուկաներից դուրս մղելու բացահայտ մտադրությամբ։

Իմպերիալիստական տերությունների միջև գործող հակասությունների սիստեմում գլխավորը անգլո-ամերիկյան հակասությունն է։ Դա բացատրվում է նրանով, որ կապիտալիստական մյուս պետությունների մեջ ամենաուժեղ տերություններն առայժմ ԱՄՆ ու Անգլիան են։ Վերջինս դեռևս վաճառահանման զգալի շուկաներ և հումքի մեծ աղբյուրներ ունի և ԱՄՆ-ի ամենալուրջ մրցակիցն է համաշխարհային կապիտալիստական շուկայում։ Դրա համար էլ անգլո-ամերիկյան հակասությունները բացահայտ պայքարի են վերածվում վաճառահանման շուկաների, հումքի աղբյուրների, կապիտալների ներդրման ոլորտների համար։

Առանձնապես համառ բնույթ է կրում պայքարը անգլո-ամերիկյան մոնոպոլիստական ընկերությունների միջև ապրանքների և կապիտալների արտահանման գծով։ Անգլիական իմպերիալիզմն ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի ներխուժման դեմ պայքարելիս օգտագործում է այնպիսի միջոցներ, ինչպիսիք են կայսերական արտոնությունները, արտոնյալ մաքսային սիստեմը, ստեռլինգային գոտին և այլն։ Դա նրան հնարավորություն է տալիս խոչընդոտներ ստեղծելու ամերիկյան մոնոպոլիաների ճանապարհին, բայց ընդհանրապես փակել Բրիտանական տիրապետությունների դռները դրանց



առաջ՝ Անգլիային չի հաջողվում։ Այսպես, օրինակ, 1954 թվականին, 1938 թվականի համեմատությամբ, ԱՄՆ-ի արտահանումը ստեռլինգային գոտի համարյա կրկնապատկվեց։ Ամերիկյան մոնոպոլիաները թափանցում են Նոր Զելանդիա, Ավստրալիա, Հարավ-Աֆրիկյան Միություն, Հնդկաստան, Պակիստան։ ԱՄՆ-ին հաջողվել է վերջնականապես Անգլիային դուրս մղել կանադական շուկաներից։ Դրան նպաստում է Կանադայի աշխարհագրական դիրքը և դոլարային գոտուն պատկանելը։ Բավական է նշել, որ եթե կանադական արտահանման ու ներմուծման մեջ Անգլիայի բաժինը 1955 թվականին համապատասխանաբար կազմում էր 18 և 9 տոկոս, ապա ԱՄՆ-ի բաժինը կազմեց մոտավորապես 60—73 տոկոսը («Международная жизнь», 1957, № 4, стр. 50—51)։

Առանձնապես կատաղի է անգլո-ամերիկյան մրցակցությունը հումքի աղբյուրների համար, որը կրում է համաշխարհային բնույթ։ Վ. Ի. Լենինն իր ժամանակին մատնանշել է, որ «որքան ավելի բարձր է կապիտալիզմի զարգացումը, որքան ավելի ուժեղ է զգացվում հումքի պակասությունը, որքան ավելի սուր է հումքի աղբյուրների համար մղվող կոնկուրենցիան ու վաղքը նրանց հետևից ամբողջ աշխարհում, այնքան ավելի կատաղի է գաղութներ ձեռք բերելու համար մղվող պայքարը» (Երկեր, հ. 22, էջ 345—346)։

Այդ պայքարը ցայտուն կերպով դրսևորվում է Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում, որոնք խիստ հարուստ են նավթով։ Վերջին տվյալների համաձայն Մերձավոր և Միջին Արևելքի նավթային հարստությունները կազմում են ամբողջ կապիտալիստական աշխարհի նավթային ռեսուրսների 70 տոկոսից ավելին։ Ահա թե ինչու իմպերիալիստական մոնոպոլիաները անզուսպ կերպով ներխուժում են երկրագնդի այդ մասը։ Ամերիկյան մոնոպոլիստական կապիտալը կարողացել է այստեղ հասնել որոշակի հաջողությունների, իր մրցակիցների դեմ մղվող պայքարում։ 1956 թվականին ամերիկյան մոնոպոլիաների բաժինը նավթի հանույթի մեջ այստեղ գերազանցեց 60 տոկոսից, 1937 թվականի 13,1 տոկոսի փոխարեն, այն ժամանակ, երբ անգլիական ընկերությունների բաժինը 1936 թվականի 79 տոկոսի փոխարեն 1955 թվականին նվազեց մինչև 32,3 տոկոսի։

Ձգտելով վերջնականապես հաստատվել Մերձավոր և Միջին Արևելքում և ամբողջապես զավթել նրա բնական հարստությունները, ամերիկյան նավթային մոնոպոլիաները ԱՄՆ-ի կառավարության հետ մեկտեղ Մերձավոր և Միջին Արևելքը նվաճելու նոր միջոցառումներ են մշակում։ Այդ միջոցառումներից մեկը «էյզենհաուերի դոկտրինան» է։

Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է «օգնության» և «կոմունիզմի դեմ պայքարելու» քողի տակ իրենից կախման մեջ գցել արաբական երկրները, զինված միջամտությամբ աշխարհի այդ մասում ճնշել ծավալված և օրավուր ընդլայնվող ազգային-ազատագրական շարժումները և այսպիսով ռազմա-ագրեսիվ խմբավորումների շրջանակներն ընդլայնել արաբական երկրները դրանց մեջ ներգրավելու հաշվին։

«էյզենհաուերի դոկտրինան» հետապնդում է նաև մի այլ, ԱՄՆ-ի մոնոպոլիստական շրջանների համար կենսական նշանակություն ունեցող նպատակ՝ Անգլիային ու Ֆրանսիային դուրս մղել հումքով հարուստ այս շրջանից և վերջնականապես հաստատվել այնտեղ։ Դժվար է գերագնահատել հումքի այնպիսի աղբյուրի նշանակությունը, ինչպիսին նավթն է։ «էյզենհաուերի դոկ-

տրինայի» մեջ սևով սպիտակի վրա գրված է. «Միջին Արևելքը գարբաս է Եվրասիայի միջև», «այստեղ է գտնվում նավթի այժմ հայտնի համաշխարհային հանքավայրերի մոտավորապես երկու երրորդը», «այս բոլորը ընդգծում է Միջին Արևելքի վիթխարի նշանակությունը»։

Ավելորդ չէր լինի մի քանի փաստերով ցույց տալ, թե ինչ է տալիս միջին արևելյան նավթը մոնոպոլիստներին։ Նախ, Միջին Արևելքում նավթահորերը արդյունավետ են, իսկ բանվորական ուժը՝ շատ էժան։ Աշխատելով օրական 10—12 ժամ, Միջին Արևելքի նավթահանքերի բանվորը 8 անգամ ավելի քիչ աշխատավարձ է ստանում, քան ԱՄՆ-ի նավթահանքերում աշխատող բանվորը։ Եթե ամերիկյան բանվորի շահագործումից նավթային մոնոպոլիաները տարեկան ստանում են 4—5 հազար դոլար, ապա, օրինակ, Կուվեյտի նավթահանքերում՝ աշխատող բանվորից 40 հազար։ Իմպերիալիստական նավթային ընկերությունները ոչ մի տեղ այնքան շահույթ չեն ստանում, որքան Մերձավոր Արևելքում։ ԱՄՆ-ի մոնոպոլիաները այստեղ խոշոր կապիտալներ ներդնելով, դրանցից ստանում են շահույթի 75 տոկոսը, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ում ստանում են 10 տոկոսը, Հարավային Ամերիկայում՝ 25 տոկոսը։

Մերձավոր արևելյան նավթը կենսական նշանակություն ունի Արևմտյան Եվրոպայի համար, որը Մերձավոր և Միջին Արևելքից ներմուծում է իրեն անհրաժեշտ նավթի 85 տոկոսը։ Բավական է ասել, որ միայն 1955 թվականին Ֆրանսիան Մերձավոր Արևելքից ներմուծել է երկրի սպառած նավթի 94 տոկոսը։ Այս փաստերը ցույց են տալիս, որ նավթը կռվախնձոր է իմպերիալիստական տերությունների համար։ Մերձավոր ու Միջին Արևելքում իրենց ամբողջ սրությամբ բախվում են ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի շահերը։ Պարզ է, որ շահույթները դուրս կորզելու համար աշխարհի այս մասի բարենպաստ պայմանները կախարդական ուժով իրենց վրա են գամում իմպերիալիստական գիշատիչների ուշադրությունը, գրգռում նրանց ախորժակը։

Անգլիայի ու ԱՄՆ-ի տնտեսական շահերը ուժեղ կերպով բախվեցին Իրանում։ Երկար տարիներ Իրանի նավթը եկամտաբեր աղբյուր էր անգլիական իմպերիալիզմի համար։ Անգլո-իրանական նավթային ընկերությունը իր ամբողջ գոյության ընթացքում արդյունահանել էր 300 մլն. տոննա նավթ, ստանալով 5 միլիարդ դոլար եկամուտ։ Իրանի նավթային արդյունաբերությունը Մոսադիկի կառավարության կողմից ազգայնացվելուց հետո, երբ ծագեց անգլո-իրանական կոնֆլիկտը, ԱՄՆ-ը շտապեցին հանդես գալ «միջնորդի» դերում, ուղղակի միջամտելով այդ կոնֆլիկտին։ Հենվելով երկրի ռեակցիոն ուժերի վրա, ամերիկյան իմպերիալիստներին հաջողվեց վիժեցնել Իրանի նավթային արդյունաբերության ազգայնացումը և նորից պղտոր ջրում ձուկ որսալ։ 1954 թվականին Իրանի նավթային ռեսուրսներն օգտագործելու համար 5 ամերիկյան, 2 անգլիական ու մեկ ֆրանսիական մոնոպոլիստական ընկերություններից միջազգային կոնսորցիում ստեղծվեց, որի ակցիաների 40 տոկոսի տեր դարձան ամերիկյան մոնոպոլիաները։ Դա մի նոր ուժեղ հարված էր Անգլիայի տնտեսական շահերին։

Հատկապես ուժեղացել է ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի էքսպանսիան Լատինական Ամերիկայի երկրներում։ Մինչ պատերազմը լատինա-ամերիկյան երկրներում Անգլիան մեծ ազդեցություն ուներ։ Ներկայումս անգլիական մոնոպոլիաները ամերիկյան կորպորացիաների հարվածների տակ նահանջում են։



Ընդհանրապես, հումքի աղբյուրների համար մղվող պայքարում ակնառու կերպով դրսևորվում է ամերիկյան իմպերիալիզմի գերազանցությունը։ Այսպես, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի վերահսկողության տակ գտնվող վառելիքի և հումքի հանույթի 30 տեսակների ֆիզիկական ծավալի ավելի քան 74 տոկոսից 1951 թվականին 54,1 տոկոսը բաժին էր ընկնում ԱՄՆ-ին, 17,4 տոկոսը՝ Անգլիային, իսկ 2,8 տոկոսը՝ Ֆրանսիային։

Այժմ ամերիկյան մոնոպոլիստական ընկերությունները վերահսկում են կապիտալիստական աշխարհի արդյունաբերական և ռազմա-ստրատեգիական հումքի կարևորագույն տեսակների պաշարների մոտավորապես կեսը և հանույթի մոտավորապես երկու երրորդը։

Կապիտալ ներդրումների բնագավառում նույնպես անգլիական մոնոպո-
լիստական ընկերությունները կորցնում են իրենց դիրքերը։ Եթե 1954 թվա-
կանին Անգլիայի արտասահմանյան կապիտալ ներդրումները կազմում էին
2128 միլիոն ֆունտ ստեռլինգ, 1938 թվականի 3545 միլիոն ֆունտ ստեռլին-
գի փոխարեն, ապա 1956 թվականին, 1939 թվականի համեմատությամբ,
ԱՄՆ-ի օտարերկրյա կապիտալ ներդրումները աճեցին ավելի քան 3,3 ան-
գամ, հասնելով 49,5 միլիարդ դոլարի, որը մի քանի անգամ գերազանցում
է Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի և Իտալիա-
յի օտարերկրյա կապիտալ ներդրումները միասին վերցրած։
ԱՄՆ-ի ու Անգլիայի միջև տնտեսական խորացող հակասությունները
միահյուսվում են ռազմա-քաղաքական հակասությունների հետ։
Հյուսիս-ատլանտյան բլոկի յուրաքանչյուր սեսիայում սուր տարաձայ-
նություններ են ծագում Անգլիայի, ԱՄՆ-ի ու Ֆրանսիայի միջև՝ արտաքին
քաղաքական և ռազմական հարցերի շուրջը։ Պատահական չէր, որ Անգլիան
ժամանակին հրաժարվեց այսպես կոչված «Եվրոպական պաշտպանական
միավորման մեջ» մասնակցելուց։ Նա դրանով ձգտում էր պահպանել իր քա-
ղաքական ու տնտեսական ինքնուրույնությունը, և խաղալով ֆրանս-գերմա-
նական հակասությունների վրա, իշխող դիրք ունենալ Արևմտյան Եվրոպա-
յում։ Անգլիան հրաժարվեց մասնակցել նաև ածխի ու պողպատի Եվրոպական
միավորմանը։ Այնուհետև Անգլիան, հակառակ ԱՄՆ-ի կամքի ու ցանկության,
վերացրեց առևտրի ասպարեզում կիրառվող արգելքները և որոշեց ընդլայնել
առևտրի շրջանառությունը Չինաստանի հետ։
Բնութագրելով անգլո-ամերիկյան հարաբերությունները, ամերիկյան հեղի-
նակավոր մի մեկնաբան նշել է, որ Անգլիայի ու ԱՄՆ-ի միջև կոնֆլիկտի
լուրջ տարրեր գոյություն ունեն Արևմտյան Եվրոպայում, Մերձավոր ու Միջին
Արևելքում, Կանադայում, Հարավային Աֆրիկայում, Ավստրալիայում, Նոր
Զելանդիայում, Պակիստանում և աշխարհի մյուս մասերում։ Նա եզրակաց-
րել է, որ անգլո-ամերիկյան այդ բախումների հնարավորությունը դրդում է
մտայլ եզրակացության, որ կապիտալիստական լագերի ներսում կոնֆլիկտի
անխուսափելիության վերաբերյալ «սովետական կանխատեսումները կարծես
թե պատրաստ են իրականության վերածվելու»։
Իմպերիալիստական տերությունների միջև խորացող հակասությունների
սրտեմում նկատելիորեն գծագրվում են ֆրանս-ամերիկյան հակասություն-
ները, որոնք ընդգրկում են և՛ տնտեսական, և՛ ռազմա-քաղաքական բնագա-
վառներ։ Պատերազմին անմիջապես հետևած սկզբնական շրջանում Ֆրան-
սիայի տնտեսական դիրքերն այնքան խախտ էին, որ ամերիկյան մոնոպո-

ժիաների համար մեծ դժվարություն չէր ազատ կերպով ներխուժելու Ֆրանսիայի տրադիցիոն շուկաները: Այսպես, օրինակ, 1945 թվականին ԱՄՆ-ի տեսակարար կշիռը ֆրանսիական գաղութների ներմուծման մեջ հասավ 34 տոկոսի, պատերազմից առաջ նրա ունեցած 4,9 տոկոսի փոխարեն, այն ժամանակ, երբ Ֆրանսիայի բաժինը համապատասխանաբար 59 տոկոսից իջավ 19,4 տոկոսի: Հետագա տարիներին Ֆրանսիան ամրապնդելով իր տնտեսական դիրքերը, սկսեց մենամարտի մեջ մտնել ամերիկյան մոնոպոլիաների հետ և որոշ արդյունքի հասավ: Արդեն 1952 թվականին Ֆրանսիայի տեսակարար կշիռը իր գաղութների ներմուծման մեջ հասավ 70,2 տոկոսի, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ինը իջավ մինչև 6,2 տոկոսի:

Սակայն ԱՄՆ-ը չեն հրաժարվել ֆրանսիական տրադիցիոն շուկաները նվաճելու իրենց էքսպանսիոնիստական դիտավորություններից: Հիշենք թեկուզ այն, թե ինչպես վերջերս ԱՄՆ-ը ռազմական օգնություն ցույց տվին Թունիսին, «օգնություն», որի քաղաքական նպատակները հանրահայտ են: Այս փաստը խիստ հակաամերիկյան ռեակցիա առաջացրեց Ֆրանսիայում:

Գործը հասավ դիվանագիտական բանակցություններին և պետական գործիչների «հանդստացուցիչ» հայտարարություններին: 1956 թվականի մարտի 2-ին Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրը ժուռնալիստների ամերիկյան ակումբում հայտարարեց. «Ես խորապես համաձայն չեմ այն քաղաքականության հետ, որ վերջին տարիներս վարում էին արևմտյան տերությունները: Հակառակ դաշինքներին, հակառակ պնդումներին, այսօր գոյություն չունի ռեալ, համատեղ ֆրանս-բրիտանա-ամերիկյան քաղաքականություն... Մեզ թվում է, որ պրոպագանդայի և ապստամբությունների հայտնի ձևերի հետևում թաքնված է որոշակի տերությունների ցանկությունը զավթելու Ֆրանսիայի ժառանգությունը»:

Ավելի սուր բնույթ են կրում ֆրանս-ամերիկյան ռազմա-քաղաքական հակասությունները, որոնք մի ընդհանուր օղակ են կազմում Ֆրանսիայի ու Անգլիայի, Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի միջև գործող հակասությունների հետ: Առանձնապես սուր կերպով ԱՄՆ-ի ու Ֆրանսիայի շահերը բախվեցին Եվրոպայի կենտրոնում Արևմտյան Գերմանիայի ռևանշիստների մասնակցությամբ ռազմա-քաղաքական խմբավորում (սկզբում՝ «Եվրոպական պաշտպանական միավորման», ապա Փարիզի պայմանագրերի ձևով) ստեղծելու հարցում և Հնդկաչինի հարցում:

«Եվրոպական պաշտպանական միավորում» ստեղծելու նախագիծը ենթադրում էր սահմանափակ թվով կապիտալիստական երկրների (Ֆրանսիա, Իտալիա, Բելգիա, Լյուքսեմբուրգ, Հոլանդիա, Արևմտյան Գերմանիա) մասնակցությամբ ռազմական բլոկի ստեղծում: Իսկ դա արդեն նշանակում է երկու համաշխարհային պատերազմներ սանձազերծած գերմանական միլիտարիզմի վերականգնում: Բնական է, որ այդպիսի հեռանկարը չէր կարող անհանգստություն և քաղաքական ռեակցիա չառաջացնել Ֆրանսիայում, ինչպես նաև Անգլիայում: Չէ՞ որ պատմության դասերը վկայում են, որ միշտ էլ գերմանական միլիտարիզմի առաջին հարվածի տակ Ֆրանսիան է ընկել: ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանների նպատակն է արևմտագերմանական մոնոպոլիստական ուժերի հետ դաշնակցած քայքայել Անգլիայի ու Ֆրանսիայի դիրքերը Եվրոպայում, տիրապետություն հաստատել եվրոպական շուկաներում և միաժամանակ Եվրոպայի կենտրոնում հակակոմունիստական օջախ ստեղծել:



1954 թվականի օգոստոսին ֆրանսիական պառլամենտը մերժեց «Եվրո-
պական պաշտպանական միավորման» մասին պայմանագրի վավերացումը:
Ճիշտ է, հետագայում ամերիկյան իմպերիալիստներին հաջողվեց արևմտա-
եվրոպական ռեակցիոն ուժերի օգնությամբ անցկացնել Փարիզի պայմանա-
գրերը, որոնք գերմանական միլիտարիզմի առաջ ազատ ճանապարհներ բա-
ցեցին: Բայց այդ պայմանագրերի քննարկման ու հաստատման պրոցեսը
պարզորոշ կերպով ցույց տվեց այն անտագոնիստական խոր հակասություն-
ները, որոնք չթուլացող թափով գործում են իմպերիալիզմի լագերում: Անգլիա-
կան պառլամենտում դեպուտատների միայն 42 տոկոսը քվեարկեց այդ պայ-
մանագրերի օգտին:

Ֆրանսիայի ազգային ժողովում այդ պայմանագրի քննարկման պրոցեսը
ֆրանս-գերմանական քաղաքական անհաշտելի հակասությունների և Ֆրան-
սիայում հակաամերիկյան տենդենցների արտահայտության ցուցանիշն էր:
Բավական է ասել, որ ազգային ժողովում Արևմտյան Գերմանիայի վերա-
ռազմականացման կետը անցավ միայն 27 ձայնի առավելությամբ, այն էլ
երկրորդ քվեարկումից հետո, ամերիկյան ռեակցիոն շրջանների բացահայտ
կոպիտ ճնշման տակ: 1949 թվականի հուլիսին Հյուսիս-ատլանտյան պակտի
հարցի և 1954 թվականի դեկտեմբերին Փարիզի պայմանագրերի հարցի քըն-
նարկման արդյունքների համեմատությունը վկայում է Ֆրանսիայում հակա-
ամերիկյան տենդենցների, ֆրանս-ամերիկյան հակասությունների խորացման
ու սրման մասին: Եթե Հյուսիս-ատլանտյան պակտի վավերացման օգտին
ֆրանսիական ազգային ժողովում քվեարկությանը մասնակցած 584 դեպու-
տատից ձայն տվին 399 դեպուտատ, դեմ 189, (որանցից 168-ը կոմու-
նիստներ և 8 պրոգրեսիստներ), ապա 1954 թվականի դեկտեմբերին Փարիզի
պայմանագրերի օգտին 627 դեպուտատից քվեարկեցին 287-ը, դեմ՝ 260-ը,
ձեռնպահ մնացին կամ չմասնակցեցին 80-ը, այն ժամանակ, երբ կոմունիստ
ու պրոգրեսիստ դեպուտատների թիվը այստեղ կազմում էր 98 հոգի: Մի
խոսքով, եթե 1949 թվականին ամերիկյան քաղաքականությունը պաշտպա-
նելուց հրաժարվեց ազգային ժողովի բուրժուական դեպուտատների ընդամե-
նը 5 տոկոսը, ապա 1954 թվականին՝ մոտավորապես 50 տոկոսը: Իզուր չէր,
որ ամերիկյան «Յունայտեդ Ստեյտս Նյուս էնդ Ուորլդ Ռիպորտ» ժուռնալը
գրում էր. «Միացյալ Նահանգների և Անգլիայի ղեկավարները գալիս են այն
եզրակացության, որ նրանք չեն կարող հույս դնել Ֆրանսիայի վրա»:

Տնտեսական լուրջ հակասություններ կան «Ածխի և պողպատի եվրոպա-
կան միավորման» մասնակիցների միջև: Հանդիսանալով արտադրության մի-
ջազգային կենտրոնացման և համակենտրոնացման նոր ձև, այդ կարտելը
ստեղծված է ռազմական նպատակներով և ծառայում է նոր պատերազմի
նախապատրաստման խնդիրներին: Նախաձեռնելով միջազգային այդ կար-
տելի ստեղծումը և նրան Արևմտյան Գերմանիայի մասնակցությունը, ամե-
րիկյան մոնոպոլիաները ձգտում են Ռուրի ավազանից դուրս մղել Անգլիային,
վերականգնել անգլո-գերմանական մրցակցությունը և այսպիսով թուլացնել
Անգլիայի դիրքերը արևմտա-եվրոպական շուկաներում: Իր ածխա-մետալուր-
գիական արդյունաբերության ինքնուրույնությունը պահպանելու նպատակով,
Անգլիան հրաժարվեց այդ կարտելի մեջ մասնակցելուց: Ամերիկյան կառա-
վարող շրջանները միաժամանակ այդ կարտելի մեջ ներգրավելով Ֆրանսիան
և Արևմտյան Գերմանիան, ձգտում են ժամանակավորապես հաշտեցնել

ֆրանս-գերմանական տնտեսական ու քաղաքական հակասությունները՝ իրենց ռազմա-քաղաքական ագրեսիվ դիտավորությունները Եվրոպայում իրագործելու համար այդ երկու տերությունների ուժերն օգտագործելու միջոցով։ «Այդ կարտելի ստեղծումը Ռուր-սաարի պլանի մի մասն է՝ Արևմտյան Եվրոպան օգտագործելու նախապատրաստվող հակասովետական ագրեսիայի մեջ» (Х. Люмер, «Военная экономика и кризис», М. 1955, стр. 239)։

Սակայն կարտելի մեջ հակասությունները Ֆրանսիայի և Արևմտյան Գերմանիայի միջև չեն թուլանում։ Արևմտյան Գերմանիան աստիճանաբար ուժեղացնում է իր տնտեսական կշիռը կարտելի մեջ և այնտեղ իշխող դիրք գրավում։ 1952 թվականին նրան բաժին էր ընկնում կարտելի քարածխի ամբողջ հանույթի 51,6 տոկոսը և կոքսի 57,9 տոկոսը, այն ժամանակ, երբ Ֆրանսիայի բաժինը կազմում էր քարածխի 23,3 տոկոսը և կոքսի 17 տոկոսը։ Նույնն է վիճակը նաև պողպատի արտադրության գծով։ Արդեն 1956 թվականին Արևմտյան Գերմանիան արտադրեց 23,2 միլիոն տոննա պողպատ, Ֆրանսիայի արտադրած 13,5 միլիոն տոննայի դիմաց, այն ժամանակ, երբ 1949 թվականին նրանց արտադրանքը հավասար էր։

Միջազգային մոնոպոլիստական այս միավորման մեջ առկա սուր հակասությունների հետ սերտորեն կապված են ֆրանս-գերմանական հակասությունները Սաարի հարցում, որը երկար ժամանակ կռվախնձոր է այդ երկու պետությունների համար։ Դա պայմանավորված է նրանով, որ այստեղ կա հզոր մետալուրգիական և ածխի արդյունաբերություն։ Դեռ 1954 թվականին ածխի հանույթն այստեղ հասավ 16,7 միլիոն տոննայի, պողպատինը՝ 2,8 միլիոն տոննայի։ Որպեսզի ֆրանս-գերմանական հակասությունները Սաարի հարցում որևէ կերպ նվազեցվեին, Փարիզի պայմանագրերում նախատեսված էր հատուկ հոդված, ըստ որի Սաարը պետք է «եվրոպականացվեր»։ Բայց հանրաքվեի արդյունքները ցույց տվին, որ Սաարի բնակչությունը բացասաբար էր տրամադրված «եվրոպականացման» նկատմամբ։ Սաարի համար մղված պայքարը վերջնականապես ավարտվեց Արևմտյան Գերմանիայի հաղթանակով, որն ավելի սրեց ֆրանս-գերմանական հակասությունները։

Երկար ժամանակ Ֆրանսիան գաղութային պատերազմ էր մղում Հնդկաչինում, նպատակ ունենալով ճնշել երկրում ծավալված ազգային-ազատագրական շարժումը։ Սակայն միջազգային և ամենից առաջ Ֆրանսիայի հասարակայնության ճնշման տակ երկրի քաղաքական շրջանները ստիպված համաձայնվեցին զինադադար կնքել Հնդկաչինում։ 1954 թվականին տեղի ունեցած Ժնևի խորհրդակցությունում ԱՄՆ-ը փաստորեն մեկուսացված վիճակում մնացին։ Բավական է ասել, որ Դալեսը դեմոնստրատիվ կերպով հեռացավ կոնֆերանսից։ Սակայն հետագայում ԱՄՆ-ը ակտիվացրին իրենց գործողությունները Հարավային Վիետնամում և կարճ ժամանակամիջոցում ամերիկյան մոնոպոլիստական կապիտալին հաջողվեց հաստատվել այստեղ։ Դա հակասում է Ֆրանսիայի տնտեսական ու քաղաքական շահերին և խորացրեց ֆրանս-ամերիկյան հակասությունները։

***

Ժամանակակից էտապը բնորոշ է նրանով, որ համաշխարհային կապիտալիստական շուկայում, որպես լուրջ մրցակիցներ նորից հանդես են եկել Արևմտյան Գերմանիան և Ճապոնիան։ Այս հանգամանքը սրում է իրադրու-



թյունը կապիտալիստական շուկայում և պայքարը իմպերիալիստական տե-
րությունների միջև։ Գերմանական ու ճապոնական մոնոպոլիստական կապի-
տալի և միլիտարիզմի վերականգնման գործում վճռական նշանակություն
ունեցավ անգլո-ամերիկյան ֆինանսական օգնությունը։ Հետպատերազմյան
յոթ տարիների ընթացքում Արևմտյան Գերմանիան 9 միլիարդ դոլար ամե-
րիկյան պետական սուբսիդիաներ ստացավ։
ԱՄՆ-ի և Անգլիայի իմպերիալիստական շրջանները ձգտում են Արև-
մտյան Գերմանիան դարձնել որպես հարվածային ուժ նախապատրաստվող
ագրեսիվ պատերազմում։ Այս հանգամանքը օգտագործում են Արևմտյան
Գերմանիայի մոնոպոլիստական շրջանները, իրենց ռազմա-տնտեսական
հզորությունը վերականգնելու համար։ Փաստերը ցույց են տալիս, որ Արև-
մտյան Գերմանիան լուրջ մրցակից է դարձել ԱՄՆ-ի և Անգլիայի համար։
Ճիշտ է, արևմտյան տերությունները Արևմտյան Գերմանիան կապելով
Փարիզի պայմանագրերի հետ, մտածում են որոշ շրջանակների մեջ դնել
նրան։ Բայց Արևմտյան Գերմանիայի մասնակցությունը Փարիզի պայմանա-
գրերին, ավելի բարենպաստ պայմաններ է ստեղծում նրա համար՝ իր ռազ-
մա-տնտեսական պոտենցիալը ուժեղացնելու տեսակետից։
Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական ուժերի անհամաչափ զար-
գացումը ցայտուն կերպով դրսևորվում է Արևմտյան Գերմանիայի ու Ճապո-
նիայի զարգացման տեմպերի մեջ։ Այսպես, օրինակ, 1956 թվականի ԳՖՌ-ի
արդյունաբերական արտադրանքի ծավալը 1946 թվականի համեմատությամբ
աճեց 184 տոկոսով, Ճապոնիայինը (1955) 188 տոկոսով, այն ժամանակ,
երբ այդ նույն ժամանակամիջոցում Անգլիայի արդյունաբերական արտա-
դրանքի ծավալը ավելացավ 63 տոկոսով, Ֆրանսիայինը՝ 70 տոկոսով։ 1956
թվականին Արևմտյան Գերմանիայի արդյունաբերական արտադրանքի ընդհա-
նուր ծավալը 105 տոկոսով գերազանցեց 1937 թվականի մակարդակը։ 1956
թվականին ԳՖՌ-ն պողպատի, չուգունի, ալյումինի և այլ արտադրանքների
գծով Արևմտյան Եվրոպայում առաջին տեղը դուրս եկավ։
Այժմ Արևմտյան Գերմանիան համաշխարհային կապիտալիստական շու-
կայում տնտեսական լայն էքսպանսիա է ծավալել։ 1957 թվականին կապի-
տալիստական երկրների ընդհանուր արտահանման մեջ Արևմտյան Գերմա-
նիայի բաժինը կազմեց 8,8 տոկոս, ընդ որում ԳՖՌ-ի արտահանման 60 տո-
կոսն Արևմտյան Եվրոպայի երկրներին է ընկնում, որտեղ ԳՖՌ-ին հաջողվել
է գերակշռող դիրք գրավել։ Համաշխարհային կապիտալիստական շուկայում
1947 թվականի համեմատությամբ ԳՖՌ-ն արտահանման տեսակետից 26-րդ
տեղից բարձրացավ 3-րդ տեղը, զիջելով միայն ԱՄՆ-ին ու Անգլիային։
Արևմտա-գերմանական մոնոպոլիաները թափանցել են լատինա-ամերիկ-
յան շուկաները, Մերձավոր և Միջին Արևելք, Ասիայի տարբեր շրջանները և
այլն։ Նրանք հաջողությամբ մրցակցում են ամերիկյան, անգլիական, ֆրան-
սիական մոնոպոլիաների հետ, նոր շուկաներ նվաճելով և ուժեղացնելով
իրենց դիրքերը։ Բավական է ասել, որ 1949—1954 թվականների ընթացքում
արևմտա-գերմանական արտահանումը լատինա-ամերիկյան շուկաներ 16
անգամ աճեց։ Այստեղ 1953 թվականին ԳՖՌ-ն արտահանման տեսակետից
երկրորդ տեղը գրավեց (ԱՄՆ-ից հետո), առաջ անցնելով Անգլիայից։ Այդ
նույն ժամանակամիջոցում Արևմտյան Գերմանիայի արտահանումը ֆրան-
սիական տիրապետություններում չորս անգամ աճեց։ Այժմ արևմտա-գերմա-

նական արտահանումը աֆրիկյան բոլոր երկրներում անցել է նախապատերազմյան մակարդակից։ Արդեն 1952 թվականին ճշգրիտ մեխանիկայի և օպտիկայի արտադրանքների արտահանման տեսակետից ԳՖՌ-ն կապիտալիստական աշխարհում գրավեց առաջին տեղը, իսկ քիմիական, մեքենաշինական արդյունաբերության արտադրանքների գծով՝ առաջին տեղերից մեկը։

Արևմտյան Գերմանիան պայքարի մեջ է մտել նաև կապիտալի ներդրման ոլորտներ ձեռք բերելու համար։ Գերմանական մոնոպոլիաները ուժեղացրել են կապիտալի արտահանումը աշխարհի տարբեր երկրներ, այնտեղ ստեղծելով բաժնետիրական ընկերություններ, զանազան ֆինանսական միավորումներ և այլն։ 1948—1952 թթ. ընկած ժամանակամիջոցում Արևմտյան Գերմանիան 6 մլրդ. մարկ գումարով կապիտալ արտահանեց։ Այժմ կապիտալի արտահանման տեսակետից Արևմտյան Գերմանիան կապիտալիստական աշխարհում ԱՄՆ-ից և Անգլիայից հետո գրավում է երրորդ տեղը։

Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստներին ցույց տալով ֆինանսական օժանդակություն, նրա զինված ուժերը նախապատրաստվող պատերազմում օգտագործելու նպատակով, ամերիկյան մոնոպոլիստական կապիտալը օբյեկտիվորեն նպաստում է համաշխարհային կապիտալիստական շուկայում նոր վտանգավոր մրցակցի երևան գալուն։ Ներխուժելով համաշխարհային կապիտալիստական շուկա, ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի տրադիցիոն վաճառահանման շուկաները, հումքի աղբյուրները, արևմտագերմանական մոնոպոլիաները մեծ հարված են հասցնում նրանց տնտեսական շահերին։ Ամերիկյան մամուլը խոստովանում է, որ վերածնվող արևմտա-գերմանական արդյունաբերությունը դարձել է Ամերիկայի Միացյալ Նահանգների ամենավտանգավոր մրցակիցը լատինա-ամերիկյան երկրների շուկաներում։

Արևմտա-գերմանական մոնոպոլիաների ակտիվությունը լատինա-ամերիկյան շուկաներում լուրջ հարված է հասցնում ԱՄՆ-ի շահերին։ Որպեսզի պարզ պատկերացնել այդ շուկաների նշանակությունը ԱՄՆ-ի համար, բավական է նշել, որ Լատինական Ամերիկայի երկրներն է գնում ԱՄՆ-ի էքսպորտի $1/4$-ը։ 1951-ից մինչև 1954 թվականն ընկած ժամանակամիջոցում այստեղ ԳՖՌ-ի էքսպորտը աճեց 39 տոկոսով, իսկ ԱՄՆ-ինը, Անգլիայինը և Ֆրանսիայինը 7,23 տոկոսով իջավ։

Մտահոգվելով Արևմտյան Գերմանիայի էքսպանսիայի ուժեղացումը, «Նյու Յորք Թայմս» թերթը նույնիսկ այն միտքն է արծարծել, որ ագրեսիվ Գերմանիան կապիտալիստների տարբեր խմբերի միջև կարող է պատերազմ նախաձեռնել։ Այդպիսի հեռանկարը ռեալ է, առանձնապես այն բանից հետո, երբ այժմ արևմտյան տերությունները լրիվ հնարավորություններ են տվել Արևմտյան Գերմանիային վերստեղծելու իր բանակը և այն զինելու ատոմային զենքով։

Վերջին ժամանակներս նկատելի սրությամբ աչքի են ընկնում հակասությունները, մի կողմից, Ճապոնիայի և, մյուս կողմից, ԱՄՆ-ի, Անգլիայի ու Ֆրանսիայի միջև։ Ժամանակակից պայմաններում ճապոնական մոնոպոլիաների մրցակցային պայքարը կրում է անօրինակ համառ բնույթ։ Կապիտալիստական շուկայի նեղացումը առանձնապես ակնառու կերպով արտահայտվում է Ասիական մայր ցամաքում, որտեղ իմպերիալիզմի շահագործման լուծը թոթափելով՝ Չինաստանը բռնեց սոցիալիզմի ուղին։

Արդեն 1951—1952 թթ. Ճապոնիայի ամսական միջին արտահանությունը



գերազանցեց 1938 թվականի մակարդակը։ Ստեռլինգային գոտու երկրներում
ապրանքների ճապոնական էքսպորտը 1951 թվականին, 1950 թվականի հա-
մեմատությամբ, աճեց ավելի քան երկու անգամ։ Արդեն 1956 թվականին
Ճապոնիան առևտրանավերի համաշխարհային արտադրության մեջ գրավեց
առաջին տեղը, առաջ անցնելով Անգլիայից։

Տեքստիլ ապրանքների արտահանության գծով պայքարը համաշխարհա-
յին կապիտալիստական շուկայում ծավալվում է հիմնականում ճապոնական,
ամերիկյան և անգլիական մոնոպոլիաների միջև։ Արդեն 1952 թվականին
տեքստիլի արտահանության տեսակետից Ճապոնիան անցավ ԱՄՆ-ից և Անգ-
լիայից, այն ժամանակ, երբ 1946—1948 թթ. կապիտալիստական աշխարհում
տեքստիլի արտահանությամբ առաջին տեղը գրավում էին ԱՄՆ-ը։ 1953 թվա-
կանին բամբակագործվածքային արտադրության տեսակետից Ճապոնիան
կապիտալիստական աշխարհում դուրս եկավ առաջին տեղը։

Անգլիական մոնոպոլիաների դեմ մղվող պայքարում ճապոնական մոնո-
պոլիաները դիմում են ապրանքների դեմպինգին, սասանելով Անգլիայի դիր-
քերը ասիական շուկաներում։ Իրենց հերթին անգլիական մոնոպոլիաները
ճապոնական մրցակիցների դեմ կիրառում են զանազան մաքսային խոչըն-
դոտներ։ Ամերիկյան «Յունայտեդ Ստեյտս Նյուս էնդ Ուորլդ Ռիպորտ» ժուռ-
նալը գրել է, որ «Ճապոնիան ոչ միայն խլել է Անգլիայի շուկաների մի մասն
Ասիայում, այլ զգալի չափով ներխուժել նաև ստեռլինգային գոտին՝ Անգ-
լիայի տրադիցիոն շուկան»։ Ամերիկյան մի այլ ժուռնալ գրել է, որ համաշ-
խարհային շուկաների համար մղվող կատաղի պայքարում Ճապոնիան ու
Մեծ Բրիտանիան բռնում են միմյանց կոկորդից։

Հակասություններն ԱՄՆ-ի և Ճապոնիայի միջև գնալով սրվում են։ Դրանց
հիմքում ընկած են մի շարք պատճառներ։ Վարելով սոցիալիստական լագերի
երկրների հետ առևտուրը սահմանափակելու քաղաքականություն, ԱՄՆ-ը
Ճապոնիային կտրում են այդ լագերի հետ առևտրական կապերից և կաշկան-
դում Ճապոնիայի արտաքին առևտրի զարգացումը։ Միաժամանակ ամերիկ-
յան մոնոպոլիաներն ավելացնում են Ճապոնիա ներմուծվող իրենց ապրանք-
ների քանակը։ 1953 թվականին ամերիկյան արտահանությունը Ճապոնիա
կազմեց երկրի ընդհանուր ներմուծման 29,1 տոկոսը, այն ժամանակ, երբ
ԱՄՆ-ի բաժինը Ճապոնիայի արտահանության մեջ 1954 թվականին կազմեց
ընդամենը 17 տոկոս։ Դրա հետևանքն այն եղավ, որ 1954 թվականին ԱՄՆ-ի
հետ Ճապոնիայի առևտրի դեֆիցիտը կազմեց մոտ 500 միլիոն դոլար։

Լուրջ բնույթ է կրում նաև պայքարը ամերիկյան և ճապոնական մոնո-
պոլիաների միջև արտաքին շուկաներում։ Ճապոնիան բացահայտորեն ներ-
խուժում է Լատինական Ամերիկայի երկրներ։ 1957 թվականին ճապոնական
արտահանությունը Բրազիլիա 1952 թվականի համեմատությամբ ավելացավ
5 անգամ, այն ժամանակ, երբ ԱՄՆ-ինը ընդամենը 13 տոկոսով։ Առայժմ
ճապոնական մոնոպոլիաներին չի հաջողվել
մյուս արտաքին շուկաներում հասնել ռեալ հաջողությունների, բայց մի բան պարզ է, որ Ճապոնիան գնա-
լով ուժեղացնում է իր մրցակցությունը և դառնում վտանգավոր մրցակից
ԱՄՆ-ի և Անգլիայի համար։ Ճապոնիայի և ԱՄՆ-ի միջև հակասություններ
կան ռազմական բազաներ ստեղծելու, ատոմային զենքի փորձարկումների
արգելման, վերազինման և մի շարք այլ հարցերում։

Իմպերիալիստական ագրեսիվ խմբավորումների մեջ մասնակցող կապի-

տալիստական երկրները սոցիալիզմի ու դեմոկրատիայի ուժերի դեմ պայքարելու գործում բարեկամներ են։ Բայց այդ պետություններից յուրաքանչյուրը պաշտպանում է իր սեփական տնտեսական ու քաղաքական շահերը։ Առավելագույն շահույթ ստանալու ձգտումը նրանց էկոնոմիկայի շարժիչն է, ահա թե ինչու նրանք համաշխարհային կապիտալիստական շուկայում կատաղի թշնամիներ են։ 1955 թվականի փետրվարին ամերիկյան «Խարպերս Մեգեզին» ժուռնալում լույս ընծայված «Հարկավոր է փրկել բարեկամությունը Անգլիայի հետ» հոդվածում ժուռնալիստ Ալաստեր Բակենը գրել է. «Տասներեք տարվա ընթացքում անգլո-ամերիկյան դաշինքը արևմտյան պաշտպանության անկյունաքարն էր։ Վերջին ժամանակներս երկու երկրների միջև հարաբերությունները կրում են վտանգավոր լարված բնույթ» («Коммунист», 1955, № 9, стр. 79)։

Այսպիսով, փաստերը ցույց են տալիս, որ հետպատերազմյան շրջանում հակասությունները կապիտալիստական տերությունների միջև ոչ միայն չեն թուլացել, այլև ավելի են սրվել։ Այդ հակասություններն իրենց մեջ ապագա միջիմպերիալիստական ռազմական ընդհարումների տարրեր են պարունակում։ Իրենց հակասությունների լաբիրինթոսից դուրս գալու համար իմպերիալիստները ձգտում են ռազմական ավանտյուրաներ կազմակերպել սոցիալիստական երկրների դեմ, պատերազմական վտանգավոր օջախներ են ստեղծում աշխարհի տարբեր մասերում։

Ժամանակակից միջազգային իրադրության, ատոմային և ջրածնային զենքի առկայության պայմաններում ամեն մի պատերազմ կարող է հեշտությամբ համաշխարհային պատերազմի վերածվել։ Այստեղից հասկանալի է դառնում, թե համընդհանուր խաղաղության գործի համար ինչպիսի լուրջ վտանգ են ներկայացնում իմպերիալիստական տերությունների խորացող անհաշտելի հակասությունները։ Բայց ժամանակակից պայմաններում ամեն ինչ տնտեսական հիմքին հանգեցնելը ճիշտ չի լինի։ Լենինիզմը սովորեցնում է, որ հենց իմպերիալիզմի էության մեջ են թաքնված պատերազմների աղբյուրները, բայց միաժամանակ իմպերիալիզմի հետ կողք-կողքի առկա են այնպիսի հասարակական ու քաղաքական ուժեր, որոնք ընդունակ են վճռականապես հակազդելու իմպերիալիզմի ռազմատենչ ուժերին։ Դա սոցիալիզմի լագերն է, աշխարհի բոլոր խաղաղասեր ուժերը, որոնք միասնական ճակատով հանդես գալու դեպքում կարող են ձախողել իմպերիալիզմի ագրեսիվ դիտավորությունները և առհասարակ վերջ տալ իմպերիալիզմին։

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՋԱՏԱԳՈՎՆԵՐԸ

## Տ. ՖԱԴԵԵՎԱ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցած տարիներին
Ֆրանսիայում երևան եկան ֆրանսիական Սոցիալիստական պարտիայի
(ՍՖԻՕ) գործիչների աշխատություններ ու հոդվածներ՝ նվիրված քաղաքա-
տնտեսության հարցերին, մասնավորապես բանվոր դասակարգի և աշխատա-
վարձի հարցերին, որ ներկայումս կապիտալիստական երկրներում, այդ
թվում նաև Ֆրանսիայում, առավել այժմեական հարցերից մեկն է։
Այդ գրքերի ու հոդվածների ընդհանուր գիծն է՝ հիմնավորել ՍՖԻՕ-ի ղե-
կավարների հրաժարումը մարքսիզմից, որպես սոցիալիստական շարժման
գաղափարական հիմքից։
Ֆրանսիական սոցիալիստների ղեկավարների մի մասը մարքսիզմը ժխտ-
ում է անվերապահորեն, ուրիշներն իրենց մարքսիստներ
կոչելով՝ իրականում հրաժարվում են նրանից՝ Կ. Մարքսի որպես թե հնացած
դրույթներն «ուղղելու» անվան տակ։ Դրա ցայտուն օրինակ է ծառայում
Մարքսի աշխատավարձի թեորիան, որի էությունը՝ կապիտալիզմի օրոք յու-
րահատուկ ապրանք հանդիսացող աշխատուժի արժեքի և դրան համապա-
տասխան գնի փոխարկումը աշխատավարձի՝ այլևայլ պատրվակներով ժխտ-
ում են ժամանակակից Ֆրանսիայի ՍՖԻՕ-ի բոլոր ղեկավարները։
Օրինակ՝ տնտեսագետ պրոֆեսոր Մոսսեն ուղղակի հայտարարում է, թե
աշխատավարձի մարքսյան թեորիան «զարմանալի սիմպլիզմ» է (հասարա-
կացում), որ այն «պարզամտություն է», «արտադրության մեջ անտեսում է այն
ամենը, ինչ աշխատանք չէ հանդիսանում» (R. Mossé «Les sulaires», p. 47)։
Մ. Կոլլինեն (ՍՖԻՕ-ի բանվորական հարցի տեսաբաններից մեկը) Մարք-
սի աշխատավարձի թեորիայից հրաժարվում է այն պատճառաբանությամբ,
թե անհրաժեշտ է այն «վերանորոգել», որովհետև նրա ստեղծումից հետո ան-
ցած 100 տարվա ընթացքում «աշխատավարձի մասին եղած հասկացողու-
թյունները... էվոլյուցիա են ապրել»։
Ֆրանսիական սոցիալիստների ղեկավարների աշխատավարձի տեսու-
թյան հիմքն է կազմում աշխատավարձի «սոցիալական թեորիան», որ դեռ
ներկա դարի սկզբում առավել լրիվ կերպով մշակել է ռուսական հայտնի
բուրժուական տնտեսագետ, «լեգալ մարքսիստ» Տուգան Բարանովսկին։ II Ին-
տերնացիոնալի ռևիզիոնիստները, սկսած է. Բեռնշտայնից, բուրժուական
տնտեսագետներից փոխ առան աշխատավարձի «սոցիալական թեորիայի» հիմ-
նական իդեան, որը հետո ժառանգեցին ֆրանսիական սոցիալիստների ղե-
կավարները և հարմարեցրին այն իմպերիալիզմի արդի փուլի պահանջներին։
Պետական կապիտալիզմի գծերը (որ Ֆրանսիայում առանձնապես ուժեղ
զարգացան վերջին համաշխարհային պատերազմի կապակցությամբ և նրանից

հետո), ֆրանսիական սոցիալիստների ղեկավարները ներկայացնում են որպես դեպի սոցիալիզմ անցումային ժամանակաշրջանի գծեր։ Մինչդեռ ոչ միայն տեսականորեն, այլև կյանքի կողմից ապացուցվել է, որ իմպերիալիզմն իր գոյության ամենավերջին փուլում էլ չի դադարում մնալ որպես կապիտալիզմ։ Մինչդեռ ՍՖԻՕ-ի ղեկավարներն արդեն կապիտալիստական չեն համարում ժամանակակից Ֆրանսիայի էկոնոմիկան, որտեղ տիրապետում են կապիտալիստական խոշոր մոնոպոլիաները։

«Այսպիսով Ֆրանսիան,— գրում է ՍՖԻՕ-ի հայտնի գործիչ ու տեսաբան Ժ. Մոկը,— գտնվում է անցումային վիճակում, որը չլինելով սոցիալիզմ՝ չի էլ հանդիսանում զուտ կապիտալիզմ» (J. Moch «Confrontations», p. 241)։

ՍՖԻՕ-ի ղեկավարների համար բուրժուական պետության ջատագովության հիմք հանդիսանում է աշխատավարձի «սոցիալական թեորիան»։ Նրանք աշխատավարձի «սոցիալականացված» մաս են համարում գլխավորապես սոցիալական նպաստները և ոչ թե պետության ծախսերը կրթության և երկրի այլ հասարակական կարիքների համար։

Մ. Կոլլինեն սոցիալական աշխատավարձ հասկացողությունը բնորոշում է հետևյալ խոսքերով. «Այսպիսով ուղղակի աշխատավարձին ավելացվում են այն վարձատրությունները, որոնք կապված չեն կատարված աշխատանքի հետ (կամ հատուկ ծառայությունների հատուցման հետ) և կազմում են սոցիալական աշխատավարձը։ Այն կարելի է բաժանել երկու կարգի.

Վաղօրոք նախատեսված սոցիալական աշխատավարձ, այսինքն, որ պարբերաբար տրվում է աշխատավորների որոշ կատեգորիաներին (ընտանեկան նպաստներ).

Այն սոցիալական աշխատավարձը, որը տրվում է տարեկետումով, ծառայում է հատուկ նպաստներ վճարելու համար (բժշկական օգնության կամ հաշմանդամության և կամ ծերության կենսաթոշակներ)։

Այսպիսով սոցիալական աշխատավարձը հանդես է գալիս ոչ որպես անհատական աշխատանքի պտուղ, այլ որպես հասարակության օգնություն տվյալ հանգամանքներում» (M. Collinet «Essai sur la condition ouvriére, 1900—1950», p. 130)։

Ուղղակի աշխատավարձը, որ բանվորներն ստանում են կապիտալիստներից, ֆրանսիական սոցիալիստների ղեկավարները սոցիալական բաշխման տեսակետից դիտում են որպես բանվոր դասակարգի բաժին ազգային եկամուտից, որ պետությունը բաշխում է արհմիությունների օգնությամբ։ ՍՖԻՕ-ի ղեկավարների թեորիայի համաձայն աշխատավարձը հանդիսանում է հասարակական բաշխման ձև և կապիտալիզմի օրոք բանվոր դասակարգի դրության մշտական բարելավման հիմնական գործոն։

Զգտելով հերքել աշխատավարձի մարքսիստական թեորիան՝ ֆրանսիական սոցիալիստական պարտիայի մի շարք գործիչներ սկսում են այդ թեորիայի աղավաղումից, Մարքսին վերագրելով, թե իբր աշխատավարձի մասին իր ուսմունքի հիմքում նա դրել է «գոյության միջոցների գնի» կամ կենսական մինիմումի թեորիաները, աշխատավարձի մարքսիստական թեորիան նույնացնելով նաև Լասսալի աշխատավարձի «երկաթյա օրենքի» հետ։

Այնինչ հայտնի է, որ Կ. Մարքսը մերկացնելով աշխատավարձի Լասսալի թեորիայի օպորտունիստական բնույթը և նրա մալթուսական հիմնավորումը՝ գրել է, որ «Լասսալը չէր հասկանում, թե ինչ է աշխատավարձը, և հետևելով



բուրժուական տնտեսագետներին, իրերի երևութականությունն ընդունում էր էականի տեղ» (Կ. Մարքս, Գոթայի ծրագրի քննադատությունը, Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, էջ 26)։

Արդի ֆրանսիական սոցիալիստները, նույնիսկ նրանք, ովքեր իրենց անվանում են Մարքսի գործի շարունակողներ, Կ. Մարքսի այս կարևորագույն տեսական դրույթները, որոնք նա շարադրել է «Գոթայի ծրագրի քննադատությունում», բոլորովին անտեսում են։ Հենց սկզբից սոցիալ-դեմոկրատիայի այն ժամանակվա օպորտունիստական առաջնորդները թշնամաբար էին դիմավորել այդ դրույթները և Ֆ. Էնգելսը դրանք հրապարակել էր նրանց կամքին հակառակ։

Աղավաղելով աշխատավարձի մարքսիստական թեորիան՝ ՍՖԻՕ-ի ղեկավարները հենց իրենց կողմից Մարքսին վերագրված դրույթները հերքում են որպես հնացած կամ անճիշտ դրույթներ։ Դա ամենից ավելի լավ է ապացուցում նրանց անզորությունը մարքսիստական թեորիայի դեմ մղած պայքարում։

Իսկ ՍՖԻՕ-ի լիդերներն իրենց սոցիալական թեորիայի տեսակետից ինչպե՞ս են մոտենում այն ուղղակի աշխատավարձի էության ու չափի լուսաբանմանը, որ բանվորներն ստանում են անմիջականորեն կապիտալիստներից։ Պետք է ասել, որ այստեղ այդ թեորիայի մեծ թվով վարիանտներ են երևան գալիս։

ՍՖԻՕ-ի ղեկավարների մի մասը հիմնականում հետևում է աշխատանքի սոցիալական թեորիային այնպես, ինչպես այն ձևակերպել են Տուգան Բարանովսկին և այնուհետև սոցիալ-դեմոկրատիայի օպորտունիստական առաջնորդները, բայց հարմարեցված մոնոպոլիաների և պետական կապիտալիզմի տիրապետության պայմաններին։ Նրանք գտնում են, որ ուղղակի աշխատավարձի չափերը որոշվում են մի կողմից հասարակության տրամադրության տակ եղած նյութական բարիքների քանակով, մյուս կողմից՝ նրանց բաշխման ճշտությամբ, որ իրականացնում է պետական իշխանությունը արհմիությունների օգնությամբ։ Այդ թեորիայի մեջ գլխավոր տեղը գրավում է արդյունավետության հարցը, որպես աշխատավարձի բարձրացման հիմնական պայման։

ՍՖԻՕ-ի ղեկավարները հանդես են գալիս որպես աշխատավարձի «սոցիալական թեորիայի», եթե կարելի է այսպես արտահայտվել, «արդյունավետական» տարբերակի եռանդուն պրոպագանդիստներ։ «Օրենքները կարող են փոփոխել կարկանդակի բաշխման ձևը, բայց իրենց ուժով չեն կարող մեծացնել այն»,— ասում է Կոլլինեն։

Համարյա հարյուր տարի սրանից առաջ, Մարքսը, առարկելով Ուեստոնին, որը (Կոլլինեի նման ազգային եկամուտը համեմատելով «կարկանդակի» հետ) նույնպես գտնում էր, որ բանվորների աշխատավարձը ցածր է, որովհետև փոքրիկ է այն «ամանը», որից նրանք ուտում են՝ գրել է. «Քաղաքացի Ուեստոնը, իր հերթին մոռացել է, որ այն պնակի մեջ, որից ուտում են բանվորները գտնվում է ազգային աշխատանքի ամբողջ արդյունքը և պնակից ավելի շատ վերցնելուն նրանց խանգարում է ոչ թե պնակի փոքր ծավալն ու ոչ էլ նրա պարունակության խղճուկ քանակը, այլ բացառապես դգալների փոքր չափը» (Կ. Մարքս, Աշխատավարձ, գին և շահույթ, Հայպետհրատ, 1954 թ., էջ 9)։

Տեղին կլիներ, որ Մ. Կոլլինեն էլ Մարքսի այս խոսքերը վերագրեր ֆրանսիական «կարկանդակին»։

Ֆրանսիական բանվորների աշխատավարձի ու աշխատանքի արտադրողականության էվոլյուցիայի մասին հայտնի տնտեսագետ Յու. Կուչինսկու կազմած աղյուսակը ըստ տնտեսական ցիկլերի հիանալիորեն պատկերում է մարքսիստական թեորիան, ցույց տալով, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման պայմաններում ռեալ աշխատավարձն ընկնում է։ 1953 թվականին Ֆրանսիայում միջին ռեալ աշխատավարձը ավելի ցածր մակարդակի վրա է եղել, քան 60 տարի դրանից առաջ, իսկ աշխատանքի արտադրողականությունն այդ ժամանակամիջոցում աճել է մոտ երկու անգամ։

Աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության էվոլյուցիան ըստ տնտեսական ցիկլերի

| Տնտեսական ցիկլեր | 1900 թ. միջին ռեալ աշխատավարձը=100 | 1913 թ. մարդ-ժամի արտադրողականությունը==100 |
|---|---|---|
| 1898—1903 | 97 | 76 |
| 1914 1918 | 95 | 96 |
| 19 4—1934 | 99 | 122 |
| 1942—1945 | 75 | 77 |
| 1945—1953 | 88 | 148 |
| 1953 թերի ցիկլ | 93 | 181 |

(„Economie et politique“, № 13, 1955, p. 61).

Այս աղյուսակը լիովին հաստատում է Կ. Մարքսի այն խոսքերը, «որ կապիտալիստական արտադրության ընդհանուր տենդենցը աշխատավարձի միջին մակարդակի ոչ թե բարձրացումն է, այլ՝ իջեցումը»։ Իհարկե, այդ իջեցումը համաչափ չի լինում։ Նայած իրադրության և բանվոր դասակարգի պայքարի հաջողություններին՝ աշխատավարձը մերթ բարձրանում է, մերթ իջնում մինչև նույնիսկ աշխատուժի արժեքից էլ ցած։

Կապիտալիզմի օրոք բանվոր դասակարգի բարեկեցության բարձրացման մասին աջ սոցիալիստների դրույթը տեսականորեն հիմնավորելու և փաստերին հակառակ այդ բանն ապացուցելու դժվարության կապակցությամբ երևան են եկել ուղղակի աշխատավարձի «սոցիալական թեորիայի» զանազան տարբերակներ, որոնք սքողում են իրերի իսկական վիճակը։

Ֆրանսիական նեղ մասնագիտության բանվորի աշխատավարձի գնողունակության ինդեքսը 1954 թվականին, համեմատած 1911 թվականի ինդեքսի հետ, որը ընդունվում է 100, անկում է ցույց տալիս շատ ու շատ գլխավոր սննդամթերքների՝ ալյուրի (մինչև 70,5), բոլոր տեսակի մսի (48 և 65), ձվի (86,5), կարագի (79) և ձեթի (86), կաթի (96), պանրի (86), խնձորի (63), լոբու (75), ոսպի (30), բրնձի (71,5), սուրճի (65) նկատմամբ և այլն («Economie et politique», № 24, 1956, p. (533) 13։

Կոլլինեն տվյալներ է բերում այն մասին, որ 1850 թվականին «միջին որակի տավարի մսի մեկ կիլոգրամը արժեր Փարիզի բանվորի մոտավորապես մեկ ու կես ժամվա աշխատանքը։ Այսօր այն արժե մասնագետ բանվորի 3 ժամվա աշխատանքը»։ Գնողունակության ինդեքսն առանձնապես խիստ նվազել է հագուստի, կոշիկի, սպիտակեղենի և այլնի նկատմամբ, 1911 թվականի 100-ի դիմաց հասնելով 40-ի և 50-ի։



Աշխատավարձի, որպես ապրանքների գներով արտահայտված «աշխատանքի գնի» և կապիտալիզմի զարգացման հետ նրա աճման թեորիան հերք-
վում է փաստերով։ Այդ «թեորիայի» ջատագով Ժ. Մոկը նույնիսկ հարկ չի
համարում իր վերոհիշյալ մեծածավալ հավակնոտ գրքի մեջ հիշատակելու,
որ այդ թեորիան Կ. Մարքսը մերկացրել է որպես «թափառուն պատկերացում»
և «աբսուրդ արտահայտություն», որը թաքցնում է կապիտալիստական շահա-
գործման էությունը։

ՍՖԻՕ-ի ղեկավարները չեն կարող ժխտել ռեալ աշխատավարձի իջեցման
փաստը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և հետպատե-
րազմյան ժամանակաշրջանում։ Կոլլինեն, օրինակ, գտնում է, որ 1950 թվա-
կանի դեկտեմբերին մեկ ժամվա աշխատանքը 1938 թվականի մեկ ժամվա
աշխատանքի արժեքի երկու երրորդից մի քիչ ավելի պակաս արժեր։ Նույն-
իսկ բուրժուական տնտեսագետ Ն. Ժակոֆենը պաշտոնական տվյալների հի-
ման վրա եկել է այն եզրակացության, որ աշխատավարձի գնողունակությունը
1955 թվականին ցածր է 1938 թվականի մակարդակից, նրանից միայն փոքր-
ինչ գերազանցելով ի հաշիվ բազմազավակ բանվորների ընտանեկան նը-
պաստների։

ՍՖԻՕ-ի լիդերները հաշվի չեն առնում, որ չի կարելի վերանալ ճգնաժա-
մերից ու պատերազմներից, որոնք անխզելիորեն կապված են արտադրության
կապիտալիստական եղանակի բուն իսկ էության հետ։ Աշխատավորներն
ամենից ավելի տուժում են հենց պատերազմի ու ճգնաժամերի ժամանակա-
շրջանում, իրենց ուսերի վրա կրելով ծախսերի, կորուստների ու ավերումների
ամբողջ ծանրությունը։

Նույնիսկ աշխատավարձի ինդեքսների այն աղյուսակը, որ Ռեմբերը կազ-
մել ու հրապարակել է «Ռևյու Սոսիալիստ» ամսագրում (№ 93, 1956 թ.),
ցույց է տալիս, որ 1896 թվականից մինչև 1950 թվականն ընկած ժամանա-
կամիջոցում, այսինքն՝ 54 տարում աշխատավարձի գնողունակությունը բարձ-
րացել է միայն 15 տարիների ընթացքում և 1950 թվականին 20 տոկոսով ցած
է եղել քան 1896 թվականին, որովհետև նրա ինդեքսը համապատասխանորեն
հավասար է եղել 85 տոկոսի՝ ի դիմաց 113-ի։

Բանվորների սննդամթերքները 1956 թվականին նախորդ տարվա համե-
մատությամբ թանկացել էին 10—25 տոկոսով, իսկ բանջարեղենինը՝ նույն-
իսկ 50 տոկոսով։ 1957 թվականին գների բարձրացման տենդենցը շարունա-
կեց աճել։

Կապիտալիստից առձեռն ստացվող աշխատավարձի սոցիալական թեո-
րիայի հիմնավորման հարցում սոցիալիստ Ռեմբերը ընդունում է, որ աշխա-
տավարձի հիմքն է կազմում աշխատուժի արժեքը, բայց այն հանգեցնում է
ֆիզիկական մինիմումի և պնդում է, թե ռեալ աշխատավարձը միշտ համա-
պատասխանում է բանվորական ուժի արժեքին։ Նա նույնպես ֆրանսիական
սոցիալիստների մյուս ղեկավարների պես գտնում է, որ կապիտալիզմի օրոք
աշխատավարձի բարձրացումը պայմանավորված է աշխատանքի արտադրո-
ղականության աճումով։ Բայց ի տարբերություն Ժ. Մոկի, որն աշխատա-
վարձի աճը կապում է անմիջականորեն ապրանքների էժանացման հետ, Ռեմ-
բերը սրան միացնում է հավելյալ արժեքի և աշխատավարձի զուգընթաց
բարձրացման դրույթը։

Կ. Մարքսն իր աշխատությունների մեջ լիակատար պարզությամբ հիմ-

նավորել է այն պատճառները, որոնց հետևանքով անհնարին է որոշել շահույթի մինիմումը, ինչպես և աշխատավարձի մաքսիմումը։ Այդ հարցը վճռվում է բանվորների պայքարով, որ մղում են նրանք աշխատավարձը ֆիզիոլոգիական մինիմումի հասցնելու ուղղությամբ կապիտալիստների մշտական ձգտումի դեմ։ Կ. Մարքսը գրել է, որ շահույթների մինիմումը որոշող օրենք գոյություն չունի։

Իսկ Ռեմբերը գոյություն չունեցող «հավելյալ արժեքի մինիմումը» ելակետ է դարձրել աշխատավարձի մարքսիստական ուսմունքն աղավաղելու և վերացականորեն պնդելու համար, թե կապիտալիզմի օրոք բանվոր դասակարգի դրությունը բարելավվում է հավելյալ արժեքի մի մասը աշխատավարձին ավելացնելու հաշվին, առանց վնաս պատճառելու «կապիտալիստական ռեժիմի գործունեությանը»։

Այնինչ Մարքսը գրել է, որ «բանվորը որքան էլ ջանք թափելու լինի, միջին հաշվով ստանալու է իր աշխատանքի արժեքը, որը հանգում է նրա աշխատուժի արժեքին, որը որոշվում է գոյության այն միջոցների արժեքով, որոնք անհրաժեշտ են նրա պահպանման ու վերարտադրության համար, ըստ որում, վերջապես, գոյության այդ միջոցների արժեքը կարգավորվում է այն աշխատանքի քանակով, որ անհրաժեշտ է նրանց արտադրության համար»։

Կապիտալիստական շահագործման փաստերը Ֆրանսիայում, որտեղ վիճակագրության ազգային ինստիտուտի վերջին տվյալների համաձայն յուրաքանչյուր երկու բանվորից մեկը և յուրաքանչյուր երեք ծառայողից մեկը 1956 թվականին ամսական 30 հազար ֆրանկից պակաս են ստացել, այսինքն մոտավորապես ապրուստի այն մինիմումը կամ նրանից էլ ցած, որ արհմիությունները սահմանել են ընտանիքի մեկ բանվորի համար, հաստատում են Մարքսի իրավացիությունը և Ռեմբերի դավաճանությունը մարքսիզմին։

Անհրաժեշտ է շեշտել, որ աշխատավարձի տեսության հերքումը ֆրանսիական սոցիալիստների կողմից սերտորեն շաղկապվում է պրոլետարիատի բացարձակ աղքատացման և կապիտալի ապակենտրոնացման մասին նրանց հայացքների հետ։ Ժ. Մոկը պնդում է, որ իբր թե տեխնիկական պրոգրեսը սահմանափակում է կապիտալի համակենտրոնացումը և մասսաների թշվառացումը, որով և նախապայմաններ են գոյանում բանվորների սեփականատեր դառնալու համար։ Այս բուրժուական հասկացողությունից էլ բխում է մոկերի այն «գիտական» դրույթը, որ իբր թե կապիտալիզմի արդի փուլում շահագործման տենդենցը նվազումն է, որը բերելու է կապիտալիստների դասակարգի մահացման։ Գիտության հետ և ոչ մի առնչություն չունեցող նման «թեորիաներով» բուրժուազիան փորձում է հիմարացնել բանվորներին։

Բանվորների աշխատավարձի բարձրացումը երբեք չի կարող կործանում սպառնալ կապիտալիզմին։ Հանրային հարստության և կապիտալի կուտակման աճը ավելի ու ավելի է ավելացնում աշխատավորների կյանքի մակարդակի բարձրացման հնարավորությունը։ Բայց կապիտալիզմի զարգացմամբ ավելի ու ավելի է իջնում մասսաների կենսամակարդակը։ Կապիտալիզմի կրախը տեղի կունենա ո՛չ ավտոմատիկորեն, ո՛չ նրա համար, որ կապիտալիստների առաջ կծառանա ամբողջ արտադրության անշահավետության հարցը՝ շահույթի ցածր նորմայի կամ աշխատավարձին հերթական հավելում կատարելու անհնարինության կապակցությամբ։ Պայքարելով բացարձակ ու հարաբերական աղքատացման դեմ, որ բերում է կապիտալի աճը, և մասնակի պահանջ-



ներում հաջողությունների հասնելով, գաղափարապես ու կազմակերպորեն ամ-
րապնդված բանվոր դասակարգը բնակչության մյուս դեմոկրատական խա-
վերի հետ պետք է ռևոլյուցիոն ուղիներով վերջ դնի մոնոպոլիաների իշխա-
նությանը և ստեղծի իր պետությունը, որն ընդունակ լինի կատարելու խկա-
կան սոցիալիստական վերափոխումներ։

***

Աշխատավարձի սոցիալական թեորիայի մյուս փոփոխակն են հանդիսա-
նում պրոֆեսոր Ռ. Մոսսեի դրույթները, որ նա շարադրել է «Աշխատավար-
ձեր» մեծածավալ աշխատության մեջ, որտեղ նա փորձում է աշխատավարձի
սոցիալական թեորիան զուգակցել առավելագույն արտադրողականության
թեորիայի հետ։
Լինելով բացահայտ հակամարքսիստ՝ Ռ. Մոսսեն մարքսիստական ուս-
մունքը ժխտում է անվերապահորեն սկզբից մինչև վերջ, նրա նկատմամբ իր
բացասական վերաբերմունքն արտահայտելով խիստ անդրդվելի կերպով։ Աշ-
խատանքային արժեքի թեորիան նա փոխարինում է առավելագույն օգտակա-
րության թեորիայով։ Դրա համար էլ աշխատանքն ու աշխատավարձը Մոսսեն
նույնպես դիտում է առավելագույն օգտակարության թեորիայի տեսակետից։
Այստեղից Մոսսեն հետևություն է անում, թե իբր կապիտալիստներն աշխա-
տանքը վճարում են ելնելով առավել նվազ արտադրողական, բայց իրենց ան-
հրաժեշտ բանվորի աշխատանքի գնահատականից։ Բանվորի առավելագույն
օգտակարությունը կապիտալիստի համար արտահայտվում է նրա աշխա-
տանքի առավելագույն արտադրողականությամբ։
Աշխատավարձը, գրում է Մոսսեն իր գրքում, եկամուտ է բանվորների
համար և ծախս է ձեռնարկատերերի համար։ Առաջիններն այն համեմատում
են ծախսած ջանքերի և այն պահանջների հետ, որ կարելի է բավարարել նրա
օգնությամբ, իսկ երկրորդներն իրենց ծախսերը համեմատում են արտադրու-
թյան արդյունքների հետ։
Ելնելով այս նախադրյալներից՝ Մոսսեն գտնում է, որ աշխատավարձի
էությունն ավելի խոր ըմբռնելու համար արդի տնտեսական գիտությունը
պետք է զբաղվի հոգեբանական-սոցիոլոգիական վերլուծությամբ և ուսումնա-
սիրի աշխատավորների արհմիությունների ղեկավարների, ինչպես և վարձող-
ների շարժառիթները։ Ըստ Մոսսեի պնդումի, բոլոր ցանկությունների ու հան-
գամանքների հետևանքով մշակվում է մի ինչ-որ միջին բան, որը և աշխա-
տավարձի հիմք է ծառայում որոշ ժամանակաշրջանի համար։ Նրա կարծիքով
աշխատավարձը սոցիալական և տնտեսական քաղաքականության գործ է,
նույնիսկ բացառապես քաղաքականության գործ։ Դրանով իսկ Մոսսեն առա-
վելագույն արտադրողականության թեորիայի վրա հիմնված աշխատավարձի
թեորիայից անցնում է աշխատավարձի սոցիալական թեորիային։ ՍՖԻՕ-ի մյուս
գործիչների նման, նա ևս ազգային եկամուտի բաշխումը դնում է պետության
վրա, գտնելով, որ իր միջամտությամբ նա չի թույլ տա «վտանգավոր կոնֆ-
լիկտներ», կտրիպի «արդարություն պահպանել» և այլն։
Սակայն, քանի որ, այնուամենայնիվ, պատասխան չի տրվում այն հար-
ցին, թե՝ ուրեմն ինչո՞վ պիտի ղեկավարվել աշխատավարձի չափերը որոշելիս,
Մոսսեն հանգում է այն հետևության, որ ընդհանրապես աշխատավարձի ոչ
մի թեորիա չկա, այլ կան միայն զանազան տեսակետներ։

*Իր հիմնավորումով սոցիալական աշխատավարձի թեորիան հասցնելով լիակատար անհեթեթության՝ Մոսսեն, ի դեպ ինչպես և ՍՖԻՕ-ի մյուս ղեկավարները, զարմանում է, որ չի կարողանում պատասխան տալ գլխավոր հարցին. «ինչպե՞ս բարձրացնել աշխատավորների կենսամակարդակը»: «Գիտությունն իր ներկա վիճակում,— ասում է մարքսիզմին թշնամի Մոսսեն,— չի կարող բոլոր դեպքերում սրան լրիվ ու ճշգրիտ պատասխան տալ»:*

*Պետք է ասել, որ Մ. Թորեզի «Նորից աղքատացման մասին» հոդվածում բերված պաշտոնական տվյալների համաձայն Ֆրանսիայում 1956 թվականին ամսական 20 հազար ֆրանկից պակաս (այսինքն ավելի քիչ, քան արհմիությունների որոշած ամսական 28,5 հազ. ֆրանկ աշխատավարձը) ստացած բանվորների ու ծառայողների սակավ ապահովված խավերը կազմել են 14 տոկոս բանվորների համար և 8 տոկոս՝ ծառայողների: 30 հազար ֆրանկից պակաս են ստացել բանվորների 47 տոկոսը և ծառայողների 34 տոկոսը:*

*Բացի դրանից, կան շատ ու շատ գործազուրկներ և 4 միլիոն թոշակառու, որոնց եկամուտը դեռ զգալիորեն ցածր է, քան աշխատողներինը, չհաշված հարյուր հազարավոր ապադասակարգայնացված տարրերը: Համառ պայքարով, ՍՖԻՕ-ի և որոշ արհմիությունների ղեկավարների արգելքին հակառակ, զանազան արհմիութենական կազմակերպությունների գործողությունների միասնության հիման վրա, գործադուլային շարժումը մեծ թափ ընդունեց, ֆրանսիական բանվորներն ու ծառայողները կարողացան կապիտալիստներին և պետությանն ստիպել զգալի զիջումներ անել: Սակայն աշխատավարձի ընդհանուր բարձրացում և աշխատավարձի երաշխավորված մինիմում տեղի չունեցավ:*

*Բանն այն է, որ ՍՖԻՕ-ի ղեկավարները պնդում են, թե աշխատավարձի ընդհանուր բարձրացումն անպայման կհասցնի գների բարձրացման: Ուստի նրանք փաստորեն արգելակում են բանվոր դասակարգի պայքարը և նվազեցնում նրա արդյունավետությունը:*

*ՍՖԻՕ-ի ղեկավարները սոցիալական աշխատավարձի թեորիայի բոլոր տարբերակներն օգտագործում են որպես հիմնական փաստարկ՝ կապիտալիզմի օրոք բանվոր դասակարգի բացարձակ ու հարաբերական աղքատացման մարքսիստական թեորիայի դեմ:*

*Բացարձակ աղքատացման օրենքը ժխտելուց բացի, Ռեմբերը փորձում է նաև այն փոխարինել, այսպես կոչված, «տնտեսապես հնարավոր» աշխատավարձի թեորիայով, այսինքն այնպիսի աշխատավարձ, որը կկարողանար ստանալ բանվորը, եթե չլինեին կապիտալիստները և հավելյալ արժեքի յուրացումը նրանց կողմից: Ռեմբերի տնտեսապես հնարավոր աշխատավարձի թեորիան փաստորեն նպատակ ունի հետաձգել, հետևապես և թուլացնել բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարը կապիտալիստական կարգերի դեմ:*

*ՍՖԻՕ-ի գործիչները լիովին անտեսում են Մարքսի այն հայտնի դրույթը, թե «որքան կապիտալը կուտակվում է, այնքան բանվոր դասակարգի դրությունը պետք է վատանա, ինչքան էլ բարձր կամ ցածր լինի նրա վարձատրությունը»:*

*Դժվար չէ հասկանալ, որ մարքսիզմը ռևիզիայի ենթարկող Ռեմբերն ու նմանները ժխտելով պրոլետարիատի բացարձակ աղքատացման փաստը, որոնք կաշվից դուրս են գալիս ապացուցելու աշխատավորության «բարեկեցության» աճը իմպերիալիզմի «դրախտում», հանդիսանում են կապիտալիզմի հլու ջատագովներ: Եվ հասկանալի է, թե ինչու նրանք թաքցնում են աշխատավորնե-*



*րից, որ Ֆրանսիայում տղամարդ բանվորների ռեալ աշխատավարձը 1955 թվականին 20 տոկոսով ցածր էր քան 1911 թվականին, իսկ 1937 թվականի առնչությամբ՝ ցածր էր 28 տոկոսով: Փարիզի մետաղագործները 1955 թվականին ստացել են 24 տոկոսով պակաս աշխատավարձ, քան 1937 թվականին:*

*Ապարդյուն են ռևիզիոնիստների ջանքերը: Անհերքելի է այն իրողությունը, որ բանվորների այս կամ այն խավի աշխատավարձի մասնակի բարձրացումը միշտ էլ խոշոր չափով ետ է մնում նրա կյանքի վերարտադրության հարաճող ծախքերից: Պրոլետարիատի կենսամակարդակի թանկացումը բնավ չի հատուցվում նրա աշխատավարձի գումարով, որովհետև աշխատուժի գնի անկումը (իր բուն արժեքի առնչությամբ) մնում է պրոլետարիատի բացարձակ աղքատացման աղբյուրը: Եվ պատահական չէ, որ մարքսիզմը ռևիզիայի ենթարկող նորաթուխ տեսաբանները «մոռանում» են այն ճշմարտությունը, որ բանվոր դասակարգի կենսամակարդակը կապիտալի իշխանության օրոք պայմանավորված է ոչ միայն աշխատավարձով, այլև անգործների բանակի մեծությամբ, աշխատանքի ինտենսիվության պայմաններով, կանանց և երեխաների շահագործման մասշտաբով, բնակարանային պայմաններով և այլն: Չէ որ միայն 1949—1955 թթ. Ֆրանսիայում երեքից-չորս անգամ բարձրացել է բնակարանային վարձը: Ֆրանսիական աշխատավորների մոտ 60 տոկոսն իր կենսամակարդակից (25—31 հազար ֆրանկ) նվազ աշխատավարձ է ստանում:*

*Հակառակ Ռեմբերի պնդումների՝ տնտեսագետ Բուվյե Աժամը իր «Ֆրանսիական էկոնոմիկան 20-րդ դարի կեսերին» աշխատության մեջ անհերքելի ապացույցներ է բերում ֆրանսիական աշխատավորների սննդի վատացման մասին, այն էլ «ավելի կարճ ժամանակամիջոցում»՝ 1951 թվականից մինչև 1954 թվականը: Այդ ժամանակամիջոցում 11 տոկոսով կրճատվել է յուղի և 33 տոկոսով ավելացել է մարգարինի գործածությունը: Մսի ու ձկան փոխարեն, 21 տոկոսով սկսել են ավելի շատ գնել պահածոներ, 7 տոկոսով աճել է հացի սպառումը, իսկ մրգի սպառումը նվազել է 10 տոկոսով* («Chaiers du communisme», *№ 11, 1955, p. 1457): Բնակարանային վարձը Ֆրանսիայում 1938 թվականի համեմատությամբ բարձրացել է 320—400 տոկոսով:*

*Բնակարանային ծանր պայմանների բացասական ազդեցությունը աշխատավորների բյուջեի վրա ի վիճակի չեն ժխտելու ՍՖԻՕ-ի գործիչները, և նրանց մամուլն այդ հարցի վերաբերյալ մի շարք «ամոթալի» վիճակագրական տվյալներ է բերում: Բայց մյուս հանգամանքները, որոնք պակաս նշանակություն չունեն բանվոր դասակարգի համար, ինչպիսիք են աշխատանքի ինտենսիֆիկացիան, գործազրկությունը, երիտասարդության ու կանանց աշխատանքի ավելի ցածր վարձատրությունը, որակյալ բանվորների աշխատավարձի իջեցումը, գյուղատնտեսական բանվորների, Հյուսիսային Աֆրիկայից եկած բանվորների ցածր կենսամակարդակը և այլն, ՍՖԻՕ-ի ղեկավարները չեն դիտում որպես ամբողջ բանվոր դասակարգի դրության վատացում:*

*Այնինչ, մինչև այժմ Ֆրանսիայում չտեսնված աշխատանքի ինտենսիֆիկացիան բանվոր դասակարգի շահագործման բարձրացման և նրա կյանքի վատթարացման գլխավոր մեթոդներից մեկն է դարձել: Ֆրանսիական կապիտալիստները ներկայումս լայնորեն կիրառում են աշխատանքի ինտենսիֆիկացման «գիտական մեթոդները», նպատակ ունենալով արտադրողականորեն օգտագործել աշխատանքային ժամերի բոլոր րոպեները և նույնիսկ վայրկյան-*

*ները, վերացնել «մեռյալ ժամանակը», կամ ինչպես անամոթաբար արտահայտվել է մի գործարանատեր, հասնել «հագեցված աշխատանքի»։*

*Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի տվյալների համաձայն 1947—1951 թվականների ընթացքում ֆրանսիական բանվորների աշխատանքի ինտենսիվությունն աճել է միջին հաշվով 25—30 տոկոսով։*

*1955 թվականին աշխատանքի ինտենսիվության էլ ավելի աճման մասին իրենց նամակներում հաղորդում են բանվորները։ Օրինակ, Լեվե և Օբերվելե քիմիական գործարանի բանվորը գրել է, որ նոր մեքենայի գործադրումով իրենց աշխատանքի տեմպը և լարվածությունը խիստ ավելացել է։ Փաթեթման կոնվեյերի վրա րոպեում 64 փաթեթի փոխարեն սկսել է երևան գալ 140 փաթեթ, իսկ ամեն մի մեքենային սպասարկող բանվորների թիվը կրճատվել է երկու անգամ. «րոպեում 140 անգամ (վայրկյանում ավելի քան երկու անգամ) մենք պետք է փաթեթը վերցնենք, նրա հատակին փոքրիկ խավաքարտ դնենք և փաթեթը նորից դնենք կոնվեյերի վրա,— հաղորդում է բանվորը իր նամակում։— Դեֆեկտավոր փաթեթը մենք պետք է ազատենք փոշուց, այն թափենք արկղի մեջ, իսկ փաթեթը առանց մի վայրկյան ժամանակ կորցնելու գցենք մի ուրիշ արկղի մեջ։ Որոշ ժամանակ է, ինչ մենք աշխատում ենք նվագի տակ» («L' Humanité dimanche», 13 juin, 1955)։*

*Ռենոյի գործարանում, որտեղ «Ֆրեգատ» մեքենաների մոտորների համար պտույտներ են պատրաստում, կատարելագործումը բարձրացրել է մեքենայի պտույտների թիվը, աշխատանքի տեմպը բարձրացել է, և այժմ օրական 1200-ի փոխարեն բաց է թողնվում 1440 հատ։ Բանվորների թիվը 23-ից կրճատվել է 18-ի, իսկ կարգավորիչները 6-ից մնացել են 4-ը։ Յուրաքանչյուր հատի համար աշխատավարձը 54 ֆրանկից իջել է 35 ֆրանկի։*

*Աշխատանքի չափազանց լարվածությունը արտադրության մեջ հասցնում է հիվանդությունների, հյուծման ու դժբախտ դեպքերի։*

*Ֆրանսիական արտադրության մեջ հայտնի դարձած դժբախտ դեպքերի ընդհանուր թիվը 1947 թվականից մինչև 1954 թվականը ավելացել է 22 տոկոսով, այդ թվում մահացու կամ հաշմության հասցնող դեպքերը՝ 70 տոկոսով։*

*1955 թվականին դժբախտ դեպքերի թիվը 2 միլիոնից անցել է, ըստ որում աշխատունակությունը լրիվին կորցրել է 108 հազար մարդ։ Դա 1953 թվականի համեմատությամբ 12 և 22 տոկոսով գերազանցում է համապատասխան դեպքերը։ Ապահովագրված յուրաքանչյուր 4 մարդուց 1-ը զոհ է դառնում արտադրության մեջ տեղի ունեցած դժբախտ դեպքին։*

*Պետք է ասել, որ Ֆրանսիայում պաշտոնապես հաշվի են առնվում միայն այնպիսի դժբախտ դեպքերը, որոնք ձեռնարկության մեջ պարապուրդ են առաջացնում առնվազն 24 ժամ։ Դրա համար էլ նրանց թիվն իրականում շատ ավելի մեծ է, քան ցույց է տրված վերը նշված տվյալներում։*

*Ավելացել է աշխատավորների հիվանդությունների թիվը, մանավանդ նյարդանոթային և հոգեկան։ Օրինակ, հենց միայն Ռենոյի գործարաններում 1952 թվականին այդպիսի հիվանդությունների թիվը 290-ից հասել է 421 դեպքի։ Լիովին ֆրանսիական բանվորներին են վերաբերում Կ. Մարքսի այն խոսքերը, թե «մարդը քայքայվում է շատ ավելի մեծ չափով, քան այդ կլիներ նրա աշխատանքի զուտ թվաբանական մեծացումից»։*

*Բանվոր դասակարգի կենսամակարդակն իջնում է նաև այն պատճառով, որ ֆրանսիական բանվորների աշխատավարձը գավառներում զգալիորեն ավելի*



*ցածր է, քան Փարիզում և Սենայի շրջանում։ Այն գումարը, որ բանվոր դա-*
*սակարգը կորցնում է ըստ զոնաների եղած աշխատավարձի տարբերությունից,*
*ֆրանսիական կոմունիստական պարտիայի «Economie et politiqe» ամսագրի*
*հաղորդման համաձայն կազմում է տարեկան մոտ 250 միլիարդ ֆրանկ։*

*Հակառակ ՍՖԻՕ-ի ղեկավարների պնդումների, կանանց աշխատավարձը*
*(չնայած 1936 թվականի հուլիսի 30-ի օրենքը նրանց տղամարդկանց հետ հա-*
*վասար իրավունքներ է տվել), ինչպես և երիտասարդների աշխատավարձը շատ*
*ավելի ցածր մակարդակի վրա է, քան տղամարդ բանվորներինը։*

*Ըստ պաշտոնական տվյալների, Ֆրանսիայում ավելի քան 11 միլիոն բան-*
*վորներից և ծառայողներից 1954 թվականին 3 միլիոն 900 հազարը եղել են*
*կանայք, արդյունաբերական բանվորների՝ 25,3 տոկոսը և ծառայողների 68*
*տոկոսը (նույն տեղը)։ Բանվորուհիների 44,1 տոկոսի աշխատավարձը կազ-*
*մում է տարեկան 250 հազար ֆրանկից էլ պակաս, իսկ 33,7 տոկոսինը՝ 250*
*հազարից մինչև 350 հազար ֆրանկ, այսինքն ամսական 20-ից 30 հազար*
*ֆրանկ։*

*Մինչև 18 տարեկան երիտասարդները հասակավոր բանվորներից մոտ*
*երկու անգամ քիչ են ստանում և չափահաս դառնալուց հետո հաճախ փոխա-*
*րինվում են ուրիշ անչափահասներով և աշխատանքից զրկվում։ Ամենածանր*
*դրության մեջ են գտնվում հյուսիս-աֆրիկյան բանվորները, որոնց թիվը*
*Ֆրանսիայում հասնում է մոտ 350 հազարի։*

*Առանձնապես նվազել է որակյալ բանվորների աշխատավարձը, իջել է*
*որակյալ աշխատանքի արժեքը։ Այս երևույթն անտեսել չեն կարող նաև ՍՖԻՕ-ի*
*ղեկավարները։ Կոլլինեն նշում է, որ ներկա դարի սկզբում մասնագետ բան-*
*վորը 40—50 տոկոսով ավելի էր ստանում, քան սևագործ բանվորը, իսկ ին-*
*ժեները՝ 6 անգամ ավելի։ 1949 թվականին այդ տարբերությունը մասնագետ*
*բանվորի համար սկսել է կազմել 20—25 տոկոս, իսկ ինժեների համար նվազել*
*է կիսով չափ, այսինքն սկսել է սևագործ բանվորի աշխատավարձից գերա-*
*զանցել միայն 3 անգամ։*

*Վերջին տարիներս որակյալ և ոչ որակյալ բանվորների աշխատավարձի*
*տարբերությունը շարունակել է նվազել։*

*Բանվոր դասակարգի դրության մասին պետք է դատել հաշվի առնելով*
*նաև գործազուրկներին, աշխատանքի «ռեզերվային բանակը», որ գոյություն*
*ունի ամեն մի կապիտալիստական երկրում։ Սակայն ՍՖԻՕ-ի ղեկավարները*
*«մոռանում» են Ֆրանսիայում գործազրկության առկայության մասին և տե-*
*սական հարցերի վերաբերյալ իրենց ելույթներում նրա մասին ամենևին չեն*
*հիշատակում։*

*Չնայած վերջին տարիներս (սկսած 1954 թվականից) Ֆրանսիայում ար-*
*դյունաբերական արտադրությունն ընդհանուր առմամբ ավելանում է, եթե*
*հաշվի չառնենք որոշ ճյուղերի կանգառումը (տեքստիլ, կաշվեղենի, պատրաս-*
*տի հագուստի, ածուխի), ինչպես և այն, որ Ալժիրում մղվող պատերազմը*
*ավելի քան կես միլիոն մարդ է զբաղեցնում, այնուամենայնիվ, ներկայումս*
*Կոմունիստական պարտիայի ամսագրի տվյալների համաձայն երկրում մոտ*
*200 հազար գործազուրկ կա։ Ֆրանսիական բանվորների ռեալ աշխատավարձը*
*իջնում է նաև ինֆլյացիայի աճի հետևանքով, որ կատաստրոֆիկ չափով ուժե-*
*ղացավ 1956 և 1957 թվականներին։ Բացի դրանից, աշխատավորներն ստիպ-*
*ված են անուղղակի բարձր հարկեր վճարել։ Հարկերի հիմնական լուծն ընկ-*

նում է բանվորների և ծառայողների ուսերին: Օրինակ, 1953 թվականին նրանք մուծել են հարկերի ամբողջ գումարի 68 տոկոսը: 1957 թվականին հարկերն այնքան աճեցին, որ կազմում էին ազգային եկամուտի մոտ 23 տոկոսը:

ՍՖԻՕ-ի արդի ղեկավարների աշխատավարձի սոցիալական թեորիան մերվել է բուրժուական-ջատագովական զանազան թեորիաներին: Ժ. Մոկը բացահայտորեն իր հիացմունքն է արտահայտում ֆրանսիական բուրժուական գիտնական Ժ. Ֆուրաստյեի տնտեսագիտական աշխատությունների մասին: Իր թեորիաները մատուցելով որպես տեխնիկական պրոգրեսի օբյեկտիվ հետազոտությունների արդյունք, որն իր հետ որպես թե ավտոմատիկ կերպով բերում է տնտեսական ու սոցիալական պրոգրես, Ֆուրաստյեն բազմիցս խնդրում է չկասկածել, թե ինքը գովաբանում է գոյություն ունեցող կարգերը: Բայց իրականում արդյունավետության նրա թեորիան այնքան բացահայտորեն է ծառայում կապիտալիզմի շահերին, որ ջատագովությունը թաքցնելն անհնարին է:

Այս ամենից հետևում է այն, որ ֆրանսիական արդի ռեվիզիոնիստները, որոնք ապարդյուն կռիվ են մղում «հնացած» մարքսիզմի դեմ, ըստ էության հանդես են գալիս իբրև կապիտալիզմի երկրպագուներ, որոնք իրենց «թեորիաներով» միայն օգնում են միջազգային բուրժուազիային երկարաձգելու իր հոգևարքը: Ահա թե ինչու Լենինը նշում էր, որ «մարդիկ միշտ էլ եղել են ու միշտ կմնան քաղաքականության մեջ խաբեության ու ինքնախաբեության հիմար զոհեր, մինչև որ նրանք չսովորեն յուրաքանչյուր բարոյական, կրոնական, քաղաքական, սոցիալական ֆրազների, հայտարարությունների, խոստումների հետևում որոնել այս կամ այն դասակարգի շահերը: Ռեֆորմի ու բարելավումների կողմնակիցները միշտ էլ կհիմարացվեն հնի պաշտպանների կողմից, մինչև չհասկանան, որ ամեն մի հին հիմնարկություն, ինչքան էլ վայրագ ու փտած թվա այն — այս կամ այն իշխող դասակարգերի ուժերով է պահպանվում: Իսկ այդ դասակարգերի դիմադրությունը կոտրելու համար կա միայն մեկ միջոց՝ հենց մեզ շրջապատող հասարակության մեջ գտնել, լուսավորել և կռվի համար կազմակերպել այնպիսի ուժեր, որոնք կարող են — և ըստ իրենց հասարակական դիրքի պետք է կազմեն մի ուժ, որ ընդունակ լինի ավլել-սրբելու հինը և ստեղծելու նորը» (Երկեր, հ. 19, էջ 9—10):

Այսպիսով, աշխատավարձի տեսության շուրջը մղվող պայքարը պրոլետարիատի և բուրժուազիայի միջև մղվող կռվի մի կողմն է, նրա մասնակի դրսևորումը: Ուստի դժվար չէ հասկանալ, թե ինչու մեր օրերում մերժելով ֆրանսիական կոմունիստական պարտիայի բազմիցս արված առաջարկությունները՝ խաղաղության, աշխատավորների տնտեսական ու քաղաքական պահանջների համար մղվող պայքարի հարցերում գործողությունների միասնություն պահպանելու մասին ՍՖԻՕ-ի լիդերները հանդես են գալիս որպես կոմունիզմի կատաղի հակառակորդներ, որպես կապիտալի պաշտպաններ:

Ֆրանսիական աջ սոցիալիստների աշխատավարձի թեորիաները, որոնք բուրժուական զանազան ջատագովական թեորիաների խառնուրդ են հանդիսանում և մշակվել են ՍՖԻՕ-ի լիդերների կողմից ռեֆորմիզմի ոգով, կոչված են ծառայելու կապիտալի գերիշխանության հավերժացմանը: Դրանք ոչ այլ ինչ են, եթե ոչ բանվորներին նորորեն խաբելու և հիմարացնելու բուրժուական գաղափարների փոփոխակներ:

---

# Լ. ՋՈՐՋԸ «ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ» ՄՈՒՆԵՏԻԿԻ ԴԵՐՈՒՄ

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

(Լլոյդ Ջորջի «Ճշմարտություն հաշտության պայմանագրերի մասին» գրքի ռուսական հրատարակության առթիվ) [1]

Առաջին համաշխարհային պատերազմից հետո Անտանտայի իմպերիալիստների կնքած Վերսալյան հաշտության պայմանագիրը Վ. Ի. Լենինը բնութագրել է որպես «գիշատիչների և ավազակների պայմանագիր», որպես «չըլսված կողոպտչական հաշտություն, որը ստրուկների դրության մեջ է դնում տասնյակ-միլիոնավոր մարդկանց, և այդ թվում ամենաքաղաքակրթված մարդկանց» (Երկեր, հ. 31, էջ 402):

Հաշտության պայմանագրերի Վերսալյան սիստեմը, որն ուղղված էր կապիտալիստական աշխարհի նոր վերաբաժանումը ամրապնդելուն և համաշխարհային ռևոլյուցիոն շարժումը խեղդելուն, քիչ փաստաբաններ չունի ի դեմս բուրժուական պատմաբանների, քաղաքական գործիչների ու դիվանագետների:

Վերսալյան պայմանագրերին և 1919—20 թթ. Փարիզի հաշտության կոնֆերանսին նվիրված հարուստ մեմուարային գրականության մեջ առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում վերջերս ռուսերեն լեզվով հրատարակված «Ճշմարտություն հաշտության պայմանագրերի մասին» գիրքը, որը պատկանում է նախկին անգլիական պրեմիեր մինիստր (1916—1922 թթ.) Լլոյդ Ջորջի գրչին և որը առաջին անգամ լույս է տեսել 1938 թվականին: Այս մեմուարներում պարունակվող հարուստ փաստացի և դոկումենտալ նյութերը հետաքրքիր են դարձնում գիրքը մի շարք տեսակետներից, իհարկե, նրա բովանդակության նկատմամբ համապատասխան քննադատական մոտեցման դեպքում: Բուրժուական դիվանագետների ստեղծած մեմուարային գրականության մեջ և մասնավորապես Լլոյդ Ջորջի մեմուարներում երևան է գալիս իսկական պատմության կեղծումը՝ մի կողմից, գլխավորապես հօգուտ կապիտալիզմի, մյուս կողմից՝ հանուն հեղինակի անձնական շահերի, քանի որ նա իր ձեռքով ձևակերպում է իր դեմքը պատմության համար:

Լլոյդ Ջորջը բուրժուական այն գործիչներից է, որ առավել մեծ պատասխանատվություն է կրում Վերսալյան հաշտության համար՝ իմպերիալիստական դիվանագիտության այնպիսի ներկայացուցիչների և քաղաքական դեմագոգիայի վարպետների հետ միասին, ինչպիսիք են նրա վերսալյան պարտնյորները՝ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վուդրո Վիլսոնը և ֆրանսիական պրեմիեր Կլեմանսոն:

[1] Дэвид Ллойд Джордж, „Правда о мирных договорах", т.т. 1, 2, Москва, издательство иностранной литературы, 1957 г.

Չէ՛ որ հենց այդ խումբը և նրանց կրտսեր պարտնյոր իտալական պրեմիեր Օրլանդոն էին կազմում հայտնի «Չորսի խորհուրդը», որն իր ձեռքով և իրենց երկրների բուրժուազիայի պատվերով գլուխ բերեց Վերսալի չարչիական կեղտոտ գործարքը, ոտնահարելով աշխատավորների կենսական շահերը, որոնց արյունով էր ձեռք բերվել դաշնակիցների հաղթանակը:

Անգլիայում քաղաքական ղեկավարության բարձունքները հասնելուց առաջ Դավիդ Լլոյդ Ջորջը զբաղվում էր փաստաբանական պրակտիկայով: Իր մեմուարներում էլ Լլոյդ Ջորջը հանդես է գալիս Վերսալյան հաշտության փաստաբան-պաշտպանի դերում պատմության դատի առաջ:

Ինչպես երևում է հենց մեմուարների վերնագրից, Լլոյդ Ջորջը հանդես է գալիս «ճշմարտության» մունետիկի դերում: Անգլիական բուրժուազիային ծառայելու իր երկարամյա ուղու ընթացքում այս բառը երբեք Լլոյդ Ջորջի շուրթերից չի իջել: Անգլիական պրեմիերի հռետորական ու գրական պրակտիկայում ժողովրդայնություն վայելող և էֆեկտավոր բառերի պակասություն երբեք չի զգացվել, և պետք է խոստովանել, որ նա կարողացել է փայլուն կերպով օգտագործել դրանք հօգուտ այն դասակարգի, որին ծառայում էր:

Լլոյդ Ջորջը մեկն էր անգլիական իմպերիալիզմի այն փայլուն քաղաքական սպասավորներից, որոնք Վ. Ի. Լենինի արտահայտությամբ՝ «ռեկորդ են խփել ոչ միայն կողոպտված գաղութների քանակությամբ, այլև իրենց նողկալի կեղծավորության նրբությամբ» (Երկեր, հ. 28, էջ 60): Լենինը Լլոյդ Ջորջին անվանում էր «կապիտալիստական կառավարության փորձված ու չափազանց շնորհալի ու հմուտ առաջնորդներից» մեկը (Երկեր, հ. 23, էջ 10), «մասսաներին հիմարացնելու մասնագետ» (Երկեր, հ. 18, էջ 246):

Այդպիսին էր Լլոյդ Ջորջը իր քաղաքական պրակտիկայում, այդպիսին էլ հառնում է նա իր մեմուարների էջերից ընթերցողի քննախույզ հայացքի առաջ:

Լլոյդ Ջորջը գրքի հենց սկզբից փորձում է ընթերցողին համոզել, թե ինքը շարադրելու է «հաշտություն կնքելու հասարակ, պարզ ու ճշմարտացի պատմությունը» (հ. I, էջ 25):

Եվ չնայած այդ բազմախոստում հայտարարությանը, Լլոյդ Ջորջի մեմուարներն ամբողջովին տոգորված են քաղաքական երկերեսանիությամբ և կեղծապաշտությամբ: Խոսելով առաջին համաշխարհային պատերազմի մասին Լլոյդ Ջորջը լրջորեն փորձում է ընթերցողին համոզել, թե «հասարակության բոլոր դասակարգերը հավասարապես ներգրավվել էին պայքարի մեջ և բոլորն էլ հավասարապես տառապում էին» (հ. I, էջ 30): Առաջին համաշխարհային պատերազմի միլիոնավոր զոհերը հավատ ընծայելով Լլոյդ Ջորջին պետք է իրենց մխիթարեին նրանով, որ Սիտիի և Ուոլլ-ստրիտի գայլերն էլ են իրենց հետ բաժանել պատերազմի տառապանքները:

Բայց եթե այսպիսի ամեն մի հայտարարության առթիվ բանավեճի մեջ մտնենք Լլոյդ Ջորջի հետ, ապա հարկ կլինի մի նոր գիրք գրելու:

Անդրադառնալով նրա մեմուարների ընդհանուր դրույթներին՝ մենք հարևանցիորեն կանգ կառնենք դրանցից մեկի վրա միայն, որն ուղղակիորեն առնչվում է մեզ հետաքրքրող հարցի հետ: Մենք նկատի ունենք ստրկացված և ճնշված ժողովուրդների բախտը:

Լլոյդ Ջորջն ուզում է համոզել, թե առաջին համաշխարհային պատերազմի հենց սկզբից դաշնակիցները հանդես եկան «ի պաշտպանություն» փոքր



ազգերի, թե դաշնակիցների քաղաքականության մեջ տիրապետում էր «ինքնորոշման գաղափարը», որ «ճնշված ժողովուրդների ազատագրումը» նրանց գլխավոր խնդիրն էր: Հասկանալի է, որ Լլոյդ Ջորջը ոչ մի տեղ ցույց չի տալիս, թե ինչու իմպերիալիստական բուրժուազիան վարելով գաղութացման հին քաղաքականությունը, ճգնում էր այն քողարկել բոլորովին նոր ֆրազա-լոգիայով:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, ազգային քաղաքականության նրա սկզբունքները հռչակելուց հետո պարզապես հնարավոր չէր շարունակել գաղութային կողոպուտը Վիկտորիա թագուհու ժամանակների մեթոդներով: Լլոյդ Ջորջը կապիտալիստական աշխարհի այն գործիչն էր, որն առաջիններից մեկը հասկացավ այդ: Մանդատների խորամանկ սիստեմը, որ հնարել էին նա և իր կոլեգաները, մի փորձ էր սքողելու իմպերիալիզմի գաղութային քաղաքականության իսկական էությունը: Ինքնորոշման մասին արված խոսակցությունները միևնույն նպատակն էին հետապնդում:

Իր մեմուարներում Լլոյդ Ջորջը հավատարիմ է մնում իր ճառերի կեղծավոր ոգուն: Բանն այնտեղ է հասնում, որ ամբողջ գրքի ընթացքում նա փորձում է անցկացնել այն գաղափարը, թե գաղութները «բեռ» էին մեծ տերությունների վզին, թե միայն մարդասիրության և մարդկության առջև ունեցած պարտքի նկատառումներով էր, որ նրանք համաձայնվեցին իրենց վրա վերցնել այդ «բեռը»: Միամիտ ընթերցողի աչքերը կարող են արցունքով լցվել այն «սև ապերախտությունից», որով պատասխանեցին գաղութային ժողովուրդները տերությունների այդ «հայրական հոգատարությանը»:

Հումորի զգացումն ընդհանրապես հատուկ է Լլոյդ Ջորջին, բայց այսպիսի դեպքերում կեղծապաշտությունը դուրս է մղում այն: Ակամայից ժպտում ես, կարդալով, օրինակ, հետևյալ տողերը. «Իսկ Իտալիային ոչ ոք չէր խնդրում իր վրա վերցնել այդ բեռը, և նրա ազգային հպարտությունը վիրավորված էր» (հ. II, էջ 100):

Ըստ Լլոյդ Ջորջի ստացվում է, որ Վերսալյան կոնֆերանսում ազնվաբարոյության մրցություն էր տեղի ունենում, և իտալական իմպերիալիստների լավագույն զգացմունքները վիրավորվել էին, որովհետև նա «բեռ» չէր ստացել ի շահս մարդկության:

Սակայն Լլոյդ Ջորջը չի ցանկանում պատասխան տալ մի հարցի, որը լույս է սփռում այդ գործի վրա: Ինչո՞ւ նա, նրա կոլեգաներն ու նրանց հաջորդները զենքը ձեռքներին փորձում էին և փորձում են պահել այն «բեռը», որը պատմության ձեռքն աստիճանաբար վերցնում է նրանց վրայից:

***

Իր մեմուարներում շոշափած բազմաթիվ հարցերի շարքում Լլոյդ Ջորջը տեղ է հատկացնում նաև «Հայկական հարցին», հավակնություն ունենալով տալ նրա ճշմարիտ պատմագրությունը: Քննենք հենց այս օրինակով նրա մեմուարների «ճշմարտության» աստիճանը:

Հասկանալի է, որ մենք մեր առջև նպատակ չենք դնում այս հոդվածով ամբողջապես լուսաբանել արևմտյան իմպերիալիզմի գաղութային արյունոտ քաղաքականությունը Հայաստանում 1918—1920 թվականներին և ոչ էլ նույնիսկ «Հայկական հարցի» բոլոր ասպեկտները Փարիզի հաշտության կոնֆերանսում: Ներկա հոդվածի թեման Լլոյդ Ջորջի գիրքն է:

*Եվ այնուամենայնիվ ստիպված ենք դուրս գալ հեղինակի շոշափած դեպքերի ու փաստերի շրջանակներից, որովհետև տվյալ դեպքում ճշմարտությունը գրքի սահմաններից դուրս է գտնվում։*

*«Հայկական հարցի» պատմությունը լուսաբանելիս էլ Լլոյդ Ջորջը հավատարիմ է մնում իր մեմուարների ընդհանուր ոգուն։ Նա պատրաստ է «արցունք թափել» հայ ժողովրդի կրած տառապանքների համար, հայերի նկատմամբ ունեցած «համակրանքը» և նրանց ճնշողների հասցեին ուղղված «ազնիվ ցասումը», «բարի պոռթկումներն» ու «լավագույն մղումները» Լլոյդ Ջորջը փորձված ձեռքով շաղ է տվել գրքի էջերում։ Եվ հենց դրանց մեջ էլ կորչում է իսկական ճշմարտությունը, որ խոստացվել է ընթերցողին դեռ գրքի խորագրում։*

*Անդրադառնալով անցյալին Լլոյդ Ջորջը երբեմն իսկապես արժեքավոր խոստովանություններ է անում, նույնիսկ երբ խոսքը վերաբերում է Անգլիայի քաղաքականությանը «Հայկական հարցում»։ Նա փորձում է անհանգստացնել իր նախորդների ստվերները, բայց այդ արվում է միայն մի նպատակով՝ ընդգծել Վերսալյան պայմանագրերի «վեհությունը»։ Եվ, չնայած այս վերապահումին, նրա խոստովանություններից մեկը մենք համարում ենք շատ արժեքավոր։ Խոսքը վերաբերում է Սան-Ստեֆանոյի հաշտությանը և 1878 թվականի Բեռլինի տրակտատին ու դրանց հաջորդող այն անցքերին, որ տեղի ունեցան Թուրքահայաստանում։ Լլոյդ Ջորջը գրում է.*

*«Եթե չլիներ մեր չարաբաստիկ միջամտությունը, հայերի մեծամասնությունը դեռ 1878 թվականի Սան-Ստեֆանոյի պայմանգրով կանցներ ռուսական դրոշի պաշտպանության տակ... Այդ որոշումը փոխվեց 1878 թվականի Բեռլինի տրակտատով, որն ամբողջությամբ մեր սպառնալից ճնշման արդյունք էր... Բրիտանական կառավարության քաղաքականությունը ճակատագրական անխուսափելիությամբ հասցրեց 1895—1897 և 1909 թվականների զարհուրելի սպանդներին և 1915 թվականի ամենասարսափելի կոտորածին...» (հ. II, էջ 390)։*

*Այս խոստովանության և նախնիներին կշտամբելու նպատակը պարզվում է մի տող ցած։ Խոսելով Վերսալյան կոնֆերանսի մասին՝ Լլոյդ Ջորջը գրում է. «Մենք հասկացանք, որ մեր առաջ, վերջապես, հնարավորություն է բացվում քավելու մեր ծանր մեղքը» (հ. II, էջ 390)։*

*Հակառակ Լլոյդ Ջորջի պնդումների, քննենք հայ ժողովրդի նկատմամբ արևմտյան տերությունների վերաբերմունքի իսկական պատմությունը այդ տարիներին և տեսնենք թե ինչ պատկեր ունի իրականում «մեղքերի քավումը»։*

*Հենց սկզբից պետք է նշել, որ «Հայկական հարցի» ուսումնասիրությունը՝ կտրված իրադարձությունների ընդհանուր ընթացքից, ոչ մի կերպ չի կարող լույս սփռել իրերի իսկական վիճակի վրա։ Դաշնակիցների քաղաքականության մեջ «Հայկական հարցը» սերտորեն կապվում և միահյուսվում էր տերությունների ընդհանուր գաղութային շահերի հետ, իսկ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո այդ հարցն անմիջականորեն ենթարկվեց «Ռուսական հարցի» լուծմանը, Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու, ինչպես նաև Ռուսաստանի ծայրամասերում ռևոլյուցիոն շարժումները ճնշելու գաղափարին։*

*Երևույթների այս ներքին կապը, նրանց փոխադարձ պայմանավորվածությունը Լլոյդ Ջորջը քողարկում է խնամքով և ոչ առանց միտումի։ «Ռուսա-*



*կան հարցը» քննարկելով մեկ գլխում, «Հայկական հարցը» մի այլ գլխում՝*
*նա ոչ միայն կառուցվածքով, այլև ըստ էության խզում է երևույթների կապն*
*ու փոխադարձ պայմանավորվածությունը, խնամքով թաքցնում է այն բա-*
*նալին, որ կարող է բաց անել վերսալյան դիվանագիտական մախինացիա-*
*ների հնարամիտ տուփիկը։*

*Անհրաժեշտ է, սակայն, վերականգնել երևույթների այդ վարպետորեն*
*խախտված կապը՝ ի շահս իսկական ճշմարտության, դուրս քաշելով ջուրը*
*նետված ծայրերը։*

*Լլոյդ Ջորջը պնդում է, թե պատերազմի հենց սկզբից փոքր ժողովուրդ-*
*ների «շահերի պաշտպանությունը» դաշնակիցների հիմնական նպատակնե-*
*րից մեկն է եղել։ Բայց ի՞նչ պատկեր ունի փոքր ժողովուրդների շահերի այդ*
*պաշտպանությունը մասնավորապես հայ ժողովրդի օրինակով։*

*Իսկական պատմությունն այն է, որ մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան*
*դաշնակիցները չէին էլ խոսում Հայաստանի «անկախության» մասին։ Ան-*
*տանտայի ծրագրային փաստաթղթերից մեկը, Ասիական Թուրքիայի բաժան-*
*ման մասին Սայքս Պիկոյի գաղտնի պայմանագիրը, որ 1916 թվականին*
*կնքվել էր Անգլիայի ու Ֆրանսիայի միջև, նախատեսում էր, որ պատերազմից*
*հետո Հայաստանի հյուսիսային մասն անցնում է ռուսական վերահսկողու-*
*թյան տակ, իսկ հարավայինը՝ Ֆրանսիական։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակը, Ռուսաստանի բոլոր ժողո-*
*վուրդների պայքարը ռևոլյուցիոն Սովետական Ռուսաստանի օգնությամբ*
*իրենց իսկական ազատագրությանը հասնելու համար, Անտանտայի դիվանա-*
*գետներին ստիպեց փոխել իրենց ճառերի բնույթը անցյալում ճնշված Ռու-*
*սաստանի ժողովուրդների մասին, այդ ենթարկելով նոր հանգամանքներին։*

*Ռուսաստանի ազգային փոքրամասնությունների հարցը միանգամից*
*ստորադասվեց դաշնակիցների գլխավոր խնդրին՝ Սովետական Ռուսաստանի*
*դեմ պայքարելու, Ռուսաստանի մասնատման և նրա ծայրամասերը որպես*
*պլացդարմներ օգտագործելու նպատակին։ Բայց դաշնակիցները չէին շտա-*
*պում խոսել Ռուսաստանի ծայրամասերում «անկախ պետություններ» ստեղ-*
*ծելու մասին, որովհետև դեռ հույս ունեին, որ Սովետական Ռուսաստանը*
*կխեղդեն ինտերվենցիայի ճամլակների մեջ։ Նրանք իրադարձությունների*
*վախճանին էին սպասում։*

*Սակայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթական ընթացքը Անտանտայի*
*իմպերիալիստներին ավելի ու ավելի դժվարին դրության մեջ էր դնում և*
*դրան համապատասխան աճում էր նրանց «հոգատարությունը» նախկին ցա-*
*րական Ռուսաստանի ծայրամասերի նկատմամբ, աճում էր նրանց ձգտումը՝*
*այդ ծայրամասերի բուրժուական հակառևոլյուցիոն ուժերը Սովետական Ռու-*
*սաստանի դեմ մղվող պայքարում օգտագործելու, ինտերվենցիա իրականաց-*
*նելու, Ռուսաստանը մասնատելու և ծայրամասերում աճող ռևոլյուցիոն շար-*
*ժումները ճնշելու ուղղությամբ, չխոսելով արդեն այն մասին, որ դա նոր ու*
*հարուստ գաղութներ ստանալու հրապուրիչ հեռանկարներ էր բացում նրանց*
*առաջ։*

*Հասկանալի է, որ ինչպես սազական է Լլոյդ Ջորջին և իր կոլեգաներին,*
*այդ գաղափարը պետք էր իրականացնել՝ քողարկելով այն ամպագորգոռ*
*ֆրազներով ու «բարձր իդեալներով»։ Եվ այդպիսի «իդեալներից» մեկը դար-*
*ձավ «Հայաստանի պաշտպանությունը»։*

«Ամայացված ու անհաբեկված Հայաստանը,— գրում է Լլոյդ Ջորջը,— չէր կարող ինքը դիմանալ մի կողմից Թուրքերի դեմ, մյուս կողմից՝ բոլշևիկների։ Ուստի հարկավոր էր գտնել մի մանդատատու տերություն, որն իր վրա վերցներ Հայաստանի լեռներում ապրող ավերված, քրիստոնյա համայնքի պաշտպանության բարձր պարտականությունը» (հատ. II, էջ 389)։

Քրիստոնեական բարձր պարտքի մասին ասված խոսքերը հազիվ թե կարողանան շփոթության մեջ գցել ընթերցողին։ Քրիստոսի անունը շատ անգամ է լսվել Վերսալյան կոնֆերանսում, մանավանդ պրեզիդենտ Վիլսոնի շուրթերից։ Տվյալ դեպքում Հայաստանի նկատմամբ դաշնակիցների ցուցաբերած հետաքրքրության գաղտնիքը շատ պարզ է. դա բոլշևիկների դեմ, Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու անզուսպ ցանկությունն էր։

Իսկ ինչ վերաբերում է Թուրքական բռնակալությունից «հայերի պաշտպանությանը», ապա հայտնի է, որ արևմտյան տերությունների կողմից «Հայկական հարցը» սպեկուլյացիայի առարկա դարձնելը ոչ մի ընդհանուր բան չի ունեցել Թուրքական սարկացնողների դեմ հայ ժողովրդի մղած արդարացի պայքարի հետ և օգտագործվել է սոսկ որպես մանր դրամ Թուրքիայի շուրջն սկսված մեծ խաղի մեջ։

«Հայկական հարցը» դաշնակիցների աչքում գլխավորապես և հիմնականում հանդիսանալով «Ռուսական հարցի» անբաժանելի մասը, միաժամանակ նրանց համար «Թուրքական հարցի» մի մասն էր, և նրա լուծումը նույնպես դետերմինացված էր տերությունների շահերի բարդ միահյուսումով ու բախումներով՝ Թուրքիայի շուրջը։ Պատահական չէ, որ Լլոյդ Ջորջը այդքան տեղ է հատկացնում իր մեմուարներում Թուրքական խնդրին և Մերձավոր Արևելքին՝ բրիտանական իմպերիալիզմի գաղութային շահերի այդ կարևորագույն հանգույցին։

Լլոյդ Ջորջն ու իր կոլեգաները, իհարկե, ճգնում են մեզ համոզել, թե հայ ժողովրդի շահերը և ճնշված ժողովուրդների ազատագրումն իրենց համար առաջին պլանի վրա էին գտնվում։ Կոնֆերանսում լորդ Քերզոնն անգամ հավատացնում էր իր կոլեգաներին, թե «Հայաստանի բնակչությունը խնդրում է, որ իր շահերի պաշտպանությունն իրենց վրա վերցնեն Ֆրանսիան կամ Ամերիկան» (հատ. II, էջ 111)։

Որտե՞ղ և երբ է հայ ժողովուրդը լորդ Քերզոնին լիազորել այդպիսի հայտարարություն անելու։ Հայ ժողովրդի ո՞ր հանրաքվեն, ռեֆերենդումը կամ կամքի այլ արտահայտությունը նկատի ունի նա։ Ի՞նչ փաստեր կամ փաստաթղթեր կարող է ներկայացնել նա այդ մասին պատմության դատին։ Սա մնում է Քերզոնի և Լլոյդ Ջորջի գաղտնիքը։ Բայց այսպիսի բաները սովորաբար չեն շփոթում ոչ Լլոյդ Ջորջին, ոչ էլ նրա կոլեգաներին։ Այնինչ մենք կարող ենք բերել բազմաթիվ փաստաթղթեր, որոնք վկայում են Անտանտայի իմպերիալիստների նկատմամբ հայ ժողովրդի իսկական վերաբերմունքի մասին; այն մասին, որ հայ ժողովուրդը տեսնում էր իր իսկական պաշտպանին և ազատագրողին, հանձինս Սովետական ռևոլյուցիոն Ռուսաստանի։ ՌԿ(բ)Պ Կովկասյան երկրային կոմիտեն 1920 թվականի հունվարի 20-ի կոչում արտահայտելով Կովկասի ժողովուրդների կամքը գրում էր. «Վրացական, ադրբեջանական և հայկական բանվորներն ու գյուղացիները պարոնայք Ժորդանիային, Ռամիշվիլու, խանխոյսկիների և խատիսովների օգտին չեն կռվի ռուս բանվորների և գյուղացիների դեմ, որոնք գալիս են ազատագրելու մեզ ար-



յունարբու հասկեններից, ուորդրոպներից և սանրված ու ցիլինդրավոր այլ
ավազակներից...
Մենք կտապալենք ձեզ՝ մեզ սարկացնողներին, մենք կվռնդենք մեր եր-
կրներից արևմտաեվրոպական իմպերիալիստներին, որոնք թալանեցին և
բռնաբարեցին մեր հարուստ երկիրը»։
Իր մեմուարներում ծանրության կենտրոնը փոխադրելով Վերսալում հար-
ցի «քննարկման» պատմության վրա՝ Լլոյդ Ջորջը շատ քիչ ուշադրություն է
հատկացնում մյուս հարցերին, որոնք լույս են սփռում այդ ժամանակաշըր-
ջանի պատմության վրա, մասնավորապես Անդրկովկասում կատարված ին-
տերվենցիայի վրա։ Դրա հետ միասին, ինչպես և պետք էր սպասել, նա չի
բացում մի շարք փակագծեր, հետաքրքրական «նրբություններն ու նյուանս-
ներն» այն քաղաքականության, որ վարում էին արևմտյան տերությունները
Անդրկովկասի և Հայաստանի նկատմամբ։
Վարելով ակներև ինտերվենցիայի քաղաքականություն՝ դաշնակից տե-
րությունները, որոնք սերտորեն կապված էին ռուսական հակառևոլյուցիայի
հետ, անդրկովկասյան ռեսպուբլիկաների և մասնավորապես Հայաստանի
«անկախության» հարցում բավական բարդ ու հակասական վիճակի մեջ էին
գտնվում։ Կապված լինելով Կոլչակի ու Դենիկինի հետ և 1919 թվականին
Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու հարցում գլխավոր հույսը նրանց
վրա դրած լինելով՝ նրանք չէին ցանկանում աղմուկ բարձրացնել անդրկով-
կասյան ռեսպուբլիկաների «անկախության» մասին, որպեսզի իրենց հարա-
բերությունները չփչացնեն ցարական գեներալների հետ, որոնք պայքար էին
մղում ռուսաստանյան կայսրության վերականգնման համար։ Որոշ չափով
հենց սրանով էլ բացատրվում է «անդրկովկասյան ռեսպուբլիկաների ճանաչ-
ման» ձգձգումը։ Բայց դրա հետ միասին նրանք պատրաստում էին Ռուսաս-
տանի մասնատումը, եթե ռուսական հակառևոլյուցիան պարտություն կրեր։
«Մանդատների» խորամանկ դիմակի տակ նրանք նախապատրաստում էին
Ռուսաստանի ծայրամասերի գաղութացումը։
1919 թվականի մարտ և մայիս ամիսներին «Ջորսի խորհուրդը» երկու
անգամ անդրադարձավ Հայաստանի մանդատի հարցին, որ առաջարկվել էր
Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Ըստ որում այստեղ արդեն երևան եկավ
Թուրքական ու հայկական հարցերի ներքին կապը և պարզ դարձավ, որ Վիլ-
սոնին Հայաստանի բախտը չի հետաքրքրում, որ նա ունի գաղութային ավելի
մեծ ախորժակ։ Վիլսոնը կոնֆերանսում հայտարարեց, թե «որոշ ազդեցիկ
Թուրքեր ցանկալի են համարում, որ ամբողջ Թուրքիան լինի մեկ միասնական
մանդատի տակ» (Б. Я. Штейн «Русский вопрос» на Парижской мирной
конференции», 1949 г., стр. 318).
Բնորոշ է, որ դեռ 1919 թվականին ԱՄՆ-ը խաղ էին սկսել նաև քեմալա-
կանների հետ, որի մասին վկայում է թեկուզ հենց գեներալ Հարբորդի մի-
սիան։ Այսպիսով, Վիլսոնը բազմակողմանի ու խորամանկ խաղ էր խաղում
Թուրքիայի հետ։ Այլ բան է, որ դաշնակիցները չհամաձայնեցին ԱՄՆ-ին
այդպիսի բաժին հանել և Վիլսոնը ստիպված եղավ ընդունել միայն Կոստան-
դնուպոլսի, նեղուցների ու Հայաստանի մանդատը։ Բայց ակներև է մի բան,
որ եթե Վիլսոնին հաջողվեր ստանձնել ամբողջ Թուրքիայի «միասնական
մանդատը», Հայաստանի «անկախությունը» այնքան էլ չէր հետաքրքրի նրան։

Սկսած 1919 թվականի վերջից և 1920 թվականի սկզբից Հայաստանի և Անդրկովկասի «անկախության» նկատմամբ տերությունների հետաքրքրությունը հասկանալի պատճառներով ավելի աճեց։ Դեռ 1920 թվականի հունվարին բրիտանական դելեգացիան սկսեց մեմորանդում մշակել «անդրկովկասյան ռեսպուբլիկաներին օգնելու» մասին։ Դա կապված էր նրա հետ, որ Սովետական իշխանությունը հաղթականորեն շարժվում էր դեպի հարավ, Անդրկովկասում աճում էր ռևոլյուցիոն շարժումը, որն սպառնում էր տապալել Անտանտայի դրածոների՝ Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական հակառևոլյուցիոն պարտիաների արյունոտ տիրապետությունը։

Հասկանալի է, որ Լլոյդ Ջորջն աշխատում է այս ամենն ըստ հնարավորին լռությամբ մատնել, կեղծավորաբար ընտրելով համապատասխան ճառեր ու փաստաթղթեր, ջանալով նույնիսկ ապացուցել, թե ինքն ընդհանրապես կողմնակից չի եղել Ռուսաստանում ինտերվենցիա կազմակերպելուն։

Բայց, իհարկե, հարցը Լլոյդ Ջորջի գրքով չի սպառվում։ Կան նաև ուրիշ փաստաթղթեր, որոնք չեն կարող վրիպել պատմության ամենատես աչքից։ Բերենք դրանցից մեկը, որ վերաբերում է անմիջականորեն Լլոյդ Ջորջին, բայց որը նա «համեստորեն» մոռացության է տվել։ Անգլիական համայնքների պալատում արտասանած իր ճառերից մեկում Լլոյդ Ջորջն ասել է. «Դենիկինի և Կոլչակի պարտության դեպքում դաշնակիցների ձեռքում մնում է վերջին զենքը՝ ճանաչել ռուսաստանյան ռեսպուբլիկաների անկախությունը՝ բոլշևիզմի դեմ պայքարելու գործում նրանց միավորելու համար»[1]։ Այս է Լլոյդ Ջորջի ու նրա կոլեգաների «քրիստոնեական բարեգթության» գլխավոր ապացույցը։

Ահա թե ինչու 1920 թվականի գարնանը կոնֆերանսում արագացվեց «Հայկական հարցի» քննարկումը։

«Այժմ,— ասում էր լորդ Քերզոնը,— լուրջ փաստարկներ կան հօգուտ Հայաստանի ճանաչման։ Ներկայիս հայկական պետությունը՝ Երևան մայրաքաղաքով, հին ռուսական կայսրության մի մասն էր, այնպես, ինչպես և Վրաստանն ու Ադրբեջանը։ Բացի դրանից, Հայկական պետությունը պատրաստ է միանալու Անդրկովկասյան ռեսպուբլիկաների ընդհանուր պաշտպանությանը բոլշևիզմի դեմ։ Ելնելով սրանից Քերզոնը կարծում է, որ ճիշտ ու խելացի կլիներ Հայաստանին ճանաչում տալ՝ մի պայմանով, որ դա չի կանխորոշում Հայաստանի վերջնական սահմանները, որոնք պետք է որոշվեն Թուրքիայի հետ կնքվելիք հաշտության պայմանագրով» (Բ. Շտեյն, նույն տեղը, էջ 455)։

Այսպիսով, երբ խոսքը վերաբերում էր Ռուսահայաստանին և դաշնակ ավանտյուրիստների միջոցով նրան Սովետական Ռուսաստանի դեմ պայքարի մեջ քաշելուն, ապա դաշնակիցներն առատաձեռնությամբ «անկախություն» էին առաջարկում, առկա թողնելով Թուրքահայաստանի հարցը, որ տվյալ դեպքում Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու ծրագրի մեջ նրանց համար հետաքրքրություն չէր ներկայացնում։

Թուրքիայի շուրջը արևմտյան տերությունների սկսած պայքարն ու հա-

[1] Հայկական ՍՍՌ Կենտրոնական պետական արխիվ, ֆոնդ № 200, գործ 528ա, թերթ 150 (մեջբերումն արված է ըստ Գ. Բ. Ղարիբջանյանի «Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները Սովետական իշխանության համար մղված պայքարում» գրքի, Հայպետհրատ, 1957 թ., էջ 219)։



կասությունները ցույց տվին, որ նրանք ամենից ավելի քիչ էին շահագրգռված
Թուրքահայաստանի հարցի լուծման մեջ։
Թուրքիայում անգլո-ֆրանսիական հակասությունները բերեցին այն բա-
նին, որ Ֆրանսիան սկսեց մերձենալ քեմալականների հետ, մանավանդ, որ
նա հանդիպեց վերջիններիս համառ դիմադրությանը և չէր ուզում կորցնել
Թուրքիայում ունեցած իր հսկայական ներդրումները։ Լլոյդ Ջորջն ուղղակի
գրում է. «Ֆրանսիան Անկարայում Մուստաֆա Քեմալի հետ բանակցություն-
ներ սկսեց, որոնք երկու կողմն էլ վարում էին իրենց ռիսկով, մյուսներից
գաղտնի։ Դաշնակիցներին նույնիսկ տեղյակ չէին պահել այդ մասին» (հ. II,
էջ 466)։
Ֆրանսիական դիվանագիտության այդ խաղը, ինչպես հայտնի է, հայ
ժողովրդի տասնյակ հազարավոր նոր զոհերի պատճառ դարձավ Կիլիկիա-
յում տեղի ունեցած կոտորածի հետևանքով, որ կատարվեց ֆրանսիական
զորքերի հեռանալուց հետո։ Լլոյդ Ջորջը «վրդովվում» է այն առթիվ, որ
ֆրանսիացիները չկարողացան «պաշտպանել հայերին»։ Վատ թաքցված չա-
րը թյունը ֆրանսիական պարտնյորների հասցեին, որոնց ճնշման տակ անգ-
լիացիներնստիպված եղան հեռանալ նախկին Թուրքական կայսրության մի
քանի շրջաններից, Ֆրանսիայի հասցեին ուղղված խայթոցների գլխավոր
պատճառն է։ Նա գրում է. «Միլյերանը Կլեմանսոյից վատ չգիտեր հույների
ու հայերի պահանջները։ Բայց ֆրանսիական կառավարությունն այլևս չէր
հետաքրքրվում ճնշված ժողովուրդների ազատագրումով» (հ. II, էջ 403)։
Այս խոստովանությունն արժեքավոր կլիներ, եթե լիներ անշահախնդիր։
Բայց թող ընթերցողը չխաբվի։ Չէ՞ որ և այն ժամանակ՝ կոնֆերանսում և
հետո՝ պատմության առաջ, Լլոյդ Ջորջը կեղծավորություն է անում։ Նրան
անհանգստացնում էր ֆրանսիական իմպերիալիստների ձգտումը՝ ամրանալ
Թուրքիայում ի վնաս Անգլիայի շահերի։ Բայց ինչո՞ւ դրա մասին պարզ
խոսել, երբ կարելի է կեղծ դիրք բռնել և «լացել» «հայերի բախտը»։ Չէ՞ որ
դա ավելի ազդեցիկ է, թեկուզ և ճշմարիտ չէ։
Եվ մի՞թե նույն ձևով չի հաշիվ տեսնում Լլոյդ Ջորջն իր իտալական
պարտնյորների հետ։ Մի՞թե նա որևէ տեղ ասում է, որ Անգլիան ձգտում էր
«Մեծ Հունաստան» ստեղծել միայն նրա համար, որպեսզի հավասարակշռու-
թյուն պահպանի Միջերկրական ծովում և Իտալիային թույլ չտա ամրապն-
դելու իր ծովային դիրքերը։ Ինչո՞ւ հարցն այդպես դնել, երբ կարելի է այդ
նույն գաղափարն անցկացնել «բազմաչարչար հույն ժողովրդի» իրավունք-
ների համար պայքարելու ձևով։
Իսկ ինչ վերաբերում է Իտալիային, ապա նա իսկապես Թուրքահայաս-
տանի հարցով ամենից ավելի քիչ էր հետաքրքրվում, երբ համոզվեց, որ
ավելի ուժեղ պարտնյորներն իրեն ոչինչ չեն տա Թուրքիայում։ Եվ նա նույն-
պես քեմալականների հետ համաձայնության գալու ուղին բռնեց։
Բայց և այնպես ինչպիսի՞ն էր անգլիական իմպերիալիզմի և նրա ներ-
կայացուցիչ Լլոյդ Ջորջի դիրքը Թուրքահայաստանի հարցում։ Այս հարցի
վերաբերյալ իր կարծիքը Լլոյդ Ջորջը աներկիմաստ արտահայտել է 1920
թվականի ապրիլին Սան-Ռեմոյի կոնֆերանսում. «Ես չեմ կարող ինձ վրա
պատասխանատվություն վերցնել,— ասում էր նա,— և համաձայնել մեծ Հա-
յաստան ստեղծելուն... Անձամբ ես կարծում եմ, որ մեծ Հայաստան ստեղ-
ծելը անցանկալի տրամադրությունների ծնունդ կտա մուսուլմանների մեջ,

Հնդկաստանում և ամբողջ աշխարհում» (հ. II, էջ 418): Այսպիսով պարզ է դառնում, որ ոչ Ֆրանսիան, ոչ Իտալիան և ոչ էլ Անգլիան ոչ մի լուրջ մտադրություն չունեին լուծելու Թուրքահայաստանի հետ կապված հարցերը:

Ստեղծված դրության և տերությունների շահերի խճճման հետևանքով Հայաստանի մանդատը շարունակաբար առաջարկվում էր Ամերիկայի Միացյալ Նահանգներին: Անգլիան ու Ֆրանսիան վախենալով մեկը մյուսի ուժեղացումից Մերձավոր Արևելքում, տվյալ դեպքում ի դեմս ԱՄՆ-ի տեսնում էին մի երրորդ ուժ, մանավանդ Անգլիան, որին ձեռնտու էր ներգրավել ԱՄՆ-ը քեմալական շարժման դեմ մղվող պայքարի մեջ, որպես հակակշիռ Ֆրանսիային և Իտալիային, մյուս կողմից դա լրացուցիչ կերպով կնպաստեր Միացյալ Նահանգների հետագա ներգրավմանը Սովետական Ռուսաստանի դեմ պայքարելու գործում:

Այս առիթով Լլոյդ Ջորջը գրում է. «Երբ մեծ տերությունների պատվիրակները կոնֆերանսի ժողովվելով քննարկում էին բոլոր դժվարությունները, նրանց համար պարզ դարձավ, որ միայն Ամերիկան կարող է լինել բոլորի համար ընդունելի մանդատառու երկիրը» (նույն տեղը, էջ 392):

Հայտնի է, որ Ամերիկայի Միացյալ Նահանգների սենատը հավանություն չտվեց ոչ միայն Հայաստանի մանդատը վերցնելու գաղափարին, այլև ամբողջ Վերսալյան սիստեմին, ընդհուպ մինչև «Վիլսոնի զավակ» Ազգերի լիգան: Բանը, իհարկե, այն չէր, որ ԱՄՆ-ը չէին ցանկանա ի դեմս Հայաստանի մի ավելորդ պատառ ստանալ, այլ այն, որ նրանց չէր գոհացնում ամբողջ վերսալյան սիստեմը, և նրանք մի շարք լուրջ պատճառներ ունեին մանդատներից հրաժարվելու համար: ՌԿ(բ)Պ Մոսկովյան կազմակերպության ակտիվի ժողովում 1920 թ. դեկտեմբերի 6-ին Վ. Ի. Լենինն ասում էր.

«Անգլիան առաջարկում էր Ամերիկային կողոպտված գաղութներից մեկի մանդատը — այսպիսի լեզվով են արտահայտվում ներկայումս,— բայց նա չվերցրեց: Ըստ երևույթին ամերիկյան վաճառականները դատում են ինչ-որ ուրիշ կերպ: Նրանք տեսան, որ պատերազմը թե՛ քայքայման տեսակետից և թե՛ բանվորների տրամադրության տեսակետից շատ որոշակի դեր է խաղում, և եկան այն եզրակացության, որ իրենք շահ չունեն մանդատ ընդունելու» (Երկեր, հ. 31, էջ 564):

Հայաստանի մանդատը վերցնելը կապված էր ԱՄՆ-ի համար անհաղթահարելի դժվարությունների հետ՝ Անդրկովկասում և մասնավորապես Հայաստանում ռևոլյուցիոն շարժման պայքարի հետ, ինչպես նաև Թուրքիայում քեմալական շարժման դեմ պայքարի հետ: Թե՛ մեկը, թե՛ մյուսը նոր պատերազմի հետ կապված անհուսալի գործ էր և ԱՄՆ-ը հրաժարվեցին մանդատից:

«Անկախ հայկական պետությունը,— ասում է Լլոյդ Ջորջը,— անհուսալի նախագիծ դարձավ այն րոպեից, երբ Ամերիկան հրաժարվեց իր վրա վերցնել նրա պաշտպանությունը» (նույն տեղը, էջ 454):

Այսպիսի հանգամանքներում 1920 թվականի ապրիլին Սան-Ռեմոյի կոնֆերանսում քննարկվում էին «Հայկական հարցը» և նախագծվող հայկական ենթամանդատային պետության սահմանների խնդիրը:

Սան-Ռեմոյի կոնֆերանսում տեղի ունեցած վիճաբանությունները մի անգամ ևս անհերքելիորեն ապացուցում են, որ Հայաստանի «անկախության» գաղափարը դաշնակիցներին հետաքրքրում էր սոսկ Ռուսահայաստանը Սովետական Ռուսաստանի դեմ որպես պլացդարմ օգտագործելու չափով, և որ



նրանք Թուրքահայաստանի հարցը լրջորեն լուծելու ոչ մի ցանկություն չեն ունեցել:

Անապացույց չլինելու համար դիմենք փաստերին:

«Եթե Էրզրումը Հայաստանին տրվի,—գրում է Դավիդ Լլոյդ Ջորջը,—ապա պետք է խոսք լինի զորքեր ուղարկելու ոչ թե Հայաստանի պաշտպանության, այլ նոր տերիտորիաներ նվաճելու համար: Որքան ինձ հայտնի է, Հայաստանը լեռնային երկիր է և աչքի է ընկնում ճանապարհազրկությամբ: Նրա զինվորական էքսպերտները հայտարարում են, որ Մուստաֆա Քեմալի դեմ պայքարելու համար հսկայական բանակ է հարկավոր, և ոչ ոք ամենափոքր անգամ մտադրություն չունի այդպիսի բանակ պատրաստել» (նույն տեղը, էջ 429):

Լլոյդ Ջորջի այս հայտարարությունների մեջ շատ հետաքրքիր բաներ կան: Այնպես է ստացվում, որ Թուրքահայաստան զորք ուղարկելը նշանակում էր ոչ թե հայերի պաշտպանություն, այլ «նոր տերիտորիաների նվաճում»: Եվ այդ հասկանալի է, որովհետև հայերի «պաշտպանություն» ասելով Լլոյդ Ջորջն ու իր կոլեգաները հասկանում էին միայն «պաշտպանություն» Սովետական Ռուսաստանից, որպես ինտերվենցիայի հարմար առիթ:

Պատճառաբանելով Թուրքահայաստան զորք ուղարկելու անհնարինությունը՝ Լլոյդ Ջորջը հիշատակում է, թե դա լեռնային երկիր է: Բայց չէ որ Լլոյդ Ջորջին հաստատ հայտնի էր, որ Ռուսահայաստանը և հենց ամբողջ Անդրկովկասը նույնպես պակաս լեռնային երկիր չէ, և, այնուամենայնիվ, դաշնակիցներին դա չխանգարեց իրենց զորքերն այստեղ ուղարկելու: Իսկ ինչո՞ւ Թուրքահայաստանի լեռներն անհաղթահարելի խոչընդոտ դարձան դաշնակիցների զորքերն այնտեղ ուղարկելուն: Բոլորին, այդ թվում նաև Լլոյդ Ջորջին, պարզ է, որ այստեղ բանը աշխարհագրությունը չէ, այլ՝ քաղաքականությունը:

Սան-Ռեմոյի կոնֆերանսում խոսքը միայն Էրզրումին չէր վերաբերում, այլ ընդհանրապես Թուրքահայաստանին: Լլոյդ Ջորջի հեգնական վերաբերմունքն այս հարցին լիովին արտահայտվել է նրա այն հայտարարության մեջ, որ ինքը «վճռականորեն պաշտպանում է Նիտտիի առաջարկությունը այն տերիտորիաների ենթադրվող սահմանների վերանայման մասին», որոնք, դատելով ըստ պատմության փաստերի, երբեք հայկական չեն եղել բացի այն ժամանակներից, երբ Անգլիան կելտական էր, իսկ Փոքր Ասիան՝ հունական» (նույն տեղը, էջ 430):

Եվ այս ամենը, ինչպես միշտ, մատուցվում է որպես «հոգատարություն» հայերի մասին: «Եթե Էրզրումը հայերին տրվի, թուրքերը դրան կպատասխանեն նոր կոտորածով»,— «կարեկցորեն» ասում էր Լլոյդ Ջորջը (նույն տեղում էջ 429):

Ամփոփելով իր խոսքն այդ հարցում և հեգնելով «հայերի մեծ հույսերը», Լլոյդ Ջորջը չլսված ցինիզմով հայտարարեց՝ «Գոյություն ունեն միայն հայերի նոր կոտորածի «մեծ հույսեր»» (նույն տեղը, էջ 429): Ի դեպ, մենք աճապարում ենք մեղադրելու Լլոյդ Ջորջին: Հայ ժողովրդի բախտի մասին երկար խորհելուց հետո նա հանգում է «օրիգինալ» և սփոփիչ հետևության, թե՝ «կոտորածներն անհնարին են հայեր չլինելու պատճառով» (նույն տեղը, էջ 436): Ահա թե, վերջապես արևմտյան տերություններն ինչ կարողացան երաշխա-

վորել հայերին Թուրքիայում և ինչը մինչև այժմ ըստ արժանվույն չի գնահատել հայ ժողովուրդը։

Որ Թուրքահայաստանի պրոբլեմն ամենևին չի հետաքրքրել դաշնակիցներին և որ նրանց բոլոր մտքերն ուղղված են եղել Ռուսահայաստանին, այդ պարզ երևում է Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստր Բերտելլոյի ելույթից։ Նա հայտարարել է. «Ավելի խելամիտ բան կլիներ հիմք ընդունելու Ռուսահայաստանը, որն ունի 400—500 հազար բնակիչ։ Նրան է վտանգ սպառնում դրսից, բայց նա գոյություն ունի և հենց նա էլ ներկայացնում է պատմական Հայաստանը» (նույն տեղում, էջ 425)։

Ֆրանսիական արտաքին գործերի մինիստրը, նկատի ունենալով Ֆրանսիայի հատուկ դիրքը Թուրքիայում, հարկ է համարել հարցն ավելի ուղղակի դնել, քան Լլոյդ Ջորջը։ Վերսալյան կոնֆերանսում հայկական հարցի շուրջն սկսված խաղը հասկանալու ամբողջ բանալին հենց այդ է՝ «անկախ» պետության հիմք ընդունել Ռուսահայաստանը, որովհետև ֆրանսիական «իրազեկ» դիվանագետի կարծիքով «հենց նա էլ ներկայացնում է պատմական Հայաստանը» և, որ գլխավորն է, «նրան է վտանգ սպառնում դրսից»։

Այս ամենից հետո հարկ կա՞ ապացուցելու, որ արևմտյան ոչ մի տերություն մտադիր չէր լուծելու Թուրքահայաստանի պրոբլեմը։

Որ դաշնակիցներն ամենևին ցանկություն չեն ունեցել լուծելու Թուրքահայաստանի հարցը, այդ երևում է նաև ֆրանսիական պրեմիեր Միլլերանի հայտարարությունից, որն ասել է. «կամ գուցե Թուրքիայի հետ կնքվելիք հաշտության պայմանագրում Հայաստանը ներկայանալու է սոսկ որպես հարցական նշան» (նույն տեղը, էջ 432)։

Հայաստանն իսկապես որ Սևրի պայմանագրի մեջ մտավ որպես հարցական նշան, ավելացնենք միայն, որ ամբողջ Սևրի պայմանագիրն էլ պայմանագրերի Վերսալյան սիստեմի մեջ մտավ որպես հարցական նշան։

Այս բոլոր փաստերը, սակայն, ամենևին չեն շփոթեցնում Լլոյդ Ջորջին։ Նա տաղտկալիորեն շարունակում է ընթերցողին ներշնչել, թե դաշնակիցները ելք էին փնտրում «բազում դարերի ընթացքում հալածանքների ենթարկված հայերի» համար։

Այդ «ելքից» մեկն էլ, ըստ երևույթին, եղել է դաշնակիցների դիմումը Ազգերի Լիգային։ Դեռևս Սան-Ռեմոյի դիսկուսիան սկսվելուց առաջ կոնֆերանսը դիմեց Լիգային, որը Լլոյդ Ջորջի ասելով, խիստ հետաքրքրվում էր Հայաստանի վիճակով, բայց Լիգայի խորհուրդն էլ այդ գործը թոթափեց իր վրայից և «լիակատար համակրանք արտահայտելով դաշնակից տերությունների նպատակներին՝ ընդգծեց, թե դրանց հասնելու համար ամենից ավելի լավ կլիներ, եթե հաջողվեր գտնել Լիգայի որևէ անդամ, կամ այլ տերություն, որը ցանկություն հայտներ Հայաստանի մանդատը վերցնելու» (նույն տեղը, էջ 440)։ Բանը վերջացավ նրանով, որ որոշվեց Հայաստանի մանդատը հանձնել Նորվեգիային։

Այս է Սևրի դաշնագրի ստորագրման իսկական նախապատմությունը, եթե սրան էլ ավելացնենք, որ վերջում դաշնակիցները նորից դիմեցին ոչ միայն ֆիզիկապես, այլև քաղաքականապես անդամալուծված պրեզիդենտ Վիլսոնին և վերջինս «համաձայնեց իր վրա վերցնել արբիտրի պարտականությունը, բայց դրանից ավելի որևէ բան անելու ի վիճակի չէր» (նույն տեղը, էջ 446)։



Այս հոդվածում մենք հատուկ տեղ չենք հատկացնում դաշնակների քա-
ղաքականության վերլուծությանը, բայց Լլոյդ Ջորջի գրքի ուշադիր ընթեր-
ցողը չի կարող կրկին ու կրկին չտեսնել, թե ինչպիսի սարկությամբ էին
ծառայում դաշնակներն արևմտյան իմպերիալիզմին, մեծաքանակ ու մանրա-
ծախ վաճառքի հանում երկիրը ի շահս մեծ տերությունների։
Գրքից նախ և առաջ երևում է այն ծառայական ու ստորացուցիչ դրու-
թյունը, որի մեջ գտնվում էին «Վերսալյան կոնֆերանսում դաշնակցական
ներկայացուցիչները և Պողոս Նուբարի տիպի այլ «ազգային ջոջերը»։ Գրքի
էջերից պարզ երևում է, որ «Հայկական հարցի» լուծման համար նրանց ներ-
կայությունը ոչ մի նշանակություն չուներ, որ ընդհանրապես ոչ ոք չէր էլ
մտածում նրանց հաշվի առնել, որ նրանց, լորդ Քերզոնի դելիկատ արտահայ-
տությամբ, պահում էին «հարևան սենյակում» և հրավիրում էին միայն այն
ժամանակ, երբ հարկավոր էր լինում «տեղեկանք» ստանալ «բոլշևիկյան
սպառնալիքի» մասին։
Փորձված և իմպերիալիստական դիվանագիտության բովում թրծված քա-
ղաքագետ Լլոյդ Ջորջի գրչի տակից ծնվում են դաշնակ նորաթուխ «դիվանա-
գետների» և այլ «ազգային ջոջերի» սպանիչ իրոնիայով լի նկարագրերն ու
բնութագրերը։ Դաշնակ «դիվանագետները» նրա մոտ արհամարհական ժպիտ
են առաջացնում միայն։ Նրանց նվիրված ենթավերնագրերն իսկ տոգորված
են իրոնիայով՝ «Պողոսի կախարդական հեքիաթները», «Հայերի ռազմատենչ
մոլուցքը», «Ահարոնյանի կույր լավատեսությունը» հաջորդում են մեկը
մյուսին։
Դաշնակիցների Գերագույն խորհրդի նիստում մենք տեսնում ենք Պողոս
Նուբարին՝ Քերզոնի, Լլոյդ Ջորջի և Նիտտիի «խաչաձև հարցաքննության»
առաջ կանգնած։ Լլոյդ Ջորջը նրա մասին գրում է.
«Պողոսը սուլթանի բարեհաճությունը վայելող հայ էր և դրա շնորհիվ
բավականին կարողություն էր կուտակել։ Ի դեպ, պետք է ասել, որ Պողոսի
բանիմացությունը, որը նրան հարուստ մարդ էր դարձրել, բոլորովին չքա-
նում էր, հենց որ նա փորձում էր հանդես գալ հայրենասերի դերում... Երբ
ուզեցին նրանից ճշգրիտ տվյալներ ստանալ, որոնք դաշնակիցներին հնարա-
վորություն կտային քննարկելու, թե որքանով է հնարավոր հայկական անկախ
կախ պետություն ստեղծել, նա շատ թե քիչ հուսալի թվեր չտվեց մեզ, այլ
գունազեղ, բայց ֆանտաստիկ պատմություններ տեղաց հայ դյուցազունների
թվի ու հերոսական հատկությունների մասին, դյուցազուններ, որոնք պատ-
րաստ են զենք վերցնելու, եթե դաշնակիցները զենք մատակարարեն իրենց»
(նույն տեղը, էջ 433)։
«Հետևյալ օրը,— գրում է Լլոյդ Ջորջը,— Գերագույն խորհրդի առաջ
կանգնեց հայկական պատվիրակության ղեկավար Ահարոնյանը... Ահարոն-
յանն էլ նույնքան լի էր վստահությամբ և նույնպես իր բացատրությունների
մեջ խճճվեց ու ինքն իրեն հակասեց, ինչպես Պողոս փաշան։ Նրա ասելով
Քեմալի բանակը ողորմելի խաժամուժ է և ընդհանրապես շատ ավելի վատ
է, քան պատկերացնում են» (նույն տեղը, էջ 437)։ Բնութագրելով Պողոս
Նուբարի և Ահարոնյանի վարքագիծը կոնֆերանսում Լլոյդ Ջորջը գրում է.
«Դժվար է պատկերացնել հայկական դիրքերի անհուսալիության և անհոգ
անփութության ավելի ցայտուն ապացույց» (նույն տեղը)։
Դաշնակների այդ «ռազմատենչ մոլուցքի» արժեքը կյանքը հեշտությամբ

սուրից ընդամենը հինգ ամիս անց, երբ նրանք մի քանի շաբաթվա ընթացքում քեմալականներին հանձնեցին ամբողջ Հայաստանը՝ իրենց անփառունակ պատմությունն ավարտելով Ալեքսանդրոպոլի ամոթալի պայմանագրով և ծառայության մտնելով նոր տերերի մոտ։

Այդ դեպքերի նախօրյակին, Սևրի պայմանագիրը ստորագրելուց առաջ, 1920 թվականի հուլիսի 20-ին Սովետական Ռուսաստանի կառավարությունն իր անշահախնդիր օգնությունն առաջարկեց հայ ժողովրդին։ Այդ օգնությունն ընդունելը կպաշտպաներ հայ ժողովրդին նոր փորձություններից, որ կապված էին քեմալականների դեմ սկսված պատերազմի հետ։ Բայց դաշնակները հրաժարվեցին այդ օգնությունից։ Իսկ ինչ վերաբերում է դաշնակների արևմտյան «հովանավորներին», ապա վերջիններս նրանցից երես դարձրին, հենց որ նրանք անպետք դարձան գլխավոր նպատակի՝ Սովետական Ռուսաստանի դեմ պայքար մղելու գործում։ Արտահայտելով Անտանտայի իմպերիալիստների քաղաքականության այս գիծը՝ անգլիական «Դեյլի Հերալդ» թերթը 1920 թվականի նոյեմբերի 13-ի համարում գրում էր՝ «Սկզբում ծրագրված էր Վրաստանն ու Հայաստանն օգտագործել Բաքուն գրավելու համար։ Բայց Քեմալ փաշան ավելի ուժեղ դուրս եկավ, քան սպասվում էր։ Թուրքական բանակը խրվեց Հայաստանի սիրտը... Սրանով վերջանում է հին քաղաքականությունը։ Պարզ է, որ թույլ Հայաստանը չի կարող կարմիրներին դուրս քշել Բաքվից։ Ո՞վ կանի այդ։ Ինչո՞ւ ոչ Քեմալը։ Հարկավոր է ճանաչել Քեմալին»։

Այս է «Հայկական հարցի» նկատմամբ արևմտյան տերությունների ունեցած վերաբերմունքի և նրանց դրածո դաշնակների տխրահռչակ տիրապետության իսկական պատմությունը։ Նրանց հետ միասին տապալվեց և Սևրի դաշնագիրը, որը մի պատմաբանի դիպուկ արտահայտությամբ նույնքան փխրուն էր, որքան Սևրի ճենապակին։

Ինչ վերաբերում է հայ ժողովրդին, ապա նա իր ազատության ուղին հարթեց, իր բախտն անխզելիորեն կապելով ռևոլյուցիոն Ռուսաստանի, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բախտի հետ, Կոմունիստական պարտիայի ղեկավարության հետ, մեծ Լենինի անվան հետ։ Հայաստանում Սովետական իշխանության հաղթանակը, որը երկրից դուրս վռնդեց դաշնակյան հակառևոլյուցիան, տվեց հայ ժողովրդին և՛ ազատություն և՛ պետականություն։ Նա հնարավորություն տվեց նաև պատռելու Ալեքսանդրոպոլի խայտառակ պայմանագիրը, որը վերջին հաշվով Սևրի հետևանքն էր։ Այս է միակ և իսկական ճշմարտությունը։

Այս ճշմարտությունը, իհարկե, ձեռնտու չէ Լլոյդ Ջորջին։

Նա գտնում է, որ Սևրի պայմանագիրը և ամբողջ Վերսալյան սիստեմը մարդասիրության մարմնացում է, որը չեն գնահատել հետնորդները։ Այն հանգամանքը, որ ներսից խախուտ, իմպերիալիստական հակասություններով համակված, ժողովուրդների գաղութացման և ստրկացման հիմնաքարի վրա դրված և իր ամբողջ էությամբ հակառևոլյուցիոն Վերսալյան սիստեմը շատ շուտով ներսից պայթեց, Լլոյդ Ջորջը բացատրում է կառավարությունների փոփոխմամբ, նրանով, որ իշխանության գլուխ անցան նոր մարդիկ, «երկրորդական կարգի պետական գործիչների խայտաճամուկ ու անգույն խմբեր» (նույն տեղը, էջ 499)։

Լլոյդ Ջորջը համեստությամբ չի տառապում։ Խոսելով իր կառավա-



րության անկման մասին, նա միանգամայն լրջորեն ասում է. «Եվ այսպես, կառավարությունն ընկավ, իսկ նրա հետ միասին խորտակվեցին սկզբում Հայաստանի և Ասիական Հունաստանի ազատագրման պլանները, իսկ հետո էլ Ազգերի Լիգան» (նույն տեղը, էջ 460)։ Իսկապես որ Լլոյդ Ջորջը կարող էր մի բանաստեղծի օրինակով գոչել՝ լաց առաքինություն, եթե ես մեռնեմ։

Պատմության իդեալիստական մեկնաբանումը Լլոյդ Ջորջի մոտ զարմանալի պարադոքսների է հասնում։ Նա լուրջ տեսքով ընթերցողին պատմում է, թե ինչպես փոխվեց Հունաստանի քաղաքականությունը, իսկ դրա հետ միասին նաև պատմության իրադարձությունների ամբողջ ընթացքը, երբ մեռավ հունական երիտասարդ թագավոր Ալեքսանդրը, որին այդում կծել էր նրան զվարճացնող փոքրիկ կապիկը։

«Այսպես, Արևելքի պատմությունը,— գրում է նա,— կամ գուցե նաև Արևմուտքի պատմությունը կապկի կծելու պատճառով ուրիշ հունով գնաց։ Դա կարծես թե չարաճճի ոգու ծամածռանք լիներ, որը միշտ ամեն մի մեծ ողբերգության էջերում անսպասելիորեն երևան է գալիս մերթ այստեղ, մերթ այնտեղ» (նույն տեղը, էջ 460)։

Սրանք, իհարկե, բառեր են, գուցե և գեղեցիկ, բայց և այնպես միայն բառեր։ Երիտասարդ թագավորին զվարճացնելու համար պալատում դերված խեղճ կապիկը երբեք չէր կարող մտածել, որ Լլոյդ Ջորջի մեմուարներում իրեն այդպիսի պատիվ է ցույց տրվելու։

Բայց ի՞նչ կարող ես անել։ «Չարաճճի ոգու ծամածռանքները» այն ժամանակից հետո ավելի ու ավելի հաճախ են երևան եկել խորտակվող կապիտալիզմի «մեծ ողբերգության էջերում», հաճախ շփոթության մեջ գցելով նրա լիդերներին, և նույնիսկ Լլոյդ Ջորջը չի կարողանում հասկանալ այդ «ողբերգության» իսկական պատճառը։

Այդպես է եղել միշտ։ Կործանման դատապարտված դասակարգերի նույնիսկ ամենահեռատես քաղաքագետները միշտ չէ, որ հասկանում են պատմության օրինաչափությունը։ Եվ դա էլ պատմական օրինաչափություն է։

digitised by A.R.A.R.@

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՃԸ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Սոցիալիստական հասարակարգի պայմաններում, պարտիայի ու կառավարության վարած ճիշտ քաղաքականության շնորհիվ, սովետական մարդիկ նվաճեցին աշխատանքի, հանգստի, կրթության իրավունք, ծերության, ինչպես նաև հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովության իրավունք, որը օրենսդրական կարգով ամրապնդված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայում: Ապրելով սոցիալիստական հասարակարգում և ունենալով այդպիսի լայն իրավունք, մեր ամեն մի քաղաքացի լիակատար վստահությամբ է նայում իր վաղվա օրվան, որը կլինի ավելի պայծառ, ավելի բերկրալի, քան այսօր է:

Մեր պարտիայի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ «պրոլետարիատի ամենագլխավոր ու արմատական շահը նրա կողմից պետական իշխանությունը նվաճելուց հետո՝ հանդիսանում է պրոդուկտների քանակի ավելացումը, հասարակության արտադրողական ուժերի հսկայական չափով բարձրացումը» (Երկեր, հ. 33, էջ 217):

Հետևողականորեն կենսագործելով Վ. Ի. Լենինի ցուցումները, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ տիտանական ջանքեր գործադրեց երկրի արտադրողական ուժերի զարգացման և մթերքների արտադրության ավելացման բնագավառներում: Արդյունաբերության, և ամենից առաջ ծանր արդյունաբերության զարգացման շնորհիվ ապահովվեց ամբողջ ժողովրդական տնտեսության բուռն վերելքը:

Ժողովրդական տնտեսության զարգացման հետ միասին պարտիան լուրջ միջոցառումներ իրականացրեց սովետական ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու, նրա նյութական և կուլտուրական պահանջմունքները բավարարելու համար: Այդ ուղղությամբ առանձնապես մեծ աշխատանք է կատարված ՍՄԿՊ XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում, որը տվել է իր գոհացուցիչ արդյունքը:

***

Ժողովրդի բարեկեցության բարձրացման առավել ընդհանրացնող ցուցանիշը Սովետական Միության ազգային եկամտի աճն է: Հայտնի է, որ մեկ տարում արտադրված ամբողջ հասարակական արդյունքի նշանակալի մասը պետք է ծախսվի գործող արտադրամիջոցների վերականգնման համար: Իսկ այդ արդյունքի մնացած մասը ստեղծված նոր արժեքն է, որը հանդիսանում է ազգային եկամուտը: Ազգային եկամտի առավել աճման համար տնտեսության սոցիալիստական սիստեմը լայն պայմաններ է ստեղծել:

Առաջին պայմանը, դա նյութական արտադրության ճյուղերում զբաղվող աշխատողների թվի ավելացումն է: Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ ընդմիշտ վերջ տալով գործազրկությանը, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների թիվը 1913 թվականին եղած 12 միլիոն 900 հազարից 1957 թվականին հասավ 52 միլիոն 600 հազարի, այսինքն՝ աճեց ավելի քան 4 անգամ: Միայն մեկ տարում, 1957 թվականին ՍՍՌՄ-ում բանվորների ու ծառայողների թիվն ավելացավ 2 միլիոնով, չնայած նրան, որ շատ-շատերը թոշակավորվեցին:

Երկրորդ պայմանը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումն է, որը Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, վճռական նշանակություն ունի նոր հասարակարգի հաղթանակի համար: 1913 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է մոտավորապես 9,5 անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 2,3 անգամ:

Նյութական արտադրության ճյուղերում զբաղված աշխատողների թվի ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ ՍՍՌՄ-ում ազգային եկամուտն աճեց այնպիսի տեմպերով, որպիսիք անծանոթ են կապիտալի աշխարհին:

ՍՍՌՄ-ում 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ազգային եկամուտն աճել է 19,1 անգամ, 1917 թվականի համեմատությամբ, անցած 40 տարվա ընթացքում՝ 25,5 անգամ, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով՝ ավելի քան 18 անգամ: Միայն 1950—1957 թվականներին ՍՍՌՄ ազգային եկամուտն աճել է 2 անգամ: ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի Դիրեկտիվներում նախատեսված է 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ ազգային եկամուտն ավելացնել 60 տոկոսով: Որպեսզի հստակ պատկերացում կազմենք ազգային եկամտի աճման այդպիսի բարձր տեմպերի մասին, նշենք, որ աշխարհի ամենազարգացած կապիտալիստական երկրում՝ ԱՄՆ-ում բնակչության մեկ շնչի հաշվով ազգային եկամուտը 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 2 անգամից էլ պակաս, իսկ Անգլիայում և Ֆրանսիայում՝ 1,6 անգամից միայն փոքր-ինչ ավելի:

Սակայն բանը միայն ազգային եկամտի աճման տեմպերի մեջ չէ: Կարեվորն այն է, թե ինչ նպատակներով է ծախսվում ազգային եկամուտը, հասարակության անդամներն ինչպես են օգտվում նրանից:

Սովետական Միությունում ազգային եկամուտն ամբողջովին պատկանում է ժողովրդին և նրա երեք քառորդը գնում է բնակչության նյութական ու կուլտուրական անձնական պահանջմունքների բավարարման համար, իսկ մնացած մասը հատկացվում է սոցիալիստական արտադրության ընդլայնմանը և համապետական ու հասարակական այլ կարիքներին: Դա հնարավորություն է տալիս սիստեմատիկաբար բարձրացնելու բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները: Բանն այլ է կապիտալիստական երկրներում: Այստեղ ազգային եկամտի առյուծի բաժինն ընկնում է տիրող դասակարգերին: Այսպես, կապիտալիստական երկրների ունևոր և շահագործող դասակարգի ներկայացուցիչները, որոնք կազմում են բնակչության միայն 10 տոկոսը, ստանում են ազգային եկամտի կեսից ավելին, իսկ աշխատավորները, որոնք կազմում են հասարակության բացարձակ մեծա-

մասնությունը, ստանում են ազգային եկամտի կեսից էլ պակասը և ծայրաստիճան աղքատիկ կյանք վարում։ Այս բանը ոչ մի կերպ հնարավոր չէ թաքցնել։ Բայց կապիտալիզմի վարձու պնակալեզները և բուրժուական ծախու մամուլը կաշվից դուրս գալով փորձում են «ապացուցել», որ կապիտալիզմի զարգացման ներկա էտապում ստեղծվում է նոր կապիտալիզմ՝ «ժողովրդական կապիտալիզմ», որ այսպես կոչված իրենց «ազատ աշխարհում» բարելավվում է հասարակության բոլոր անդամների տնտեսական դրությունը։ Այդ բոլորը կեղծ և սին դատողություններ են, որով կապիտալիզմի ջատագովները կարող են միամիտներին խաբել։ Իրականությունն այն է, որ ժամանակակից կապիտալիզմի պայմաններում ավելի է ուժեղանում հասարակության երկու բևեռների՝ կապիտալիստների ու աշխատավորների տնտեսական դրության միջև եղած տարբերությունը. կապիտալի մագնատների եկամուտները աճում են ահռելի չափերով, իսկ աշխատավորական հոծ զանգվածների եկամուտները գնալով նվազում են։

Այսպես կոչված «ժողովրդական կապիտալիզմի» երկրում՝ ԱՄՆ-ում ազգաբնակչության մեկ տոկոսն իր ձեռքն է կենտրոնացրել երկրի ողջ հարստության 60 տոկոսը, 12 տոկոսին բաժին է ընկնում 32 տոկոսը, իսկ ազգաբնակչության ճնշող մեծամասնությանը՝ 87 տոկոսին բաժին է ընկնում երկրի հարստության միայն 8 տոկոսը։ 1952 թվականին ԱՄՆ-ի բանվորների, աշխատավոր գյուղացիների և արհեստավորների բաժինը ազգային եկամտի միայն 25,4 տոկոսն է կազմել։

Անհերքելի փաստերը ցույց են տալիս, որ ԱՄՆ-ում ապրուստի պայմանները թանգացել են. բնակարանային վարձը, տրանսպորտի և մյուս ծախսերը աճել են, և համապատասխանաբար կրճատվել է աշխատավարձի այն բաժինը, որ ծախսվում է սննդի և հագուստի վրա։ Նույնիսկ ԱՄՆ-ի կոնգրեսին պրեզիդենտ Էյզենհաուերի հղած ուղերձում բերված տվյալներով, երկրի ընտանիքների մեծ մասի տարեկան եկամուտը շատ ցածր է ապրուստի այն մինիմումից, որ 1956 թվականին սահմանել է Գելլերի հանձնաժողովը։ Օրեցօր աճող գործազրկության և ռեալ աշխատավարձի նվազեցման հետեվանքով խիստ կերպով վատանում են ԱՄՆ-ի աշխատավորների ապրուստի պայմանները, որը և բացասաբար է անդրադառնում նրանց առողջության վրա։ Բավական է նշել, ինչպես ցույց է տրված Նիրինգ ամուսինների «ԱՄՆ-ն այսօր» գրքում, որ ԱՄՆ-ի զորակոչիկների 40 տոկոսը պիտանի չէ զինվորական ծառայության։ Աչք փակելով այս բոլորի առջև, բուրժուական մամուլը անամոթաբար գովաբանում է ամերիկյան ապրելակերպը։

Կապիտալիստական երկրների աշխատավորական լայն մասսաների տնտեսական վիճակն ավելի է վատացել հատկապես վերջին տարիներում, և դա հասկանալի է։ Վարելով «ուժի դիրքերից» ելնող քաղաքականություն և զարկ տալով սպառազինությունների մրցավազքին, կապիտալիստական երկրների կառավարությունները տարեցտարի կրճատում են աշխատավարձը և ավելացնում ռազմական հատկացումները, որոնք կազմում են պետական բյուջեի կեսից ավելին։ ԱՄՆ-ի իմպերիալիստական ռեակցիոն շրջանների նախաձեռնությամբ ստեղծված ագրեսիվ ռազմական խմբավորումները ծանր բեռի պես ընկած են աշխատավորների ուսերին։ Դա պարզ երևում է թեկուզ Ֆրանսիայի օրինակով, որի մասնակցությունը ՆԱՏՕ-ին կլանում է երկրի ազգային եկամտի 9,5 տոկոսը։ Դրան պետք է ավելացնել այն երկու միլիարդ



ֆրանկը, որ ամեն օր կլանում է Ալժիրում մղվող գաղութակալական պատերազմը։ Այդպիսի հսկայական ծախսերը ծածկելու համար ֆրանսիական կառավարությունն ավելացնում է ոչ միայն աշխատավորներից գանձվող հարկերը, այլև բարձրացնում է առաջին անհրաժեշտության ապրանքների գները։ Վիճակագրության և տնտեսական հետազոտությունների ազգային ինստիտուտի տվյալներով, ընթացիկ տարվա հունվարին Ֆրանսիայում նորից բարձրացվեցին 11 տեսակի սննդամթերքների գները։ 1957 թվականի համեմատությամբ մսի գինը աճել է 12—14 տոկոսով, ձվինը՝ 46 տոկոսով, կարտոֆիլինը՝ 28 տոկոսով և այլն։ Նման օրինակներ կարելի է բերել նաև կապիտալիստական մյուս երկրներից, ուր ավելի է վատացել աշխատավորների առանց այն էլ ծանր դրությունը։

***

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿԿ XX համագումարի որոշումները, ապահովելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վեցերորդ հնգամյակում առաջադրված խնդիրների կատարումն ու ազգային եկամտի անշեղ աճը, Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը վերջին տարիներս նոր, խոշոր միջոցառումներ իրականացրին սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման բնագավառում։ Այդ են ցույց տալիս ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը, պետական կենսաթոշակների ավելացումը, միջնակարգ դպրոցներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսման վարձի վերացումը, կանանց հղիության և ծննդաբերության արձակուրդների տևողության ավելացումը, նախահանգստյան և նախատոնական օրերին երկու ժամով աշխատանքային օրվա կրճատումը, արդյունաբերության մի շարք ճյուղերում կրճատ աշխատանքային օր մտցնելը, 16—18 տարեկան դեռահասների համար վեցժամյա աշխատանքային օր սահմանելը, պետության կողմից գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների բարձրացումը և այլն։ Այս միջոցառումների կիրառման շնորհիվ զգալիորեն ավելացել են բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների ռեալ եկամուտները, բարձրացել է նրանց գնողունակությունը։ Բավական է նշել, որ միայն 1957 թվականին սոցիալական ապահովության, նպաստների, կենսաթոշակների, սովորողների թոշակների, ձրի ուսուցման, բժշկական սպասարկման և այլ վճարումների համար ծախսվեց 192 միլիարդ ռուբլի, որը կազմեց տվյալ տարվա պետական բյուջեի բոլոր ծախսերի մոտավորապես մեկ երրորդը։

Մեզ մոտ աշխատավորների ռեալ եկամուտների բարձրացումը հիմնականում իրագործվում է ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ գները իջեցնելու կամ դրամական աշխատավարձը բարձրացնելու, կենսաթոշակները, նպաստները և դրամական մյուս եկամուտներն ավելացնելու միջոցով։

1947 թվականից մինչև 1954 թվականն ընկած ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում աշխատավորների ռեալ եկամուտների բարձրացումը հիմնականում տեղի էր ունենում ժողովրդական սպառման ապրանքների գներն իջեցնելու միջոցով։ Այդ ուղղությամբ իրականացված միջոցառումների շնորհիվ ներկայումս պետական մանրածախ գները 2,3 անգամ ցածր են, քան 1947 թվականին, ընդսմին հացի, մսի, յուղի և առաջին անհրաժեշտության մի

քանի ապրանքների գներն ավելի մեծ չափերով են իջել։ Անցած տնտեսական տարում նույնպես իջեցվեցին մասսայական սպառման մի շարք ապրանքների գները։ Այդպիսի ձեռնարկումներ կատարվելու են նաև հետագայում։

Բայց պետք է նկատի ունենալ, որ ժողովրդական սպառման ապրանքների պետական մանրածախ գների իջեցումից մեծ չափով շահում են բանվորների ու ծառայողների բարձր վարձատրվող խմբերը, որոնք շատ ապրանքներ են գնում։ Այդ հանգամանքը նկատի ունենալով, պարտիան ու կառավարությունը վերջին տարիներում ձեռնարկում են այնպիսի միջոցառումներ, որպեսզի առավել չափով բարձրացվեն ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների եկամուտները։

Բանվորների ու ծառայողների եկամտի հիմնական աղբյուրը աշխատավարձն է, և քանի որ մեզ մոտ աշխատանքը գնահատվում է սոցիալիստական սկզբունքով՝ ըստ քանակի ու որակի, ուստի աշխատավարձի գործում չի կարելի հավասարեցում թույլ տալ։ Բայց ցածր և բարձր վարձատրվող խմբերի աշխատավարձի միջև եղած խզումը, ինչպես նշում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը, պետք է նվազեցվի և գնալով այդ խզումը ավելի մեծ չափով կնվազեցվի աշխատավորների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձի բարձրացման, կենսաթոշակային ապահովման ավելացման հաշվին։

Այդ ուղղությամբ պարտիան ու կառավարությունն արդեն որոշ միջոցառումներ են իրականացրել։ 1957 թվականի հունվարի մեկից բարձրացվեց ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձը և վերացվեց հարկերի գանձումն այն բանվորներից, ծառայողներից ու սովորողներից, որոնք ամսական ստանում են մինչև 370 ռուբլի աշխատավարձ կամ թոշակ։ Այս միջոցառումը ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների տարեկան եկամուտն ավելացրեց ութ միլիարդ ռուբլով, կամ այլ կերպ ասած, նրանց աշխատավարձը միջին հաշվով բարձրացավ 33 տոկոսով։ ՍՍՌՄ-ում բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձը 1950 թվականից մինչև 1957 թվականն աճել է ավելի քան մեկ և կես անգամ։

Ժողովրդի բարեկեցության և նրա եկամուտների բարձրացման խոշոր ազդակ հանդիսացավ 1956 թվականին ընդունված պետական կենսաթոշակների նոր օրենքը, որով զգալիորեն ավելացվեց կենսաթոշակների չափը։ Այսպես, պետության կողմից 1955 թվականին բնակչությանը վճարված 30 միլիարդ 100 միլիոն ռուբլու դիմաց 1957 թվականին վճարվեց 57 միլիարդ 900 միլիոն ռուբլի, իսկ 1958 թվականին կվճարվի 66 միլիարդ ռուբլի թոշակ։ Այժմ մեր երկրում պետությունից թոշակ են ստանում 18 միլիոն մարդ, որոնց նյութական ապահովության հոգատարությունը պարտիան և կառավարությունը համարում են իրենց սրբազան պարտականությունը։

Ժողովրդի եկամուտների ավելացման միջոցառումներից են նաև փոխառությունների բաժնեգրման դադարեցումը, ինչպես նաև ամուրի, միայնակ կանանցից ու սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիներից գանձվող հարկի վերացումը։ Միայն մեր ռեսպուբլիկայում այդ հարկը վճարողների գրեթե 85 տոկոսը արդեն լրիվին ազատված է հարկումից, որով նրանց եկամուտները ավելանում են շուրջ 26 միլիոն ռուբլով։ Ռեսպուբլիկայի բանվորները, ծառայողները և կոլտնտեսականները 1958 թվականի հունվարի մեկից տարեկան 19 միլիոն ռուբլի էլ շահում են իրենց օժանդակ տնտեսությունից գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումներից ազատվելով։



Վ. Ի. Լենինն ուսուցանում էր, որ կոմունիստական հասարակարգը կառուցվում է «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովելու համար» (Երկեր, հ 6, էջ 53)։ Հետևելով Վ. Ի. Լենինի ցուցումին, պարտիան ու կառավարությունը լուրջ միջոցառումներ են իրականացնում ոչ միայն բանվորների ու ծառայողների, այլև կոլտնտեսային գյուղացիության նյութական բարեկեցությունը և համակողմանի զարգացումն ապահովելու համար։

Հայտնի է, որ կոլտնտեսականներն իրենց հիմնական եկամուտն ստա-
նում են հանրային տնտեսությունից։ Ուստի, որքան բարձր լինեն հանրային
տնտեսության եկամուտները, այնքան էլ շատ մթերքներ ու դրամ կբաշխվեն
կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց։ Հենց այդ էլ նկատի
ունենալով, պարտիան ու կառավարությունը վերջին տարիներս խոշոր միջո-
ցառումներ իրականացրին կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը
զարգացնելու և նրա եկամտաբերությունը բարձրացնելու համար։ Այդպիսի
միջոցառումներից են կոլտնտեսությունները փորձված ղեկավարներով ու մաս-
նագետներով ապահովելը, գյուղին հարաճուն տեմպերով մեքենաներ ու հան-
քային պարարտանյութ տալը, գյուղատնտեսության պլանավորման նոր կար-
գը, ՄՏ կայանների վերակազմումը, գյուղատնտեսական մթերքների մթեր-
ման ու գնման բարձր գներ սահմանելը և այլն, որոնք մեծապես նպաստեցին
կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացմանը։ Բավական է
նշել, որ միայն պետությանը հանձնած ու վաճառած մթերքների գների բարձ-
րացման հաշվին կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները 1957 թվա-
կանին ստացել են գրեթե 50 միլիարդ ռուբլով ավելի գումար, քան 1952
թվականին։ Իսկ եթե հաշվի առնենք պետությանը հանձնված ու վաճառված
արտադրանքի ծավալի աճը, ապա կոլտնտեսությունների և բնակչության
հասույթը 1957 թվականին, 1952 թվականի համեմատությամբ, ավելացել է
64 միլիարդ ռուբլով։ Այդ ուղղությամբ որոշակի հաջողություններ կան նաև
մեր ռեսպուբլիկայում։ ՀԿԿ XIX համագումարին տված Կենտկոմի հաշվետու
զեկուցման մեջ նշվեց, որ «Միայն գյուղատնտեսական մթերքների մթերում-
ների նորմաներն իջեցնելու, մթերման ու գնման գները բարձրացնելու շնոր-
հիվ կոլտնտեսականների և կոլտնտեսությունների եկամուտները 1957 թվա-
կանին, 1952 թվականի համեմատությամբ, ավելացան 280 միլիոն ռուբլով,
իսկ հաշվի առնելով պետությանը հանձնված և վաճառված գյուղատնտեսական
մթերքների ծավալի աճը, եկամուտների ավելացումը կազմում է 371,5 միլիոն
ռուբլի»։

Վերջին տարիներում ՍՍՌՄ քաղաքացիների եկամուտների ավելացման
մասին է խոսում նաև այն փաստը, որ խնայդրամարկղներում մեծ չափով
ավելացել է ավանդների գումարը։ 1948—1956 թվականներին խնայդրամ-
արկղներում ավանդները աճել են 5 անգամ և այժմ կազմում են 63 միլիարդ
748 միլիոն ռուբլի։ Մեր ռեսպուբլիկայի խնայդրամարկղներում աշխատա-
վորների ավանդները առ մեկը հունվարի 1958 թվականի կազմում են 450
միլիոն ռուբլի։ Հատկանշականն այն է, որ մեր աշխատավորները խնայողու-
թյունը անում են ոչ թե «սև օրվա» համար, այլ բնակարանային լավ կահա-
վորում ձեռք բերելու, սանատորիաներ և էքսկուրսիաներ գնալու համար։

Սովետական ժողովրդի եկամուտների բարձրացման ուղղությամբ ավելի
լայն միջոցառումներ են իրագործվելու ընթացիկ տարում։ Դա իր արտացո-

լումն է գտել պետական բյուջեում։ Միայն մի շարք կատեգորիաների բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացման, կենսաթոշակային ապահովության նշանակալի բարելավման, պետական փոխառությունների թողարկման վերացման, գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների բարձրացման և այլնի համար ընթացիկ տարում պետության լրացուցիչ ծախսերը կազմում են 63 միլիարդ ռուբլի, որով զգալիորեն կավելանան աշխատավորների եկամուտները։ Սրա հետ եթե հաշվի առնենք նաև աշխատավարձի ֆոնդերի աճը, ապա բանվորների ու ծառայողների եկամուտները 1958 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, կաճեն մոտավորապես 120 միլիարդ ռուբլով։ Կոլտնտեսությունները և կոլտնտեսականները 1955 թվականի համեմատությամբ ավելի եկամուտ կունենան մոտավորապես 40 միլիարդ ռուբլի, ընդ որում կաճի աշխօրերին բաշխվող մթերքների քանակը։

***

Աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը մեծ չափով որոշվում է բնակարանային պայմաններով։ Լուսավոր ու բարեկեցիկ բնակարանը բարերար ազդեցություն է թողնում մարդու առողջության վրա, ապահովում է նրա կուլտուրական կյանքը, հանգիստն ու նորմալ աշխատանքը։

Սովետական Միությունում հսկայական աշխատանք է կատարված բնակարանային շինարարության ասպարեզում։ Եթե 1913 թվականին քաղաքային ամբողջ բնակարանային ֆոնդը կազմում էր 180 միլիոն քառակուսի մետր, ապա 1956 թվականին այն հասավ 668 միլիոն քառակուսի մետրի։ Սովետական իշխանության տարիներին պետական և կոոպերատիվ կազմակերպությունները, ինչպես նաև քաղաքային բնակչությունը պետական վարկի օգնությամբ կառուցել և վերակառուցել են 507 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Լայն շինարարություն է կատարված նաև գյուղում։ 1946—1956 թվականներին կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցել են 5,6 միլիոն տուն։

Բնակարանային շինարարությունը զարգացել է միութենական բոլոր ռեսպուբլիկաներում, որոնց բնակավայրերը հիմնովին փոխել են իրենց դեմքը, հարստացել են ճարտարապետական գեղեցիկ ձևավորում ունեցող նորակառույց բնակարաններով, պողոտաներով, փողոցներով ու կոմունալ բազմաթիվ կառույցներով։ Սովետական շատ ու շատ քաղաքներ, բանվորական ավաններ ու գյուղեր իրենց փառահեղ տեսքով հիացմունք են պատճառում։

Չնայած նրան, որ բնակարանային շինարարության բնագավառում մեզ մոտ հսկայական աշխատանք է կատարված և ՍՍՌՄ-ն բնակելի տների կառուցման բացարձակ ու հարաբերական մասշտաբներով առաջ է անցել Արևմտա-եվրոպական զարգացած կապիտալիստական երկրներից, բայց, այնուամենայնիվ մեր երկրում դեռ բնակարանային լուրջ պակաս կա։ Դա, իհարկե, ունի իր պատճառները։ Պետք է նկատի ունենալ, որ Սովետական իշխանությունը ցարական կարգերից քայքայված ժողովրդական տնտեսության հետ միասին ժառանգություն ստացավ նաև բնակարանային չտեսնված մեծ կարիք։ Բացի այդ, Սովետական իշխանության տարիներին ավելի քան 3,5 անգամ ավելացավ քաղաքների ու բանվորական ավանների բնակչության



թիվը, որը, բնականաբար, իր հետ բերեց նաև բնակարանային պահանջ։ Այդ
պահանջն ավելի սրեցին երկրորդ համաշխարհային պատերազմի առաջացրած
անհամար ավերածությունները, որոնց հետևանքով 25 միլիոն մարդ մնաց ան-
օթևան։ Այս բոլորից ելնելով մեր պարտիան ու կառավարությունը այժմ չա-
փազանց լուրջ ուշադրություն են դարձնում բնակարանային շինարարության
վրա։ Նախատեսված է վեցերորդ հնգամյակում, միայն պետության հաշվին
կամ նրա օգնությամբ, կառուցել 328 միլիոն քառակուսի մետր բնակելի տա-
րածություն։ Այդ նույն ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ-ում կառուցվե-
լու է մեկ միլիոն 200 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարությունն ավելի արագ տեմպերով
կընթանա ընթացիկ տարում և սահմանված պլանի համաձայն շահագործման
կհանձնվի 61 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բացի դրա-
նից 800 հազար բնակարան էլ կկառուցեն կոլտնտեսականներն ու գյուղական
ինտելիգենցիան։

Խոշոր միջոցներ են ծախսվելու նաև բնակչության կոմունալ սպասար-
կումը բարելավելու համար։ Այդ գործում առանձնապես կարևոր նշանակու-
թյուն ունի քաղաքների ու բանվորական ավանների գազիֆիկացիան, որի
ուղղությամբ լայն աշխատանք է կատարվում։

***

Բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների եկամուտների բարձ-
րացումն իր ցայտուն արտահայտությունն է գտնում ժողովրդական սպա-
ռումն ավելացնելու և սովետական առևտուրը զարգացնելու մեջ։ Աշխատա-
վորների ստացած եկամուտները նրանց հնարավորություն են տալիս ձեռք
բերելու ավելի շատ սննդամթերքներ ու արդյունաբերական ապրանքներ։
Նրանք այժմ սկսել են ավելի լավ սնվել, ավելի լավ հագնվել ու ավելի լավ
ապրել։

Նկատի ունենալով բնակչության եկամուտների աճը և նրանց պահանջ-
մունքների բարձրացումը, պարտիան ու կառավարությունը ծանր ինդուստ-
րիայի առավել զարգացման բազայի հիման վրա զարկ են տալիս ժողովրդա-
կան լայն սպառման ապրանքների արտադրությանը, որոնց վաճառքը գնալով
լայն ծավալ է ստանում։ Այսպես, 1957 թվականին պետական ու կոոպերա-
տիվ առևտրի ցանցի միջոցով երկրի բնակչությանը վաճառվել է 3,3 անգամ
ավելի միս ու մսամթերքներ, 3,5 անգամ ավելի կենդանական յուղ, կաթ և
այլ կաթնամթերք, 3,3 անգամ ավելի շաքար, քան 1940 թվականին։

Գոհունակությամբ պետք է նշել, որ բնակչության լայն խավերն սկսել
են գնել ավելի շատ կուլտ-կենցաղային ապրանքներ, որոնց թվում բնակա-
րաններում գործածվող մեքենաներ ու ապարատներ, որոնք նշանակալից չա-
փով թեթևացնում են ընտանիքներում կատարվող աշխատանքը և բարելավում
կենցաղը։ Բավական է նշել, որ միայն 1956 թվականին ՍՍՌՄ աշխատավոր-
ները գնել են 214 հազար տնային սառնարան, 162 հազար փոշեծծիչ, 193
հազար լվացքի մեքենա, 4211 հազար ռադիոընդունիչ և հեռուստատես, 3310
հազար հեծանիվ և մոտոցիկլետ, 21138 հազար ժամացույց և այլն։

Թե տարեցտարի որքանով է բարձրանում սովետական մարդկանց գնողունակությունը, ցույց են տալիս հետևյալ թվերը. 1957 թվականին, 1956 թվա-

կանի համեմատությամբ, պետական և կոոպերատիվ առևտրի (չհաշված Ցենտրոսոյուզի կոմիսիոն առևտուրը) մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը, համադրելի գներով, կազմեց 615,5 միլիարդ ռուբլի և ավելացավ 14 տոկոսով: Գյուղական վայրերում առևտուր կատարող սպառողական կոոպերացիայի մանրածախ ապրանքաշրջանառությունն աճեց 17 տոկոսով:

Մանրածախ ապրանքաշրջանառության անցած տարվա պլանը մեր ռեսպուբլիկայում կատարված է 110 տոկոսով, կամ 1956 թվականի համեմատությամբ ավելի է 17 տոկոսով:

1958 թվականին ՍՍՌՄ պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառության պլանը սահմանված է 660 միլիարդ ռուբլի, որը 119 միլիարդ ռուբլով ավելի է, քան 1956 թվականի և 45 միլիարդ ռուբլով ավելի, քան 1957 թվականի մանրածախ ապրանքաշրջանառության պլաններով սահմանված գումարը:

Չնայած ժողովրդական սպառման ապրանքների վաճառքը տարեցտարի աճում է, բայց կան որոշ ապրանքներ, հատկապես բրդյա գործվածքներ, կաշվե կոշիկեղեն, կահույք և շինանյութեր, որոնց նկատմամբ բնակչության պահանջմունքը դեռևս լրիվ չի բավարարվում: Այդ ապրանքների արտադրության ավելացման համար արդեն կոնկրետ միջոցառումներ են ձեռնարկվում: «Տնտեսությունը, գիտությունն ու տեխնիկան,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,— Սովետական Միությունում զարգացման այնպիսի մակարդակի են հասել, որ մենք այժմ հնարավորություն ունենք, առանց վնասելու երկրի պաշտպանության ամրապնդման և ծանր ինդուստրիայի հետագա զարգացման շահերին, ավելի արագ տեմպով զարգացնել թեթև արդյունաբերությունը և, մասնավորապես, այնպիսի քանակությամբ կոշիկեղեն ու կտորեղեն արտադրել, որպեսզի հնարավորություն ունենանք առաջիկա 5—7 տարում լրիվին ապահովել այդ ապրանքների նկատմամբ բնակչության աճող պահանջը»:

Այդ նպատակին է ուղղված «Բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին» ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը: Այդ որոշմամբ նախատեսված է սինթետիկ նյութերի արտադրության զարգացման հիման վրա 1965 թվականին բրդի գործվածքները հասցնել 500 միլիոն մետրի, մետաքսե գործվածքները՝ 1,485 միլիոն մետրի, արհեստական ու սինթետիկ թելի հետ բամբակի խառը գործվածքները՝ 480 միլիոն մետրի, տրիկոտաժ հագուստինը՝ 940 միլիոն հատի, կոշկեղենը՝ 515 միլիոն զույգի, արհեստական կարակուլինը՝ 5 միլիոն քառակուսի մետրի:

Բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին պարտիայի առաջադրած խնդրի կատարումն ապահովելու նպատակով բարձր տեմպերով զարգացվելու են մսի, կաթի և յուղի արտադրությունն ու դրանց վաճառքը:

Միայն ու միմիայն սոցիալիստական հասարակարգն է, որ մարդուն շրջապատում է ջերմ հոգատարությամբ, որի բազմապիսի պահանջմունքների



բավարարման հետ միասին, նրա առողջության պահպանումը գտնվում է ամբողջ հասարակության և պետության ուշադրության կենտրոնում:

Սովետական իշխանության տարիներին հսկայական աշխատանք է կատարված բնակչության բուժօգնությունն արմատապես բարելավելու համար, որը ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևոր միջոցներից մեկն է: Այժմ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 17 բժիշկ, հիվանդանոցային 70 մահճակալ: Ցարական Ռուսաստանում նույն քանակությամբ բնակչությանն ընկնում էր մեկ բժիշկ և հիվանդանոցային 13 մահճակալ: Բժիշկների թիվը (առանց ատամնաբույժների և զինծառայողների) աճել է և 1913 թվականի 23,0 հազարից 1957 թվականին հասել է 346 հազարի, իսկ հիվանդանոցային մահճակալների թիվը (առանց հոսպիտալների) 207,3 հազարից հասել է 1,432 հազարի:

Այդ ուղղությամբ նշանակալից հաջողություններ են ձեռք բերված նաև մեր ռեսպուբլիկայում: Բուժ-սանիտարական հիմնարկների ցանցը 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 37 անգամ, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ 2 անգամ: Նախառևոլյուցիոն Հայաստանում ընդամենը եղել է 16 հիվանդանոց՝ 212 մահճակալով, որտեղ աշխատել են 57 բժիշկ: Ներկայումս ռեսպուբլիկայում կա 235 հիվանդանոցային հիմնարկ՝ 10 հազար մահճակալով: Ռեսպուբլիկայի բուժ-պրոֆիլակտիկ և սանիտարական-էպիդեմիկական հիմնարկություններում աշխատում են 3435 բժիշկ և 7930 միջին բուժանձնակազմ. յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է 20 բժիշկ, որը համապատասխանաբար 12,2 անգամ ավելի է, քան Իրանում, 4,7 անգամ ավելի է, քան Թուրքիայում:

Ժողովրդի բարեկեցության և առողջապահության բարելավման շնորհիվ բնակչության մահացությունը ՍՍՌՄ-ում նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ պակասել է 4 անգամ, իսկ երեխաների մահացությունը՝ 6 անգամ: Եթե ցարական Ռուսաստանում մահացության տոկոսը երկու անգամով գերազանցում էր ԱՄՆ-ի, Անգլիայի և 1,5 անգամ Ֆրանսայի բնակչության մահացության տոկոսը, ապա ներկայումս մահացությունը ՍՍՌՄ-ում շատ ցածր է, իսկ բնակչության աճը բարձր, քան այդ երկրներում: Միայն հնգերորդ հնգամյակում բնակչության բնական աճի հաշվին ՍՍՌՄ-ի բնակչությունն ավելացել է 16,3 միլիոն մարդով, որը գերազանցում է Շվեդիայի, Նորվեգիայի և Ֆինլանդիայի բնակչության թիվն՝ միասին վերցրած:

Բնակչության թվի աճման հետ միասին ավելացել է նաև սովետական մարդկանց կյանքի տևողությունը: Եթե 1896—1897 թվականներին ցարական Ռուսաստանում կյանքի միջին տևողությունը հասնում էր 32 տարվա, ապա ՍՍՌՄ-ում 1955—1956 թվականներին այն հասնում է 67 տարվա: Դա բարձր է, քան ԱՄՆ-ի, Անգլիայի բնակչության կյանքի միջին տևողությունը, էլ չենք խոսում թույլ զարգացած երկրների մասին, որտեղ կյանքի միջին տևողությունը կազմում է 27—32 տարի: Կապիտալիզմի դաժան շահագործման պայմաններում բյուրավոր ծաղիկ կյանքեր դեռ չբացված թառամում են:

ՍՍՌՄ-ում եղած հիվանդանոցների, դիսպանսերների, սանատորիաների, պիոներական ճամբարների ու առողջապահական այլ հիմնարկների լայն ցանցն ամբողջապես գործի է դրված բնակչության առողջապահության բարելավմանը: Ամեն տարի միլիոնավոր աշխատավորներ ու պատանիներ մեկ-

նում են սանատորիաներ, հանգստյան տներ ու ճամբարներ, ուր նրանք ֆիզիկապես կոփվում են, դառնում աշխույժ ու կայտառ։ Միայն 1957 թվականի ամռանը ավելի քան վեց միլիոն երեխաներ ու դեռահասներ հանգստացել են պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում, էքսկուրսիոն-տուրիստական բազաներում կամ ամռան շրջանում ամառանոցներ են մեկնել մանկապարտեզների, մանկատների ու մանկամսուրների հետ։

Բնակչության առողջապահության գործում որոշակի դեր է խաղում նաև ֆիզկուլտուրան, որը մեր երկրում կրում է մասսայական բնույթ։

Սովետական երկրում առանձնապես մեծ է հոգատարությունը մոր և մանկան նկատմամբ։ Ծննդատների, մանկամսուրների, մանկապարտեզների, մանկահրապարակների, կոնսուլտացիաների և մոր ու մանկան այլ հիմնարկությունների պահպանման ու ընդարձակման վրա պետությունն ամեն տարի մեծ միջոցներ է ծախսում։ Հիվանդանոցների կաթնախոհանոցները բոլոր նորածին երեխաներին վեց ամիս անվճար կերակրում են։ Բազմաթիվ մայրեր ստանում են պետական նպաստ, պարգևատրվում են շքանշաններով ու մեդալներով, արժանանում են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչմանը և այլն։

Աշխարհի և ոչ մի կապիտալիստական երկրում մոր և մանկան նկատմամբ չկա և չի կարող լինել այդպիսի հոգատարություն։ Ավելին, կապիտալի աշխարհում աշխատավոր կինն ու նրա զավակները գտնվում են այնպիսի թշվառ վիճակում, որն անհարիր է մարդու խղճին։

Սովետական ժողովրդի բարեկեցության, նրա նյութական ու կուլտուրական աճող պահանջմունքների բավարարման նկատմամբ հոգատարությունը եղել և մնում է Կոմունիստական պարտիայի գործունեության գլխավոր նպատակը։ Մեր պարտիան դա համարում է իր հիմնական խնդիրը, մեծ Լենինի պատգամների կենսագործման ուղղությամբ իր ամբողջ աշխատանքի իմաստը։

Ունենալով այդպիսի վեհ նպատակ, Կոմունիստական պարտիան հաստատակամությամբ պայքարում է սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքի համար, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ կապիտալիստական խոշորագույն երկրներին հասնելու և անցնելու՝ ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդիրը լուծելու համար։

---

# ԿՈՒՐՈՐՏԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ս. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը կարևոր նշանակություն տալով մեր աշխատավորության առողջության գործի կազմակերպմանը, դեռ 1919 թվականի մարտի 20-ին ստորագրեց «Բուժական վայրերի ընդհանուր պետական նշանակության մասին» դեկրետը, որը հսկայական դեր խաղաց մեր բովանդակ երկրում առողջարանների խիտ ցանց ստեղծելու և աշխատավորության հանգիստը կազմակերպելու գործում։ Բավական է հիշատակել, որ 1913 թվականին ողջ Ռուսաստանում գործում էին ընդամենը 36 կուրորտներ՝ 56 սանատորիաներով, որոնց մահճակալային ֆոնդը չէր գերազանցում 3000-ից, այսինքն՝ ազգաբնակչության յուրաքանչյուր 50 հազար հոգուն ընկնում էր մեկ մահճակալից էլ պակաս։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ բանվորը, գյուղացին և ինտելիգենցիայի ճնշող մեծամասնությունը չէին պատկանում եղած սանատորիաներից օգտվող երջանիկների թվին։ Այդ կուրորտներն ու սանատորիաները բացառապես սպասարկում էին խոշոր կապիտալիստներին, կալվածատերերին և բարձրաստիճան չինովնիկներին ու զինվորականներին։ Եղած սանատորիաների մեծ մասը պատկանում էր առանձին կապիտալիստներին և ազնվականներին։

1919 թվականի մարտի 20-ին Լենինի ստորագրած դեկրետով ՌՍՖՍՌ ողջ տերիտորիայում եղած բոլոր կուրորտները, սանատորիաները և բուժական այլ վայրերը կուրորտ-սանատորիաներին պատկանած շարժական և անշարժ գույքը համարվում է պրոլետարական պետության սեփականությունը և հատկացվում առողջապահության օրգաններին՝ բուժական նպատակներով օգտագործելու համար։

Հետագայում՝ 1920 թվականի դեկտեմբերի 21-ին և 1921 թվականի հունիսի 11-ին, ի զարգացումն վերոհիշյալ դեկրետի, Լենինն ստորագրում է երկու նոր դեկրետներ Ղրիմում, Հյուսիսային Կովկասի հանքային ջրերում, Սոչիում և այլ առողջարաններում կուրորտների զարգացման-ընդարձակման և կուրորտներում աշխատավոր լայն զանգվածների բուժական գործի կազմակերպման մասին։

Լենինն այնքան խոշոր նշանակություն էր տալիս աշխատավորության կուրորտա-սանատորական բուժական գործին, որ 1921 թվականի հունիսի 11-ի իր ստորագրած դեկրետով սովետական օրգանների առաջ խիստ պահանջ էր դնում Ղրիմում, Օդեսայում, կովկասյան հանքային ջրերում, Սոչիում և այլ վայրերում սանատորիաների համար պիտանի շենքերը վերցնել «սա-

վետական և զինվորական հիմնարկություններից, սովետական ծառայողներից և առհասարակ կուրորտային բուժման հետ կապ չունեցող առողջ քաղաքացիներից և դրանք հանձնել կուրորտային վարչությունների տնօրինությանը»[1] աշխատավորության բուժական գործը կուրորտներում կազմակերպելու և ընդարձակելու համար։

Սովետական կառավարությունն իրագործելով լենինյան դեկրետները, հսկայական թափով զարկ տվեց կուրորտների, սանատորիաների, հանգստյան տների և բուժական այլ ձեռնարկությունների շինարարության ու ընդարձակման գործին։

Անցած քառասուն տարիներում Սովետական կառավարությունը հսկայական միջոցներ է ներդրել մեր աշխատավորության առողջության գործը կազմակերպելու և այն իր կոչման բարձրության վրա դնելու համար։ Եթե 1926/27 տնտեսական տարում այդ նպատակի համար ծախսված է եղել 660 միլիոն ռուբլի, ապա 1940 թվականին այդ գումարը հասավ 11200 միլիոն ռուբլու, 1951 թվականին՝ 26400 միլիոն ռուբլու, իսկ 1957 թվականին՝ 57600 միլիոն ռուբլու։

Այս թվերը ցույց են տալիս, թե մեր պարտիան ինչպիսի կարևոր նշանակություն է տալիս ժողովրդական առողջապահության գործին, որի օրգանական մասն են կազմում կուրորտների և սանատորիաների աշխատանքները։

Չնայած Ղրիմում, Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասի հանքային ջրերում և ժամանակավորապես օկուպացիայի ենթարկված կուրորտային այլ վայրերում գերմանա-ֆաշիստական զավթիչների կատարած մեծ ավերածություններին, մեր կառավարության գործ դրած հսկայական ջանքերի շնորհիվ ոչ միայն վերականգնվել են ավերված կուրորտներն ու սանատորիաները, այլև կառուցվել են բազմաթիվ նոր սանատորիաներ և հանգստյան տներ։

Եթե 1939 թվականին Սովետական Միությունում գործում էին 1828 սանատորիաներ 239 հազար մահճակալային ֆոնդով, ապա 1950 թվականին սանատորիաների թիվը հասավ 2070-ի՝ 255 հազար մահճակալային ֆոնդով, իսկ 1955 թվականին սանատորիաների քանակը բարձրացավ 2178-ի՝ 289 հազար մահճակալային ֆոնդով։ Միայն 1957 թվականի ընթացքում 444 հազար մահճակալային ֆոնդ ունեցող մեր 3118 կուրորտներում, սանատորիաներում և հանգստյան տներում բուժվել և հանգստացել են հինգ միլիոնից ավելի բանվորներ, ծառայողներ, գիտական աշխատողներ, մասնագետներ, կոլտնտեսականներ և մեր աշխատավորների երեխաներ։

Մեր անվանի կուրորտոլոգների և կուրորտային ռեսուրսներն ուսումնասիրող գիտահետազոտական ինստիտուտների ջանքերով Սովետական Միության մեջ հետազոտված և ուսումնասիրված են 4000-ից ավելի հանքային աղբյուրներ, 700 ցեխաբուժման լճեր ու լճակներ և բուժական խոշոր արժեք ներկայացնող 450 շրջաններ։ Բուժական տեսակետից խոշոր նշանակություն ունեցող այս ռեսուրսներն ի սպաս են դրված մեր աշխատավորության առողջության պահպանման գործին։

Բուժիչ նշանակություն ունեցող ռեսուրսների ուսումնասիրությունը շարունակվում է և այսօր։ Վեր է կասկածից, որ մոտակա տարիներին մեր երկրում ավելի կընդարձակվի հանքային բուժիչ ջրերի օգտագործումը։

[1] Сорок лет советского здравоохранения, стр. 275, 1957 г.



Սանատորիաների և հանգստյան տների քանակի ու դրանցում եղած մահճակալային ֆոնդի աճման մասին պարզ պատկերացում է տալիս ներքոհիշյալ աղյուսակը՝ ըստ ռեսպուբլիկաների.

| Ռեսպուբլիկա | Ընդամենը առողջարան | Մահճակալային ֆոնդ | Հանգ. տներ | Ազգաբնակչ. 1000 շնչին ընկնում է մահճակալ |
|---|---|---|---|---|
| ՌՍՖՍՌ | 1801 | 259.8 | 609 | 22,8 |
| Ուկրաինական ՍՍՌ | 655 | 94.6 | 149 | 23 3 |
| Բելոռուսական ՍՍՌ | 51 | 6.3 | 12 | 7 8 |
| Ուզբեկական ՍՍՌ | 56 | 9,2 | 24 | 12,6 |
| Ղազախական ՍՍՌ | 77 | 10 0 | 27 | 12 9 |
| Վրացական ՍՍՌ | 143 | 17.8 | 39 | 45 0 |
| Ադրբեջանական ՍՍՌ | 65 | 5 8 | 10 | 17,0 |
| Լիտվական ՍՍՌ | 40 | 6 3 | 10 | 23,3 |
| Մոլդավական ՍՍՌ | 9 | 1,2 | 3 | 4.4 |
| Լատվիական ՍՍՌ | 97 | 15,9 | 38 | 79,5 |
| Կիրգիզական ՍՍՌ | 15 | 3.1 | 4 | 16.0 |
| Տաջիկական ՍՍՌ | 14 | 2.0 | 5 | 11,2 |
| Հայկական ՍՍՌ | 29 | 3,8 | 8 | 23,8 |
| Թուրքմենական ՍՍՌ | 21 | 2,9 | 7 | 20,7 |
| Էստոնական ՍՍՌ | 46 | 4.4 | 5 | 40,0 |

Սովետական Հայաստանը մեր մեծ Միության բազմազգ համերաշխ ըն-
Սովետական Հայաստանը մեր մեծ Միության բազմազգ համերաշխ ռեսուրսներ
տանիքում պատկանում է կուրորտային չափազանց հարուստ ռեսուրսներ
ունեցող ռեսպուբլիկաների թվին։ Դեռ ավելին, ակադեմիկոս Լ. Հովհաննիս-
յանի ուսումնասիրություններից երևում է, որ մինչև այժմ մեր ռեսպուբլիկա-
յում հայտնաբերված են 250 խումբ ներկայացնող 1000-ից ավելի հանքային
բուժիչ աղբյուրներ։ Կուրորտային հարստությունների և հատկապես հանքա-
յին բուժիչ ջրերի բազմազանության ու քանակի տեսակետից Հայաստանը
դասվում է աշխարհի հարուստ երկրների շարքին։
Սակայն գաղտնիք չէ, որ մինչև սովետական կարգերի հաստատումը
Հայաստանում հիշյալ կուրորտային հարստությունները բոլորովին չեն օգ-
տագործվել և հայ աշխատավորը գաղափար չի ունեցել ո՛չ կուրորտի և ո՛չ
էլ կուրորտային կազմակերպված բուժման մասին։
Կուրորտային-սանատորական շինարարության սկիզբը Սովետական Հա-
յաստանում դրվել է 1925 թվականներից, որն իր զարգացման լայն հունի մեջ
է մտել ավելի ուշ ժամանակներից՝ 1930-ական թվականներից։ Իսկ այսօր
մեր աքանչելի Արզնին, Դիլիջանը և Ջերմուկը հայտնի են ոչ միայն Հայաս-
տանում, այլև նրա սահմաններից էլ դուրս։ Բավական է հիշատակել, որ
1957 թվականի կուրորտային սեզոնում Սովետական Միության տարբեր ծայ-
րերից՝ Սիբիրից, Կամչատկայից, Հեռավոր Արևելքից, Մոսկվայից, Լենին-
գրադից, Ուրալից, Ղազախստանից, Ուկրաինայից և այլ ռեսպուբլիկաներից
ու մարզերից Արզնիում, Ջերմուկում, Դիլիջանում և Կիրովականում բուժման
էին եկել 3500-ից ավելի բանվորներ և ծառայողներ, որը կազմում է հիշյալ
սանատորիաներում բուժվող ընդհանուր հիվանդների 49 տոկոսը։ Այս հան-
գամանքը Կուրորտային վարչությանը ավելի քան պարտավորեցնում է լրջո-
րեն մտածելու մեր կուրորտների բարեկարգման մասին։
1957 թվականին մեզ մոտ՝ Հայաստանում գործել են 29 սանատորիաներ
և հանգստյան տներ՝ 3800 մահճակալային ֆոնդով։ Ազգաբնակության յուրա-
քանչյուր 10000 շնչին ընկնող մահճակալների քանակով Հայաստանը Սովե-

տական Միությունում բռնում է չորրորդ տեղը, զիջելով միայն Լատվիական, Վրացական և Էստոնական ռեսպուբլիկաներին, ինչպես այդ երևում է վերը բերած աղյուսակից: Սակայն պետք է արձանագրել, որ մենք օգտագործում ենք մեր ռեսպուբլիկայի բուժական չափազանց հարուստ ռեսուրսների նվազագույն մասը միայն: Հայտնաբերված և մեծ մասամբ ուսումնասիրված 250 խումբ հանքային բուժիչ ջրերից մինչև օրս օգտագործվում է շատ չնչին մասը՝ 5 տոկոսից էլ պակաս: Իսկ եթե հաշվի առնենք հանքային ջրերի հսկայական դեբիտը (միայն Արզնիում, Ջերմուկում, Հանքավանում և Արարատում, մեկ օրում գերազանցում է 15 միլիոն լիտրից), ապա բուժական նպատակներով օգտագործած հանքային ջրերի քանակը շատ աննշան մասը կկազմի: 1913 թվականին ողջ Ռուսաստանում հանքային բուժիչ ջրերի 4 գործարաններում լցնում էին ընդամենը 18 միլիոն շիշ, 1957 թվականին այդ գործարանների թիվը հասավ 31-ի, 240 միլիոն շշի արտադրողականությամբ, որից Հայաստանում՝ 33 միլիոն շիշ: 1958 թվականին նախատեսված է լցնել 400 միլիոն շիշ հանքային բուժիչ ջուր, որից Հայաստանում՝ 45 միլիոն շիշ: Այս քանակությունը կազմում է մեր հանքային բուժիչ ջրերի 4 օրվա դեբիտը միայն: Մեր ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում (Բասարգեչար, Կիրովական, Մարտունի, Ստեփանավան և այլն) եղած տորֆային ցեխը բուժական նպատակներով գրեթե բոլորովին չի օգտագործվում, եթե հաշվի չառնենք Կիրովականի սանատորիայի այդ ուղղությամբ կատարած թույլ փորձերը:

Մեր ռեսպուբլիկան անսպառ հնարավորություններ ունի կլիմայաբուժական կայաններ ստեղծելու ո՛չ միայն թոքային տուբերկուլյոզը, այլև արտաթոքային տուբերկուլյոզը բուժելու: Մոտակա 5—7 տարիների ընթացքում Դիլիջանի կուրորտի մահճակալային ֆոնդը կհասնի 1100-ի, ներկայիս 450-ի փոխարեն: Դիլիջան կուրորտի հեռանկարային զարգացման պլանում նախատեսված է «Դիլիջան» հանքային բուժիչ ջրի («Բլդան չայ») բազայի վրա, որն ունի Բորժոմի հանքային ջրի բուժիչ կարողությունը, կազմակերպել մարսողական օրգանների հիվանդությունների և տուբերկուլյոզի կոմպլեքսային բուժում: Դիլիջանն այս տեսակետից ունի մի շարք առավելություններ և բացի նրանից առայժմ մեր Միության սահմաններում չկա մի այլ կուրորտ-սանատորիա, որտեղ հնարավոր լինի և՛ տուբերկուլյոզը և՛ աղե-ստամոքսային տրակտի որոշ հիվանդություններ հաջողությամբ բուժելու: Դիլիջանը իր ունեցած հանքային ջրի շնորհիվ հնարավորություն ունի այդպիսի միակ կուրորտը դառնալու ողջ Միության մեջ:

Դիլիջանի քաղսովետը և Հայկական ՍՍՌ Կոմունալ մինիստրությունը ամենակտրուկ միջոցների պետք է դիմեն, կարճ ժամանակամիջոցում դրականորեն լուծելու Դիլիջանի ջրմուղ-կոյուղու կառուցման և ավարտման աշխատանքները, առանց որի, հասկանալի է, խոսք չի կարող լինել բարեկարգ կուրորտի մասին: Մենք կարծում ենք, որ Պետպլանը հանգամանորեն պետք է մշակի և կառավարության հաստատմանը ներկայացնի Դիլիջանի, որպես կուրորտի, կոմպլեքսային զարգացման պլանը բոլոր մինիստրությունների և գերատեսչությունների գծով: Այս դեպքում իրոք կարելի կլինի հույս ունենալ, որ մոտակա 5—7 տարիների ընթացքում Դիլիջանը կդառնա մեր բարեկարգ կուրորտը: Էլ չենք խոսում այն մասին, որ սքանչելի հանգստյան վայր կարող է լինել Դիլիջանից ոչ հեռու եղած Պարզ լճի շրջակայքը, որն իր գեղեցկությամբ ու փարթամ անտառներով չի զիջում աշխարհահռչակ Ռիցային:



Որքան լավ կլիներ, որ տուրիստական կազմակերպությունն այստեղ հիմներ իր բազան, իսկ սպորտընկերությունները ամառը զբաղվեին թիավարելու, իսկ ձմեռը՝ չմուշկային սպորտով:

Սևանի գեղատեսիլ զմրուխտյա լիճը իր առողջարար ջրով ու օդով, կանաչապատ լեռներով մեր աշխատավորության լավագույն հանգստավայրը պետք է դառնա: Այս տեսակետից խոշոր արժեք է ներկայացնում Սևանա լճի արևավառ ափը («Գյունե»), որտեղ տարեկան միջին ջերմությունը բարձր է Երևանից: Մեր մասնագետ-կուրորտոլոգների և կլիմատոլոգների ուսումնասիրություններից երևում է, որ Սևանի արևավառ ափի կլիման իր բուժիչ և կազդուրիչ հատկություններով շատ բարձր է, քան կղզու շրջակայքի կլիման: Հյուսիսային սառը քամիները, որ կղզում անպակաս են, գրեթե բացակայում են Սևանի արևավառ ափին:

Կուրորտների, սանատորիաների և հանգստյան տների զարգացման հեռանկարային յոթամյա պլանով նախատեսված է այստեղ կառուցել նոր հանգստյան տուն (ոչ հեռու հովեկների համար կառուցվելիք ավան-ամառանոցից): Արդեն ավարտված են կղզին ռոգելու ջրավազանի կառուցման աշխատանքները, սակայն շատ դանդաղորեն է գնում կղզու ծառապատումը: Գյուղատնտեսության մինիստրության անտառապատման վարչությունը պետք է կատարի Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշումը կղզու ծառապատման մասին: Այս տարի Սևանի հանգստյան տան տերիտորիայում 1000-ից ավելի զանազան ծառեր են տնկված: Մնում է հետևել և լավ խնամել ծառերը, որպեսզի այդ շնորհալի աշխատանքն իզուր չկորչի:

Մեր գործող կուրորտների շարքում առանձնահատուկ տեղ է գրավում Ջերմուկը: Այս կուրորտը Հայաստանի կուրորտներից ամենաերիտասարդ, բայց և ամենակարևոր կուրորտն է: Այս կուրորտում եղած հանքային ջրերի բուժիչ հատկությունը, ինչպես ասում է պրոֆ. Ա. Ա. Մելիք-Ադամյանը, դեռ շատ վաղուց է հայտնի եղել Դարալագյազի շրջակայքի բնակիչներին, որոնք անհիշելի ժամանակներից այստեղ են եկել իրենց հոդացավերը բուժելու համար: Ջերմուկի հանքային բուժիչ ջուրն իր շրջապատի հայ և ադրբեջանցի աշխատավորության շրջանում այնպիսի համբավ է ձեռք բերել, որ դարերի ընթացքում այն կոչվելիս է եղել «անմահական ջուր»:

Ջերմուկի բուժավայրի նշանակությունը, ուր հանքային բուժիչ ջուրը հաջողությամբ օգտագործվում է լյարդի, լեղապարկի, ստամոքսի խրոնիկական բորբոքումները, շաքարախտային հիվանդությունները և հենա-շարժական օրգանների մի շարք հիվանդությունները բուժելու համար, դուրս է գալիս մեր ռեսպուբլիկայի սահմաններից: Ջերմուկի հանքային ջուրն իր հատկությունների շնորհիվ առաջնակարգ տեղ է գրավել մեր Միության մեջ:

Սովետական Միության հայտնի կուրորտոլոգներից պրոֆ. Ն. Ն. Սլավիանովը դեռ 1945 թվականի ապրիլի 17-ին, խոսելով Ջերմուկի հանքային ջրերի բուժիչ հատկությունների մասին, ասում է հետևյալը. «Երկրագնդի բոլոր հանքային ջրերից Ջերմուկի հանքային ջուրն ամենամոտն է Կարլովի Վարի Շպրուդելի հանքային ջրին իր ֆիզիկո-քիմիական կազմով և ջերմաստիճանով: Նա պարունակում է գլաուբերյան աղի մեծ քանակություն, ածխաթթու, մեծ քանակությամբ հազվագյուտ էլեմենտներ... Հանքային ջուրն ունի հսկայական դեբիտ (700 հազար լիտրից ավելի, իսկ այժմ 24 ժամում երկու միլիոն լիտրից ավելի), ջերմաստիճանը հավասար է 55-ի (իսկ այժմ հավա-

սար է 64-ի)։ Այսպիսով, այս հանքային ջուրը պետք է ունենա ոչ միայն
համամիութենական նշանակություն, այլև համաշխարհային նշանակություն,
ինչպիսին ունի Կարլովի Վարի Շպրուդելը»[1]։

Պրոֆ. Վ. Վ. Վլադիմիրսկին ուղղակի հայտարարում է, որ «Հանքային
ջրերի հսկայական դեբիտը մեզ իրավունք է տալիս մտածելու, որ Ջերմուկ
կուրորտը կարող է դառնալ համաշխարհային մասշտաբի կուրորտ... Կուրոր-
տի շինարարությունը,— շարունակում է նա,— պետք է լինի հիմնական, որ-
պեսզի հնարավոր լինի ձմեռը ևս օգտագործել։ Անմիջապես պետք է կառու-
ցել 1500—2000 մահճակալի համար...» (նույն տեղը, էջ 259)։

Ի՞նչ է արվել մինչև այժմ և ի՞նչ է նախագծվում անելու մոտակա տա-
րիներին, որպեսզի իրոք Ջերմուկը դառնա անվանի — ճանաչված կուրորտ և
Սովետական Միության կուրորտային սիստեմում գրավի իր արժանի տեղը։

Ջերմուկը որպես բուժավայր ունի բնական բուժական անսպառ հարստու-
թյուններ՝ հանքային ջերմաղբյուրներ, բնական բուժիչ ցեխ, խմելու սառնո-
րակ բազմաթիվ աղբյուրներ և անգնահատելի առողջ կլիմա, որոնցով կարող
է դասվել մեր լավագույն կուրորտների շարքը։ Սակայն, դժբախտաբար, այդ
ուղղությամբ մինչև օրս քիչ բան է արված։ Անասելի դանդաղ են ընթանում
կուրորտի ընդհանուր բարեկարգման աշխատանքները։ Զահանված դանդաղ-
կոտությամբ է առաջ գնում նաև կուրորտի ջրմուղ-կոյուղու կառուցման գոր-
ծը։ Ի՞նչ առաջնակարգ կուրորտի մասին կարող է խոսք լինել, երբ այդ կու-
րորտը մինչև օրս կոյուղի չունի։ Բազմաթիվ սառնորակ աղբյուրների առկա-
յության դեպքում կուրորտը չունի նաև խմելու ջուր։ Հայկական ՍՍՌ Կոմու-
նալ մինիստրությունը, որի վրա են դրված Ջերմուկի ընդհանուր բարեկարգ-
ման, ջրմուղ-կոյուղու կառուցման աշխատանքները, մինչև այժմ շատ քիչ
բան է արել այդ ուղղությամբ։ Ջերմուկում միայն կոմունալ բաժին ստեղծե-
լով գործն առաջ չի գնա։ Նախ անհրաժեշտ է, որ այդ բաժինը կոմպլեկտա-
վորվի բանիմաց և սրտացավ աշխատակիցներով, ապա մինիստրության կող-
մից գործնական օժանդակություն ցույց տրվի կուրորտի բարեկարգմանը, ծա-
ռապատմանը և ջրմուղ-կոյուղու կառուցմանը։ Մեծ չափով գործը ձգձգվում է
և այն պատճառով, որ Ժողտնտխորհի Նախագծման ինստիտուտը Ջերմուկ
կուրորտի ջրմուղ-կոյուղու և կենտրոնական ջեռուցման սիստեմի նախագծերը
չի ավարտում։

Ջերմուկ կուրորտի զարգացման յոթամյա պլանով (1959—1965 թթ.)
նախատեսված է սանատորիաների մահճակալների թիվը 1965 թվականին
հասցնել 1400-ի, այժմյան ունեցած 450 մահճակալային ֆոնդի դիմաց։ Ըստ
որում, պետք է կառուցվեն չորս սանատորիաներ հասակավորների համար՝ 650
մահճակալով, մեկ մանկական սանատորիա՝ 100 մահճակալով և պանսիոնատ
200 մահճակալով՝ ամբուլատոր բուժման համար։ Մինչև 1960 թվականը
պետք է ավարտել վաննաների նոր շենքի կառուցումը, որն ունենալու է 40
կաբին, իր ցեխաբուժման բաժանմունքով։ Նախատեսված է կառուցել ընդ-
հանուր սննդի բլոկ, ընդարձակ ճաշարանով՝ 500 հիվանդի միանգամից սպա-
սարկելու կարողությամբ։ Պետք է կառուցվի նաև կուրորտային ընդհանուր
դահլիճ իր բոլոր խաղասենյակներով։ Կուրորտում աշխատող անձնակազմի

[1] „Бальнео-климатический курорт Джермук“, стр. 256, 1948 г.



համար նախատեսված է կառուցել 6000 քառակուսի մետր մակերես ունեցող
բնակելի տներ, մանկապարտեզի հատուկ շենք և այլն։

Միայն առողջապահության օրգանների գծով նախատեսված է 1959—
1965 թվականների ընթացքում Ջերմուկի կուրորտ-սանատորական կապիտալ
շինարարության գծով ներդնել շուրջ 70 միլիոն ռուբլի, իսկ այլ գերատեսչու-
թյունների գծով (կոմունալ, լուսավորության, առևտրի, կապի, շինարարու-
թյան մինիստրություններ, Ժողտնտխորհի առանձին վարչություններ, Ճանա-
պարհաշինության գլխավոր վարչություն և այլն)՝ շուրջ 160 միլիոն ռուբլի։
Այդ նշանակում է, որ միջին թվով տարեկան ներդրվելու է շուրջ 33 միլիոն
ռուբլի։ Այսպիսի գումարի շինարարություն կատարելու համար անպայման
կպահանջվի շինարարական տրեստի ստեղծում Ջերմուկում, տեխնիկական
հզոր բազայով և բարձրորակ մասնագիտական կադրերով։ Պետք է, որ Շինա-
րարության մինիստրությունը և Ժողտնտխորհի Շինանյութերի վարչությունը
այժմվանից հոգ տանեն Ջերմուկի շրջակայքում անհրաժեշտ շինանյութեր
գտնելու համար, որովհետև շինարարությունը վերին աստիճանի թանկ կը-
նստի, եթե շինարարության համար ամեն ինչ Երևանից տեղափոխվի։

Կասկածից վեր է, որ Ջերմուկի զարգացման յոթամյա պլանով նախա-
տեսված բոլոր կառուցումները և բարեկարգման աշխատանքները հաջողու-
թյամբ ավարտելիս, այս կուրորտը կդառնա աշխարհահռչակ բարեկարգ
կուրորտներից մեկը։ Պետք է մեր ռեսպուբլիկայի բոլոր գերատեսչություն-
ները և հատկապես Ժողտնտխորհը լուրջ ուշադրություն դարձնեն իրենց գծով
Ջերմուկում կատարվող շինարարության վրա, սահմանված ժամկետներում
այն ավարտելու համար։

Առանձին կարևոր նշանակություն է ստանում Ջերմուկ կուրորտի կենտ-
րոնական ջեռուցման հարցը։ Այս նպատակի համար պետք է լրջորեն մտա-
ծել օգտագործելու Ջերմուկի հանքային ջրի բարձր աստիճանը (64), նախօրոք
մշակելով հանքային ջրի տեխնոլոգիան, նստվածքների դեմ պայքարելու
էֆեկտիվ միջոցներ, ջեռուցման սիստեմը և այլն։ Այս գործում մեծ օժան-
դակություն կարող է ցույց տալ պոլիտեխնիկ ինստիտուտը, Ակադեմիայի
քիմիական ինստիտուտի հետ միասին։ Ջերմուկի հանքային տաք ջրի էներ-
գիան ջեռուցման համար օգտագործելը նյութական միջոցների հսկայական
տնտեսում կտա և մյուս կողմից՝ կուրորտը զերծ կմնա կենտրոնական ջե-
ռուցման ծխնելույզների միջոցով օդն ապականելու վտանգից։

Արզնին, որ Հայաստանի ամենահին կուրորտն է, արդեն վաղուց է դուրս
եկել մեր ռեսպուբլիկայի շրջանակներից և միութենական ճանաչման արժա-
նացել։ Որպես սրտային հիվանդություններ բուժող կուրորտ, Արզնին իր
բուժման արդյունքներով բոլորովին էլ չի զիջում Կիսլովոդսկուն։

Մոտ ժամանակներս շարք է մտնում Արզնու կլինիկական նոր սանատո-
րիան 250 մահճակալով։ Այս սանատորիան իր կահավորմամբ և ընդհանուր
հարմարություններով մեր Միության առաջնակարգ սանատորիաներից մեկը
կլինի։ Միայն անհրաժեշտ է լուրջ և գործնական միջոցների դիմել սանատո-
րիայի շրջակայքը ծառապատելու և տերիտորիան բարեկարգելու համար։

Այս տարի ավարտվելու է Արզնու հանքային ջրերի ըմպելասրահի կա-
ռուցումը, իսկ 1959 թվականին սկսվելու են առաջին կորպուսի վերակառուց-
ման աշխատանքները։

Ռեսպուբլիկայի մյուս առողջարաններից ուշադրության է արժանի Կի-

րովականի «Արմենիա» սանատորիան, որն ընդարձակվելու շատ մեծ հնարավորություններ ունի։ 1958 թվականի կուրորտային սեզոնից այս սանատորիան աշխատելու է տարեպտույտ, որովհետև մայիսի 10-ից լրիվ ավարտվել են կենտրոնական ջեռուցում անցկացնելու աշխատանքները։ Սկսվել են նոր ճաշարանի կառուցման աշխատանքները և ոչ ուշ քան այս տարվա օգոստոս ամիսը լրիվ պատրաստ կլինի սանատորիայի ձմեռային ճաշարանը։ Ամբողջովին վերափոխվել և ընդարձակվել է Կիրովականի սանատորիայի տորֆային ցեխի բուժման բաժինը, որը շատ մեծ ապագա ունի։ Այսուհետև Կիրովականի սանատորիան ոչ միայն կբուժի ջղային հիվանդություններով տառապողներին, այլև դրան զուգընթաց, տորֆային ցեխը բուժական նպատակներով օգտագործելու շնորհիվ սանատորիայի առաջ մեծ հեռանկար է բացվում հենա-շարժական օրգանների ռևմատիկ ցավերը բուժելու համար։ 1957 թվականի կուրորտային սեզոնում ցեխաբուժում ստացած 415 հիվանդներից միանգամայն դրական արդյունքներով սանատորիայից դուրս են գրվել 400 հոգի։

1959—1965 թվականներին ռեսպուբլիկայի կուրորտների, սանատորիաների, հանգստյան տների ընդարձակման և զարգացման վրա նախատեսված է ծախսել շուրջ 102 միլիոն ռուբլի, չհաշված բնակարանային շինարարության վրա ներդրվելիք գումարները։ Նախատեսված է նոր սանատորիաներ կառուցել Ախտայի շրջանի Հանքավանում, որի հանքային բուժիչ ջուրն իր ֆիզիկո-քիմիական բաղադրությամբ և բուժիչ հատկություններով նման է Էսենտուկիի № 17 աղբյուրի ջրին, այն տարբերությամբ միայն, որ Հանքավանի ջրի ջերմաստիճանը հասնում է 34—35°-ի, որպիսի հանգամանքը, կասկածից վեր է, մեծ առավելություն է տալիս Հանքավանի ջրին՝ համեմատած Էսենտուկիի ջրի հետ, որն ունի 21—24° ջերմություն։ Հանքավանի սանատորիայի կառուցումը պետք է արագացնել, որովհետև դրա կարիքը ռեսպուբլիկայում չափազանց շատ է։

Հանքավանը լավագույն առողջարան դարձնելու համար մեծ անելիքներ ունեն Ժողտնտխորհը, նրա առանձին վարչությունները, Սոցիալական ապահովագրության մինիստրությունը և այլ գերատեսչությունները։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 20-ի որոշումով բոլոր գերատեսչություններին և մինիստրություններին պարտավորեցվել է շարունակել կուրորտների, սանատորիաների և հանգստյան տների կառուցումն իրենց սիստեմում աշխատող բանվոր ծառայողների բուժումն ու հանգիստը կազմակերպելու համար։ Սակայն մեզ մոտ, Հայաստանում, այս ուղղությամբ դեռ ոչինչ չի արված։

Շատ լավ կլինի, որ այս շնորհակալ գործի սկիզբը դնի Ժողտնտխորհը՝ Հանքավանում 200 մահճակալանոց մի սանատորիայի կառուցումն սկսելով, որի պահանջն անսահման է։ Մեր մի շարք խոշոր գործարաններ մեծ հնարավորություն ունեն դիրեկտորական ֆոնդերի հաշվին առողջարաններ և հանգստյան տներ կառուցելու իրենց բանվոր ծառայողների համար։ Բայց, դժբախտաբար, այս ուղղությամբ դեռ ոչինչ չի ձեռնարկված։ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների կողմից մեծ պահանջ կա հատկապես Էսենտուկիում, Ցխալտուբոյում և Կիսլովոդսկում բուժման ուղարկելու կոլտնտեսականներին։ Սակայն մեր մի շարք շրջանների՝ Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և Շահումյանի շատ կոլտնտեսություններ վաղուց կարող էին



սանատորիաներ կառուցել Հանքավանում, Արարատում, Արզնիում և Ջերմուկում, ուր կարելի կլիներ բուժման ուղարկել շատ և շատ կոլտնտեսականներին։ Ժամանակն է, որ Գյուղատնտեսության մինիստրությունը և շատ կոլտնտեսությունների վարչություններ այս ուղղությամբ մտածեն և գործնական քայլերի դիմեն։ Կուրորտների, սանատորիաների և հանգստյան տների գլխավոր վարչությունը մեր կուրորտներում մեծ սիրով տեղ կհատկացնի այն կազմակերպություններին և հիմնարկություններին, որոնք ցանկություն կհայտնեն սանատորիաներ կամ հանգստյան տներ կառուցելու իրենց բանվոր ծառայողների և կոլտնտեսականների համար։ Դեռ ավելին. այդպիսի կազմակերպություններին կտրվեն նաև սանատորիաներ և հանգստյան տներ կառուցելու օրինակելի նախագծեր և նախահաշիվներ։

Կուրորտների զարգացման յոթամյա պլանով նախատեսված է սանատորիա կառուցել նաև Արարատ կայարանի մոտ եղած հանքային ջրի բազայի վրա։ Այստեղի հանքային ջուրն իր ֆիզիկո-քիմիական բաղադրությամբ և բուժիչ հատկություններով նմանվում է Ցխալտուբոյի (Վրաստան) հանքային ջրին և այնքան առատ է, որ գետակի տպավորություն է թողնում։ Այս հանքային աղբյուրների օրական դեբիտը հասնում է մինչև 4 միլիոն լիտրի, սակայն, դժբախտաբար, բուժական մեծ արժեք ներկայացնող այս անսահման հարստությունից մենք դեռ կազմակերպված ձևով չենք օգտվում։ Զարմանալին այն է, որ մեր Առողջապահության մինիստրությանը բոլորովին չի անհանգստացնում այն հանգամանքը, որ հարյուրավոր բանվորներ, ծառայողներ և կոլտնտեսականներ, առանց որևէ հսկողության ինքնագլուխ լողանում են Արարատի հանքային ջրի ավազաններում։ Ամեն կերպ պետք է աշխատել, որպեսզի մոտակա երկու-երեք տարում այստեղ կառուցվի նախատեսված սանատորիան, և այդպիսով վերջ տրվի հանքային ջրի անկազմակերպ օգտագործմանը, որը կարող է վատ հետևանքներ ունենալ անհարկի լողացողների համար։

Հետևողականորեն կիրառելով պարտիայի XX համագումարի որոշումները՝ աշխատավորության բուժական գործը և հանգիստը խելացիորեն կազմակերպելու մասին, առողջապահության օրգանները և առաջին հերթին Կուրորտների, սանատորիաների և հանգստյան տների գլխավոր վարչությունը, առողջարանների գլխավոր բժիշկները պետք է կանգ չառնեն ոչ մի բանի առաջ, արմատապես բարելավելու հիվանդների բուժսպասարկման որակը, ավելի բովանդակալից դարձնելու կուլտ-մասսայական աշխատանքները, բարեկարգելու առողջարանների շրջակայքը, ծառազարդելու և կանաչապատելու այն։ Մենք ունենք բոլոր անհրաժեշտ պայմանները պատվով կատարելու կուրորտների զարգացման յոթամյա պլանով նախատեսված շինարարությունը և մոտակա տարիների ընթացքում մեր առողջարանների ընդհանուր մակարդակը բարձրացնելու Սովետական Միության առաջավոր և բարեկարգ կուրորտների մակարդակին։

---

# ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Գորիսի շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները և
ոչխարաբուծության բնագավառի աշխատողները հետևողականորեն կենսա-
գործելով մեր պարտիայի ու կառավարության որոշումները, վերջին տարի-
ներին որոշակի աշխատանք կատարեցին ոչխարաբուծության զարգացման
գործում և հասան լուրջ հաջողությունների: Դեռևս 1956 թվականին շրջանի
ոչխարաբույծները կատարեցին վեցերորդ հնգամյակի վերջին տարվա բրդա-
տվության առաջադրանքը, յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը հասցնե-
լով 3,4 կիլոգրամի: Նրանք պատվով են կատարում նաև մսի բալանսում
ոչխարի մսի տեսակարար կշիռը բարձրացնելու խնդիրը: Եթե 1950 թվականին
շրջանում մսի արտադրության բալանսում ոչխարի միսը կազմում էր 2500
ցենտներ, ապա 1957 թվականին այն եռապատկվեց, հասնելով 7556 ցենտ-
ների, որը կազմում է շրջանի մսի համախառն արտադրանքի 57 տոկոսը, իսկ
1960 թվականին այն հասնելու է 75—80 տոկոսի, կամ ամեն տարի պետու-
թյանն է հանձնվելու և վաճառքի է հանվելու 25.000 գլուխ ոչխար՝ 12-ից
12,5 հազար ցենտներ կենդանի քաշով:

Ոչխարաբուծության մթերատվության բարձրացման շնորհիվ զգալիորեն
ավելացան նաև կոլտնտեսությունների դրամական եկամուտները: Շրջանում
ոչխարաբուծությունից ստացված դրամական եկամուտներն ըստ տարիների
հետևյալ պատկերն է ներկայացնում.

| 1950 թ. | 1954 թ. | 1955 թ. | 1957 թ. |
|---|---|---|---|
| 492.634 ռ. | 3.981.917 ռ. | 5.619.822 ռ. | 7.301.484 ռ. |

Շրջանի կոլտնտեսություններն այս նվաճումներին հասել են ոչխարների
բուծման և խնամքի առաջավոր մեթոդներ կիրառելու, առաջին հերթին ոչ-
խարների խոր աշնանային, կամ ձմեռային ծին կազմակերպելու միջոցով:
Խոր աշնանային ծնին ոչխարաբուծական ֆերմաները նախապատրաստվում
են սկսած մայիսի կեսից այն հաշվով, որ հունիսի 1-ից մինչև հուլիսի կեսը
ամառային արոտավայրերում անցկացվի ոչխարների արհեստական սերմ-
նավորում: Իսկ այս տարի կոլտնտեսությունները ոչխարների զուգավորման
նախապատրաստումը սկսել են ապրիլի կեսերից, որպեսզի ոչխարների ծինն
ամբողջապես ավարտվի նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին:

Խոր աշնանային կամ ձմեռային ծինը գարնանային ծնի համեմատու-



թյամբ ունի մի շարք առավելություններ: Նրա ամենամեծ առավելությունն
այն է, որ արոտային շրջանից մաքիները դեռ վիճակում մտնելով մսուրային
շրջան, անմիջապես ծնում են և առատ կաթով կերակրում գառներին: Այդ
պատճառով էլ նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին ծնված գառները արոտային
շրջանի նախօրյակին ունենում են 20-ից մինչև 25 կիլոգրամ կենդանի քաշ,
իսկ երբեմն էլ ավելին: Օրինակ, մայիսի 25-ի տվյալներով Խնձորեսկի կոլ-
տնտեսության ոչխարաբուծական ֆերմայի լավագույն հովիվ Ա. Ակլունցի
խնամած հոտի 400 գառից յուրաքանչյուրի միջին քաշը կազմեց 37 կիլո-
գրամ, իսկ Ազատաշենի ֆերմայում Անդրանիկ Դավթյանի խնամած գառնե-
րից յուրաքանչյուրի քաշը՝ 35 կիլոգրամ: Բացի այդ, նոյեմբեր-դեկտեմբեր
ամիսներին ծնված գառները լավ են ընտելանում շրջանի բարձրադիր արո-
տային պայմաններին, դիմանում են գարնանային աննպաստ և խիստ, փո-
փոխական եղանակներին, քիչ են ենթակա լինում հիվանդությունների և,
նորմալ խնամքի դեպքում, կորուստներ գրեթե չեն լինում: Նոյեմբեր և դեկ-
տեմբեր ամիսներին ծնված գառները առանց բացառության խուզվում են
հուլիս և օգոստոս ամիսներին և յուրաքանչյուրից ստացվում է 1—1,3 կիլո-
գրամ բուրդ, իսկ լավագույն ոչխարաբույծներ Մ. Դադունցի, Մ. Թունյանի,
Վ. Բալոյանի, Ս. Շիրինյանի, Ա. Օհանյանի և շատ ուրիշների խնամած յու-
րաքանչյուր գառից ստացվում է 1,3—1,5 կիլոգրամ բուրդ: Միայն այս մի-
ջոցառումը բրդի արտադրությունը ավելացնում է առնվազն 20—25 տոկոսով:

Այսպիսով, աշնանը ծնված գառները, գարնան ամիսներին ծնվածների
համեմատությամբ, ավելի շատ միս և բուրդ են տալիս. մսի և բրդի այդ
տարբերությունը, դրամական արտահայտությամբ (պետական գնման գնե-
րով) մեկ ոչխարից կազմում է առնվազն 120—130 ռուբլի, որն զգալիորեն
իջեցնում է ոչխարի մսի և բրդի ինքնարժեքը:

Ոչխարաբուծության մթերատվության բարձրացման կարևորագույն պայ-
մաններից է նաև ոչխարների ցեղի բարելավումը: Տասնյակ տարիների փորձը
ցույց է տվել, որ ինչքան էլ լավ կերակրվեն կոպտաբուրդ ոչխարները, նրանք
չեն տալիս այնքան բուրդ, ինչքան տալիս են նրբագեղմ և կիսանրբագեղմ
ոչխարները, էլ չենք խոսում բրդի որակի մասին: Գիտակցելով այդ, շրջանի
կոլտնտեսությունները զգալի գործ կատարեցին ոչխարների ցեղի բարելավ-
ման ուղղությամբ:

Ոչխարների ցեղի բարելավման գործում խոշորագույն նշանակություն
ունի արհեստական սերմնավորման օրինակելի կազմակերպումը, հատկապես
սերմնավորման կայանների կահավորումը և արտադրողների խնամքի բարե-
լավումը: Այդ ուղղությամբ կոլտնտեսություններն ունեն որոշակի հաջողու-
թյուններ: Ամառային արոտավայրերում կազմակերպված 23 արհեստական
սերմնավորման կայանների մեծ մասը կահավորված է պահանջվող քանա-
կությամբ սարքավորումով, որը հնարավորություն է տալիս ճիշտ ժամանա-
կին կատարելու ոչխարների սերմնավորումը: Եթե ոչխարների սերմնավո-
րումը կատարվում է ժամանակին, ապա զուգավորման առաջին 15—20 օրվա
ընթացքում ամբողջ հոտի 70—80 տոկոսը սերմնավորվում է, իսկ մնացած
մասը սերմնավորվում է հաջորդ 15 օրում: Այս դեպքում արդեն լրիվ հնարա-
վոր է հարյուր մայր ոչխարից ստանալ ու աճեցնել 110—120 և ավելի գառ:

Ոչխարների ցեղի բարելավման հետևանքով զգալիորեն բարձրացել է
ոչխարների բրդատվությունը և նրանից ստացվող դրամական եկամուտը: Մի

քանի տարի առաջ շրջանի կոլտնտեսություններում, երբ ցեղի բարելավման ուղղությամբ գրեթե ոչինչ չէր արվել, յուրաքանչյուր ոչխարի միջին բրդատվությունը չէր անցնում 1,5 կիլոգրամից, կոլտնտեսությունները չէին կատարում պետության հանդեպ ունեցած բրդի իրենց պարտավորությունները և պետությանը հանձնած բրդից ստանում էին չնչին գումարներ։ Դրությունը փոխվեց, երբ կոպտաբուրդ ոչխարները նրբագեղմ ցեղի արտադրողների հետ տրամախաչելու շնորհիվ ստացված խառնացեղ ոչխարների հենց առաջին սերունդը 40—50 տոկոսով ավելի բուրդ տվեց։ Այդ է ցույց տալիս հետևյալ աղյուսակը։

Շրջանում բրդի ավելացումն ըստ տարիների *(յուրաքանչյուր ոչխարից կիլոգրամներով)*

| 1950 թ. | 1952 թ. | 1954 թ. | 1957 թ. |
|---|---|---|---|
| 1,5 | 2,2 | 2,56 | 3,6 |

Շրջանում բրդից ստացվող դրամական եկամուտը ըստ տարիների *(ռուբլիներով)*

| 1950 թ. | 1954 թ. | 1955 թ. | 1957 թ. |
|---|---|---|---|
| 224.542 ռ. | 914.405 ռ. | 1.705.632 ռ. | 3.500 000 ռ. |

*Ավելի լավ ցուցանիշների հասան առանձին կոլտնտեսություններ։ Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղիով» կոլտնտեսությունը, որն այժմ ունի մոտ 12 հազար գլուխ ոչխար, մինչև տրամախաչման կիրառումը, ամեն մի ոչխարից միջին հաշվով տարեկան ստանում էր մեկ կիլո 300 գրամից մինչև մեկ և կես կիլոգրամ կոպիտ բուրդ։ Իսկ երբ կոլտնտեսությունը սկսեց բարելավել ոչխարների ցեղը, արմատապես փոխվեց դրությունը։ Խառնացեղ ոչխարների առաջին իսկ սերնդի բրդատվությունը բարձրացավ և հասավ երկու կիլո երկու հարյուր գրամից մինչև երկու և կես կիլոգրամի, բարելավվեց բրդի որակը, ավելացավ նրանից ստացվող դրամական եկամուտը։*

*Չդադարեցնելով տրամախաչման աշխատանքը, կոլտնտեսությունն ապահովեց երկրորդ սերնդի խառնացեղ ոչխարների ստացումը։ Այս սերնդի մեջ գերակշռում էին կիսանուրբ միատարր բուրդ ունեցողները։ Ոչխարների ցեղի բարելավման միջոցով կոլտնտեսության յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը 1956 թվականին հասավ 4,1 կիլոգրամի, բարձրացավ բրդից ստացվող դրամական եկամուտը։ Այսպես, եթե կոլտնտեսությունը 1953 թվականին բրդի դիմաց ստացել էր 149.243 ռ., ապա 1956 թվականին այն կազմեց 749.897 ռուբլի։ Խանածախի Դիմիտրովի անվան կոլտնտեսությունում կոպտաբուրդ ոչխարները նրբագեղմ ցեղի արտադրողների հետ տրամախաչելու շնորհիվ մեկ ոչխարի տարեկան միջին բրդատվությունը զգալիորեն աճեց և 1957 թվականին կազմեց 3,8 կիլոգրամ։*



Խանածախի կոլտնտեսության՝ բրդի դիմաց ստացած դրամական եկամուտը ըստ տարիների *(ռուբլիներով)*

| 1953 թ. | 1955 թ. | 1956 թ. | 1957 թ. |
|---|---|---|---|
| 67.219 | 132.201 | 388.269 | 543.194 |

*Եթե հաջողվի ցեղի բարելավման և մի շարք այլ միջոցառումների կիրառման միջոցով շրջանի կոլտնտեսությունների յուրաքանչյուր ոչխարի բրդից ստացած դրամական եկամուտը հասցնել թեկուզ Խանածախի կոլտնտեսության յուրաքանչյուր ոչխարի բրդից ստացված եկամտին, ապա կոլտնտեսությունների բրդից ստացած դրամական եկամուտները կավելանան առնվազն 3 միլիոն ռուբլով։*

*Բայց ցավն այն է, որ շրջանի ոչ բոլոր կոլտնտեսություններն են, որ հետևողական աշխատանք են տանում ոչխարաբուծության զարգացման և ոչխարների բրդատվության բարձրացման ուղղությամբ։ Բերենք մի քանի օրինակ. եթե Խանածախի Դիմիտրովի անվան կոլտնտեսությունը 1957 թվականին յուրաքանչյուր ոչխարի բրդից միջին հաշվով ստացել է 111 ռուբլի դրամական եկամուտ, Խնձորեսկը՝ 91, Կոռնիձորը՝ 94, Ազատաշենը՝ 88, ապա Շուռնուխի կոլտնտեսությունը յուրաքանչյուր ոչխարի բրդից ստացել է միայն 15 ռուբլի դրամական եկամուտ, Բարձրավանում՝ 36, Տանձատափում՝ 33, Սվարանցում՝ 21, Տաթևում՝ 42, Յայջիում՝ 40 ռուբլի և այլն։*

*Ոչխարների ցեղի բարելավման հարցով քիչ է զբաղվում Գյուղատնտեսության մինիստրությունը։ Մինիստրության ոչխարաբուծության գծով աշխատող ընկերները հոգ չեն տանում, որպեսզի մեր շրջանի գոնե ոչխարաբուծական խոշոր ֆերմաները ապահովվեն բարձր մսատու և բրդատու արտադրողներով։*

*Ոչխարաբուծության մթերատվության բարձրացման կարևոր միջոցառումներից է նաև ոչխարների ռացիոնալ կերակրումը։ Շատ տարիների փորձը ցույց է տվել, որ ոչխարների նորմալ կերակրումը մոտ 40 տոկոսով բարձրացնում է բրդատվությունը. եթե մսուրային շրջանում ոչխարները լավ են կերակրվում, ապա նրանցից ստացվում է շատ բուրդ։ Դրա համար այնպես պետք է անել, որ ոչխարները մսուրային շրջան մտնեն միջակից բարձր գիրությամբ և կերակրվեն այնպես, որ նրանց քաշը մսուրային շրջանում ոչ թե պակասի, այլ ավելանա, որպեսզի բրդի թելիկների աճը չդադարի և չխախտվի։ Բրդի որակն ընկնում է, երբ ոչխարները կերակրվում են ցածրորակ կերերով։ Բերենք այսպիսի օրինակ։ Խնձորեսկի կոլտնտեսությունը 1957 թվականին իր ունեցած ոչխարներից 3490 գլուխ տեղափոխեց Ադրբեջանական ՍՍՌ Ջեբրաիլի շրջանը։ Կոլտնտեսության վարչությունն այնտեղ չէր կուտակել պահանջվող քանակությամբ լավորակ կեր և ոչխարները մսուրային շրջանից դուրս եկան ծայր աստիճան հյուծված վիճակում։ Դեռ ոչխարները չէին հասել նորմալ գիրության, երբ նրանք խուզվեցին և ստացվեց շատ քիչ բուրդ։ Եթե կոլտնտեսությունում նորմալ պահված յուրաքանչյուր ոչխարից խուզվեց 4, իսկ որոշ հոտերում՝ 4,5 կիլոգրամ բուրդ, ապա հյուծված յուրաքանչյուր ոչխարից խուզվեց 1,5 կիլոգրամով պակաս։ Այդ է պատ-*

ճառը, որ Խնձորեսկի կոլտնտեսությունը 1957 թվականին ոչ միայն չավելացրեց բրդի արտադրությունը, այլև չպահպանեց նույնիսկ 1956 թվականի մակարդակը։

Սակայն վիճակը փոխվեց, երբ կոլտնտեսությունը 1957 թվականին կուտակեց մեծ քանակությամբ բարձրորակ կեր և մսուրային շրջանում բարելավվեց ոչխարների կերակրումն ու խնամքը։ Եվ եթե անցյալ տարի Խնձորեսկի կոլտնտեսությունը գարնանային խուզին յուրաքանչյուր ոչխարից ստացել էր 1,7 կիլոգրամ բուրդ, ապա այս տարի ստացավ 2,6 կիլոգրամ։ Կոլտնտեսության հովիվ Ա. Աթարբեկյանի խնամած 460 ոչխարից խուզվեց 1950 կիլոգրամ բուրդ, կամ յուրաքանչյուր ոչխարից ստացվեց 4,2 կիլոգրամ։ Հովիվ Խ. Ավագյանի խնամած 450 ոչխարից ստացվեց 1820 կիլոգրամ և այլն։ Նույնպիսի արդյունքներ ունեն նաև Արավուսի, Տեղի, Կոռնիձորի, Այգեձորի և այլ կոլտնտեսությունները։ Արավուսի կոլտնտեսությունը գարնանային խուզի ժամանակ յուրաքանչյուր ոչխարից, անցյալ տարվա համեմատությամբ, 800 գրամ ավելի բուրդ ստացավ, Այգեձորի կոլտնտեսությունը՝ 700 գրամ և այլն։

Ոչխարների բրդատվության բարձրացմանը մեծ չափով նպաստում է ոչխարանոցների սանիտարական լավ վիճակի ապահովումը։ Ոչխարները մաքուր չպահելու հետևանքով զգալիորեն ընկնում է բրդատվությունը։ Բրդի նորմալ աճը հատկապես խախտվում է, երբ ոչխարանոցներում նորմալ օդափոխություն չի կատարվում, երբ նրանցում տեղավորվում են նախատեսվածից ավելի ոչխարներ, որի հետևանքով ջերմաստիճանը բարձրանում և 8-ի փոխարեն հասնում է 20—30 աստիճանի, երբեմն էլ ավելին։ Այդ պատճառով էլ բրդի թելիկների աճը խիստ դանդաղում է և ոչխարների վրայից բուրդը սկսում է թափվել։ Այսպես պատահեց 1957 թվականին Խոտ, Տանձատափ, Սվարանց գյուղերի կոլտնտեսությունների ոչխարաբուծական ֆերմաների որոշ հոտերում։ Փորձը ցույց է տվել, որ ոչխարանոցներում ջերմաստիճանը չպետք է 8-ից բարձր լինի։ Եվ իսկապես, առաջնորդվելով այդ սկզբունքով, շրջանի ոչխարաբուծության առաջավորներ Ս. Մաթևոսյանը (Խանածախ), Թ. Սալբունցը (Բռուն), Գ. Այդինյանը (Տաթև), Խ. Հովակիմյանը (Քարահունջ) և շատ ուրիշներ վերջին տարիներս յուրաքանչյուր ոչխարից ստանում են 4 և ավելի կիլոգրամ բուրդ։ Ոչխարաբուծության գծով առաջավոր կոլտնտեսություններում մինչև ուշ աշնանը օր ու գիշեր, ինչպես նաև ձմռանը օրվա մեծ մասը ամբողջ հոտը պահվում է դրսում, և դա տալիս է իր դրական արդյունքը։ Այդ ուղղությամբ ուսանելի է Կիրգիզական ՍՍՌ ոչխարաբույծների փորձը։ Այնտեղ բազմաթիվ ֆերմաներ, որոնք յուրաքանչյուր ոչխարից ստանում են 5 կիլոգրամից ոչ պակաս բուրդ, ոչխարների ամբողջ հոտերը հազվագյուտ դեպքերում են տեղավորում ոչխարանոցներում, նույնիսկ ձյան դեպքում նրանք հոտերը տեղավորում են մի կողմից բաց սարայներում, որը զգալիորեն նպաստում է բրդի արտադրության ավելացմանը։

Շրջանի ոչխարաբույծները առաջավոր մեթոդներ են կիրառում նաև մատղաշների աճեցման գործում։ Կոլտնտեսություններում արդեն վաղուց ավարտվել է ոչխարների ծինը և ստացվել 27.000-ից ավելի գառ։ Խնձորեսկ գյուղի կոլտնտեսությունում 3800 մայր ոչխարից ստացվել և աճեցվում է 4300 գառ, Տեղ գյուղի կոլտնտեսությունում 3000 մայր ոչխարից՝ 3275 գառ, Խանածախում՝ 2000-ից 2270, Գորիսի «Ավանգարդ» կոլտնտեսությունում՝



1540-ից 1700, Բռունում՝ 850-ից 1000, Քարահունջում՝ 1000-ից 1200 գառ և այլն։

Քարահունջի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի առաջավոր
հովիվ-բրիգադավար Մ. Մնացականյանը յուրաքանչյուր 100 մայր ոչխարից
ստացել և պահպանում է 137 գառ, Բռունից՝ Ն. Ամարյանը, Ա. Քարամյանը
յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել են 123 գառ, Խանածախից Ա. Միր-
զոյանը, Ա. Քարամյանը 100-ից՝ 129 գառ, Խնձորեսկից Մ. Թունյանը 400
մայր ոչխարից ստացել և աճեցնում է 475 գառ, իսկ Մ. Դաղունցը 400 մայ-
րից ստացել և աճեցնում է 482 գառ։ Այսպիսի բազմաթիվ օրինակներ կա-
րելի է բերել նաև շրջանի մյուս կոլտնտեսություններից։ Խնձորեսկի, Գորիսի,
Տեղի, Խանածախի, Կոռնիձորի, Շինուհայրի, Քարահունջի կոլտնտեսություն-
ները սեփական հոտի վերարտադրությունը լավ կազմակերպելու շնորհիվ
արդեն պլանից ավելի ունեն 1000—3700 գլուխ ոչխար։ Ձմռան ամիսներին
կորուստները կանխելու նպատակով, ոչխարների ծինը սկսելուց մեկ ամիս
առաջ, բոլոր ոչխարանոցները և գառնանոցները մաքրում են գոմաղբից,
ախտահանում, սպիտակացնում և պահում մաքուր վիճակում, պատրաստում
ծնարաններ, գառները բաժանում ըստ հասակախմբերի և այլն։

Գառների նկատմամբ հատկապես լուրջ խնամք է տարվում մինչև նրանց
30 օրական դառնալը։ Այդ հասակում պարտադիր կարգով գառները օրական
երկու անգամ կերակրվում են մոր կաթով, իսկ առնվազն 20 օրից հետո՝ նաև
խոտով։ Հատուկ խնամք է տարվում հատկապես զույգ ծնված գառների
նկատմամբ։ Ծնից հետո առնվազն 3 ամիս ոչխարը չպետք է կթել, իսկ երբ
գառներն արդեն դառնում են 3 ամսական, սկսվում է ոչխարի կիթը, և հետա-
գայում, յուրաքանչյուր ոչխարից կթվում է առնվազն 30, իսկ որոշ ֆերմա-
ներում՝ 35 և ավելի կիլոգրամ կաթ։ Գառները մայրերից անջատվում են 6
ամսական դառնալուց հետո։ Սերմնավորումն սկսելու նախօրյակին դադա-
րեցվում է նաև ոչխարների կիթը։

Ինչպես նշեցինք, շրջանի կոլտնտեսությունները նպատակ ունեն մսի
բալանսում ոչխարի միսը 1960 թվականին հասցնել առնվազն 75 տոկոսի։
Դրա համար լուրջ նշանակություն ունի ոչխարների ամառային գիրացման
գործի օրինակելի կազմակերպումը, որի համար կան լայն հնարավորություն-
ներ։ Արոտային գիրացման գործը օրինակելի կազմակերպելու միջոցով ան-
ցած տնտեսական տարում շրջանի կոլտնտեսությունները պետությանն են
հանձնել և շուկայում վաճառել 7556 ցենտներ ոչխարի բարձրորակ միս։ Պե-
տությանը հանձնված յուրաքանչյուր ոչխարի միջին քաշը կազմել է 40 կիլո-
գրամ, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ 50 և ավելի կիլոգրամ։ Եթե
մեզ հաջողվի պետությանը հանձնվող և վաճառքի ենթակա ոչխարի ամբողջ
գլխաքանակը իսկապես գիրացնել և յուրաքանչյուր ոչխարի կենդանի քաշը
հասցնել 50 կիլոգրամի, ապա (միայն քաշի ավելացման միջոցով) շրջանում
մսի արտադրությունը կավելանա (կենդանի քաշով) 250.000 կիլոգրամով, և
սպանդանոցային քաշով, յուրաքանչյուր կիլոգրամը հաշված 15 ռ., կոլտնտե-
սությունների դրամական եկամուտը կավելանա մեկ միլիոն 875 հազար
ռուբլով։

Արոտային գիրացումը ոչխարների բտման ամենաէժան և նպատակա-
հարմար ձևն է։ Ոչխարների ամառային գիրացման գործով լավ զբաղվեցին
առանձնապես Տաթևի, Շինուհայրի, Հալիձորի, Մալղաշի, Խանածախի կոլ-

տնտեսությունները։ 1957 թվականին Տաթևի կոլտնտեսությունը պետությանը հանձնվող ոչխարների ամբողջ գլխաքանակը արոտային գիրացման ենթարկվեց և 4—5 ամիս պահելուց հետո յուրաքանչյուր ոչխարի կենդանի միջին քաշը հասավ 51 կիլոգրամի։ 50-ական կիլոգրամ կենդանի քաշ ունեցան նաև Շինուհայրի, Հալիձորի և Մալդաշի կոլտնտեսությունների հանձնած ոչխարները, իսկ Խանածախի կոլտնտեսությունում արոտային գիրացման ենթարկված 300 գլուխ ոչխարից յուրաքանչյուրի կենդանի քաշը կազմեց 57 կիլոգրամ։ Գիրացման տակ դրված ոչխարների քաշի աճը կախված է արոտի որակից, ջրելու պայմաններից, խնամքից, ոչխարների հասակից և, որ ամենակարևորն է, գիրացման ժամանակաշրջանի տևողությունից. եթե այս պայմաններից որևէ մեկը բացակայի, անհրաժեշտ արդյունք չի կարող ստացվել։ Այս տարի շրջանի կոլտնտեսությունները գիրացման ենթակա անասունները առանձնացրել են դեռևս մայիսի առաջին օրերից։ Ելնելով անցյալ տարիների փորձից, այս տարի առանձնահատուկ ուշադրություն է դարձվելու գիշերային արոտի կազմակերպմանը։ Նախատեսվում է կիրառել արոտների հերթական արածացման եղանակը։

Սակայն ոչ բոլոր կոլտնտեսություններն են, որ ոչխարների գիրացման վրա անհրաժեշտ ուշադրություն են դարձնում։ Կան կոլտնտեսությունների ղեկավարներ, որոնք դեռևս չեն գիտակցում այդ գործի կարևորությունը։ Մալդաշի կոլտնտեսությունում, որտեղ կիրառվել է արոտային գիրացումը, պետությանը հանձնած յուրաքանչյուր ոչխարի միջին կենդանի քաշը կազմել է 50 կիլոգրամ, իսկ Տանձատափի կոլտնտեսությունում, որտեղ այն չի կիրառվել, պետությանը հանձնած յուրաքանչյուր ոչխարի միջին քաշը կազմել է 25 կիլոգրամ, Մալդաշի հարևան Սվարանցի կոլտնտեսությունում՝ 36 կիլոգրամ, Բարձրավանում՝ 25, Աղբուլաղում՝ 33 կիլոգրամ և այլն։

Այժմ երկու խոսք չօգտագործված ռեզերվների մասին։ Ամենից առաջ պետք է նշել, որ շրջանի շատ կոլտնտեսություններ լավ չեն օգտագործում ոչխարաբուծության զարգացման համար իրենց ունեցած ռեզերվները։ Խանածախ, Խոզնավար, Բայանդուր գյուղերի կոլտնտեսությունները գտնվում են հողակլիմայական միևնույն պայմաններում, իրարից մեկից երկու կիլոմետր հեռավորության վրա։ Ավելին, Բայանդուրի կոլտնտեսությունն իր հնարավորություններով շատ բանով գերազանցում է մյուս երկու կոլտնտեսություններին։ Բայց իրականում Խանածախի կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով պահում է 191 գլուխ ոչխար, Խոզնավարը՝ 152, իսկ Բայանդուրի կոլտնտեսությունը՝ միայն 90 գլուխ ոչխար, կամ Խանածախից 100 հեկտարի հաշվով 101 գլխով պակաս։ Հալիձորի, Շինուհայրի, Յայջիի և Խոտի կոլտնտեսությունները գտնվում են Որոտանի ափին, միևնույն բնակլիմայական պայմաններում։ Հալիձորի կոլտնտեսությունը հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց պահում է 211 գլուխ ոչխար, իսկ Խոտի կոլտնտեսությունը՝ 97, Շինուհայրինը՝ 92, Յայջիինը՝ 103 և այլն։ Եթե շրջանի համար 100 հեկտար հողատարածության հաշվով ոչխարների գլխաքանակի միջին թիվը վերցնենք 145—150, ապա կոլտնտեսությունում ոչխարների գլխաքանակը կարելի է ավելացնել 10.000 գլխով։

Ոչխարաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման հաջորդ ռեզերվը կորուստների դեմ տարվող պայքարն է։ 1957 տնտեսական տարում



շրջանի կոլտնտեսություններն ունեցան շուրջ 5.000 գլուխ մանր եղջերավոր
անասունի կորուստ։ Եթե այդ կորուստը կանխվեր և յուրաքանչյուր ոչխարից
ստացվեր թեկուզ 20 կիլոգրամ միս, ապա միայն դրանով մսի արտադրությունը շրջանում կավելանար 100.000 կիլոգրամով, որից կոլտնտեսություն-
ների դրամական եկամուտները կավելանային առնվազն 1,5 միլիոն ռուբլով։
Ոչխարաբուծությունը զարգացնելու և նրա մթերատվությունը բարձրաց-
նելու վճռական պայմաններից մեկը կերի կայուն բազայի ստեղծումն է։
Շրջանի կոլտնտեսություններն այս բնագավառում ունեն որոշակի հաջողու-
թյուններ։ Եթե 1956 տնտեսական տարում կուտակվել էր 42.000 տոննա
կոշտ կեր, ապա 1957 թվականին կուտակվեց 27.000 տոննայով ավելի։ 1956
թվականի համեմատությամբ, 1957 թվականին կուտակվեց 13.000 տոննայով
ավելի սիլոս, որը հնարավորություն տվեց յուրաքանչյուր ոչխարին մսուրա-
յին շրջանում տալ 1—1,5 ցենտներ սիլոս։ Եվ պատահական չէ, որ այս
օրերին գրեթե բոլոր ոչխարաբուծական ֆերմաներում ոչխարներն ունեն
նորմալ գիրություն։
Որոշակի աշխատանք կատարվեց ցանովի խոտաբույսերի ցանքատարա-
ծությունների ընդարձակման ուղղությամբ։ Եթե 1956 թվականին շրջանում
կորնգանի հնձվող տարածությունները հասնում էր 3700 հեկտարի, ապա
1957 թվականին այն հասավ 4700 հեկտարի։ Ընթացիկ գարնանը 2000 հեկ-
տար տարածության վրա կատարվեց կորնգանի ենթացանք։ Նախագծվում է
մինչև 1960 թվականը կորնգանի հնձվող տարածությունները հասցնել մինչև
7000 հեկտարի։ Միջոցառումներ է ձեռնարկված, 1957 թվականի համեմա-
տությամբ, կերի արտադրությունն այս տարի ավելացնել 17.000 տոննայով։
Կերի ավելացումը մեծ մասամբ կատարվելու է սիլոսի կուտակման հաշվին,
որով հնարավորություն կստեղծվի յուրաքանչյուր ոչխարին տալու 1,5—2
ցենտներ սիլոս։
Մի քանի խոսք ոչխարաբուծության զարգացման հեռանկարային հար-
ցերի մասին։
Շրջանի կոլտնտեսությունները զբաղվում են ոչ միայն ոչխարաբուծու-
թյամբ և տնտեսության եկամտաբեր մի շարք այլ ճյուղերով, այլ նաև այն-
պիսի ճյուղերով, որոնց զարգացման համար մեծ հնարավորություններ չկան
և ցածր եկամտաբեր են։
Հայտնի է, որ խոզաբուծությունը լավագույն խնամքի ու կերակրման
պայմաններում բարձր եկամուտ է տալիս, բայց եթե չկան անհրաժեշտ պայ-
մաններ, այն դառնում է ոչ եկամտաբեր ճյուղ։ Գորիսի շրջանի կոլտնտեսու-
թյուններն ունեն 687 հեկտար ջրովի տարածություն, որը հազիվ բավարա-
րում է ծխախոտի և բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքին։ Կոլ-
տնտեսությունները զրկված են կերային արմատապտուղներ, եգիպտացորեն,
կարտոֆիլ և նման կուլտուրաներ ընդարձակելու հնարավորությունից, որով-
հետև չկան ջրովի հողատարածություններ, իսկ շրջանի անջրդի պայման-
ներում այդ կուլտուրաները շատ չնչին բերք են տալիս։ Խոզերի միակ կերը
մնում է հատիկային կերը (գարին), որը սակայն հազիվ կարող է բավա-
րարել բանող անասուններին և թռչուններին։ Խոզաբուծության զարգացմանը
խոչընդոտ է հանդիսանում նաև այն, որ շրջանի մի շարք կոլտնտեսություն-
ներ չունեն երեքնուկի, առվույտի և թիթեռնածաղկավոր այլ խոտացանքերի
մերձֆերմային արոտավայրեր, այն դեպքում, երբ յուրաքանչյուր խոզամայրի

համար պահանջվում է ոչ պակաս 0,5 հեկտար այդպիսի կանաչ արոտավայր: Հղի խոզամայրերի թերսնվածության հետևանքով ստացվում են թույլ, չզարգացած մատղաշներ, որի հետևանքով էլ նրանց մեծ մասը սատկում է (խոզերի ընդհանուր կորուստի 42—45 տոկոսը կազմում է մատղաշների կորուստը): Եվ պատահական չէ, որ յուրաքանչյուր մայր խոզից ստացվում է ոչ ավելին, քան 1,5 կամ 2,4 խոճկոր, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ 0,6—0,8 խոճկոր:

Թեև շրջանի բոլոր կոլտնտեսությունները զբաղվում են խոզաբուծությամբ, բայց խոզի միս չի արտադրվում, կամ արտադրվում է չնչին քանակությամբ: Այսպես, օրինակ, շրջանի կոլտնտեսությունները միասին վերցրած 1956 թվականին արտադրեցին ընդամենը 295 ցենտներ խոզի միս, որը կազմում է ամբողջ մսի արտադրության միայն 7,6 տոկոսը: Այսպես է եղել դրությունը նաև մյուս բոլոր տարիներին: Անհրաժեշտ քանակի և որակի կեր չինելու պատճառով կոլտնտեսություններում չի կազմակերպվում խոզերի բտումը, որովհետև բոլոր շրջանում, ինչպես անում են խոզաբուծությամբ զբաղվող առաջավոր կոլտնտեսությունները, մեկ գլխին պետք է տրվի 600 կերի միավոր, որը գարու վերածած կկազմի 726 կիլոգրամ՝ օրական 500—600 գրամ քաշաճ ստանալու համար: Ահա թե ինչու մեր պայմաններում խոզաբուծությունը եկամտաբեր ճյուղ չի համարվում: Բերենք մի շարք փաստեր. 1956 տնտեսական տարում մեկ ցենտներ խոզի մսի արտադրության համար միջինը ծախսվել է 1953 ռ. 50 կոպ. կամ մեկ կիլոգրամի վրա ծախսվել է 19 ռ.53կ.: Ավելին, Տեղ գյուղի կոլտնտեսությունը մեկ կիլոգրամ խոզի միս արտադրելու համար ծախսել է 53ռ., Բայանդուրում՝ 65 ռ., Արավուսում՝ 97 ռ., Ազատաշենում՝ 77 ռ., Շինուհայրում՝ 67, Քարաշենում՝ 57 և այլն: Խանածախի Դիմիտրովի անվան կոլտնտեսությունը մեկ գլուխ խոզի պահպանման համար ծախսել է 1410 ռ., իսկ դրամական եկամուտ է ստացել 410 ռ., Բայանդուրի կոլտնտեսությունը 933 ռ. ծախսի դիմաց ստացել է 51 ռ. 50 կ. եկամուտ: Ամփոփումը ցույց տվեց, որ շրջանի կոլտնտեսություններում 1957 թվականին խոզաբուծության վրա ծախսված մեկ աշխօրի ինքնարժեքը կազմել է 31 ռ. 90 կ., իսկ նրա եկամուտը՝ 7 ռ. 60 կ.:

Հակառակ դրան մեկ գլուխ ոչխարի պահպանման վրա ծախսվել է 78 ռ. 50 կ. և եկամուտ է ստացվել 247 ռ. 60 կ.: Մեկ կիլոգրամ բրդի ստացման համար միջին հաշվով կոլտնտեսությունները ծախսել են 10 ռ. 80 կ., եկամուտ են ստացել 23 ռ. 40 կ.: Մեկ կիլոգրամ ոչխարի մսի արտադրության վրա ծախսվել է 2 ռ. 98 կ. կամ խոզի մսի մեկ կիլոգրամի համեմատությամբ 16 ռ. 55 կ. պակաս: Բերված փաստերից ու թվերից երևում է, որ ոչխարաբուծությունը շրջանի կոլտնտեսությունների համար հանդիսանում է առավել եկամտաբեր ճյուղ և այն պետք է զարգացվի:

Ահա թե ինչու մենք նպատակահարմար ենք գտնում շրջանի մի շարք կոլտնտեսություններում հետագայում անհրաժեշտ չափով նվազեցնել խոզաբուծության, ձիաբուծության, թերևս խոշոր եղջերավոր անասունների զարգացման պլանը, դրա փոխարեն լայն տեղ տալ ոչխարաբուծությանը: Այդ հնարավորություն կտա 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ոչխարների գլխաքանակը շրջանում ավելացնել 25.000-ով:

Ոչխարաբուծության զարգացման հեռանկարային մյուս հարցը, դա ոչխարների հեռագնաց արածացման կազմակերպումն է: Տասնյակ տարիներ



շարունակ Գորիսի շրջանի կոլտնտեսությունները կազմակերպել են ոչխար-
ների հեռագնաց արածացումը և արդյունքները վատ չեն եղել, չհաշված 1949
թվականը, երբ պայմանները անբարենպաստ էին և տեղի ունեցան ոչխար-
ների մեծ կորուստներ:

Շրջանի կոլտնտեսությունները շրջանի վարչական տերիտորիայից դուրս
մոտ 100.000 գլուխ ոչխար արածացնելու համար ունեն ամառային խոտա-
ատ արոտավայրեր: Սակայն դժբախտությունը կայանում է նրանում, որ այդ
արոտավայրերում արածացվում են միայն 70.000 գլուխ ոչխար, այն էլ միայն
2,5—3 ամիս: Հակառակ դրան շրջանի վարչական տերիտորիայում կոլտնտե-
սությունները գրեթե չունեն ձմեռային արոտավայրեր: Շրջանի վարչական
տերիտորիայում վարելահողերը կազմում են 20.689 հեկտար, բնական խոտ-
հարքներ՝ 2410 հեկտար, այլ հողեր՝ 1954 հեկտար: Այդ ամբողջ տարածու-
թյուններից հացահատիկային կուլտուրաների ցանքի համար օգտագործվում
է 12.514 հեկտար, ծխախոտի պլանտացիայի համար՝ 246 հեկտար, բանջա-
րաբոստանային կուլտուրաների համար՝ 115 հեկտար և ցանովի խոտացան-
քերի համար՝ 5.000 հեկտար: Ավելի ծանր է դրությունը առանձին կոլտնտե-
սություններում: Այսպես, օրինակ, Տեղ գյուղի կոլտնտեսությունը, որն ունի
1500 խոշոր եղջերավոր անասուն, 7000-ից ավելի ոչխար, 200-ից ավելի
խոզ և 100-ից ավելի ձի, ունի միայն 170 հեկտար ձմեռային արոտավայր:
Վիճակը ավելի վատ է Քարաշենի, Խանածախի, Բռունի և մի շարք այլ կոլ-
տնտեսություններում: Բերված թվերն ասում են այն մասին, որ շրջանում
անասունների ձմեռային արածացման պայմանները սուղ են: Այստեղից պարզ
երևում է, որ կոլտնտեսությունները ամեն տարի օգնության
կարիք են զգում՝ ունենալ նաև ձմեռային արոտավայրեր, ինչպես այդ ունե-
ցել են առաջներում:

Մեր ռեսպուբլիկական կազմակերպություններն ամեն տարի օգնության
կարգով մեծ տարածությամբ ամառային արոտավայրեր են տրամադրում
եղբայրական ռեսպուբլիկաների մեր հարևան շրջանների կոլտնտեսություն-
ներին: Ցանկալի է, որ մենք էլ ձմեռային արոտավայրեր ունենանք եղ-
բայրական ռեսպուբլիկաների մեր հարևան շրջաններում: Եթե ձմեռային
արոտավայրերի որոշ տարածություն տրամադրվի Գորիսի շրջանին, որի կոլ-
տնտեսություններն այնտեղ կատարեն կապիտալ կառուցումներ ու կուտակեն
համապատասխան քանակությամբ կեր, ապա հնարավոր է ամենադժվարին
տարին ոչ մի կորուստ չտալ և պլանից ավելի պահել 30.000 գլուխ ոչխար և
ոչխարների ընդհանուր գլխաքանակը հասցնել 100.000-ի: Այս միջոցառման
կիրառման շնորհիվ հնարավոր կլինի մսի արտադրությունը առաջիկա 2—3
տարում ավելացնել 1000 տոննայով, բրդի արտադրությունը՝ 80 տոննայով,
ըստ որում կոլտնտեսությունների դրամական եկամուտը մինիմալ հաշիվնե-
րով կավելանա 10—15 միլիոն ռուբլով:

---

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ՀԵՏ

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Ակտիվի հետ տարվող աշխատանքը պարտիական կազմակերպությունների քաղաքական և կազմակերպական գործունեության կարևոր հարցերից մեկն է։

Այն վիթխարի խնդիրները, որ ՍՄԿՊ XX համագումարը դրեց պարտիայի և սովետական ժողովրդի առջև, պահանջում են բարելավել աշխատանքը պարտիական ակտիվի հետ, ընդլայնել նրա շարքերը և ավելի համարձակորեն օգտագործել նրա ուժերը քաղաքական և տնտեսական միջոցառումների անցկացման գործում։

Պարտիական ակտիվն ընդգրկում է տնտեսական և կուլտուրական շինարարության տարբեր բնագավառներում աշխատող կոմունիստներ, որոնց թվում պարտիական, սովետական, տնտեսական, պրոֆմիութենական, կոմերիտական աշխատողներ, ինչպես նաև բանվորներ, կոլտնտեսականներ, ագրոնոմներ, ինժեներներ, բժիշկներ, ուսուցիչներ, գիտնականներ և այլն։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ այդ հանգամանքը պարտիական կազմակերպություններից պահանջում է ակտիվի հետ տանել բազմակողմանի աշխատանք։

Պարտիական կազմակերպություններն ակտիվի հետ աշխատանք կազմակերպելիս պետք է ձգտեն այն բանին, որպեսզի ակտիվիստն իր գործնական աշխատանքում օրինակելի լինի, անխոնջ կերպով պայքարի պետական ու պարտիական առաջադրանքների կատարման համար։ Միայն այդ դեպքում նա բարոյական իրավունք կունենա ներգործելու պարտիական և անպարտիական մասսաների վրա։ Ահա թե ինչու քաղկոմ-շրջկոմները պետք է նկատի ունենան, որ ակտիվ համարվելու համար կարևորը կոմունիստի գրաված պաշտոնը կամ ղեկավար դիրքը չէ, այլ նրա գործնական և քաղաքական հատկանիշները, նրա անձնական մասնակցությունը և պատրաստակամությունը պարտիական հանձնարարությունները կատարելու գործում։ Պարտիական մասսաների վստահությունը կարող են վայելել և ակտիվ համարվել այն կոմունիստները, որոնք իրենց ուժն ու կարողությունը լիովին ի սպաս են դնում պարտիայի գծի, նրա դիրեկտիվների անշեղ կենսագործմանը, հանդիսանում են պարտիայի քաղաքականության հարցերը աշխատավորությանը պարզաբանող կրքոտ պրոպագանդիստներ, լավագույն կազմակերպիչներ, ընդունակ են համոզելու և իրենց ետևից տանելու աշխատավորական մասսաներին, մոբիլիզացնելու նրանց ուժերը պարտիական կազմակերպությունների առջև ծառացած խնդիրները հաջող լուծելու համար։

Բազմազան են պարտիական ակտիվի հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Ուստի պարտիական կազմակերպությունները պետք է խիստ



ստեղծագործական մոտեցում ունենան դեպի այս հարցը և ակտիվի հետ աշխատանք տանելիս ձեռնարկեն այնպիսի միջոցառումներ, որոնք լիովին ելնեն պարտիական կազմակերպությունների առջև կանգնած կոնկրետ խնդիրներից։

Ակտիվն իր առջև կանգնած խնդիրները հաջողությամբ կարող է լուծել միայն այն ժամանակ, երբ նա սիստեմատիկաբար ծանոթանում է ինչպես վերադաս, այնպես էլ տեղական պարտիական օրգանների բոլոր կարևոր որոշումներին։ Ցավոք սրտի այս բնագավառում հիմնական թերությունն այն է, որ պարտիական կոմիտեները շատ դեպքերում ակտիվին իրազեկ չեն դարձնում իրենց որոշումներին, տեղյակ չեն պահում այն հիմնական հարցերին, որոնց հետ ակտիվն իր ամենօրյա աշխատանքում առնչվում է, իսկ հաճախ էլ պարտիական կազմակերպությունների կողմից անցկացվող միջոցառումների մշակմանը և իրականացմանը ակտիվը մասնակից չի դարձվում։ Այսպես, օրինակ, դեռ 1957 թվականի փետրվար ամսին Եղեգնաձորի շրջանային պարտիական ակտիվի ժողովը քննարկեց շրջանի տնտեսության համար շատ կարևոր նշանակություն ունեցող հարց՝ շրջանի կոլտնտեսություններում այգեգործության հետագա զարգացման միջոցառումները, որը շատ գովելի նախաձեռնություն էր։ Բայց այն պատճառով, որ շրջկոմն այս կարևոր հարցի նախապատրաստման գործում ինչպես հարկն է չէր օգտագործել ակտիվի ուժերը, հարցի քննարկումն անցավ մակերեսորեն, չբացահայտվեցին այգեգործության ետ մնալու բուն պատճառները ինչպես կազմակերպական աշխատանքի, այնպես էլ ագրոտեխնիկական միջոցների կիրառման բնագավառում։ Ընդունված որոշումը անհրաժեշտ չափով չպարզաբանվեց աշխատավորության շրջանում, յուրաքանչյուր կոլտնտեսությունում այդ որոշման հիման վրա չմշակվեցին կոնկրետ միջոցառումներ այգեգործությունը զարգացնելու ուղղությամբ։ Սրանով պետք է բացատրել, որ Եղեգնաձորի շրջանում այգեգործության զարգացման բնագավառում սպասվելիք փոփոխություն չի կատարվել։

Պարտիական ակտիվի ուժը մասսաների հետ ունեցած նրա կապի մեջ է։ Ժամանակին ունկնդրել աշխատավորների ձայնին, հոգալ նրանց պահանջներն ու կարիքները, պարզաբանել նրանց պարտիայի քաղաքականությունը, պայքարել լենինյան գծի ճիշտ կիրառման համար, այս ամենը պետք է դրվի պարտիական ակտիվի հետ տարվող աշխատանքի հիմքում։

Այս առումով կարևոր անելիքներ ունի պարտիական ակտիվը աշխատավորության շրջանում քաղաքական և կուլտուր-լուսավորական աշխատանքների կազմակերպման բնագավառում։ Քաղաքական զեկուցումներով և դասախոսություններով հանդես գալը յուրաքանչյուր ակտիվիստի նկատմամբ պարտիական կազմակերպությունների կողմից խոշոր վստահություն է։ Երբեմն պարտիայի քաղկոմ-շրջկոմները լեկցիոն պրոպագանդան փորձում են իրականացնել գերազանցապես դասախոսական խմբի անդամների միջոցով, լրիվ չեն օգտագործում ակտիվի ուժերը։ Նրանք մոռանում են, որ այդ խնդիրների հաջող կենսագործումը կախված չէ միայն մի խումբ մարդկանցից, այլ պարտիական ակտիվի ուժերի լրիվ օգտագործումից։ Պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ ակտիվի մեջ ճաշակ պատվաստել քաղաքական աշխատանքի նկատմամբ, այն հաշվով, որ ակտիվը ոչ թե այդ դիտի որպես կողմնակի պարտականություն, այլ գիտակցի նրա անհրաժեշտու-

թյունն ու կարևորությունը: Իհարկե, այս հարցում ակտիվի անելիքները չեն կարող սահմանափակվել միայն զեկուցումներով և դասախոսություններով: Ակտիվի աշխատանքում պետք է մեծ տեղ տրվի հատկապես աշխատավոր- ների հետ անհատական և խմբակային զրույցներին, անձնական հանդի- պումներին, հարց ու պատասխանի երեկոներին, հետաքրքրվել թե ինչ միջոց- ներով կարելի է հասնել թերությունների վերացմանը և աշխատանքի բարե- լավմանը յուրաքանչյուր տեղամասում: Ընդ որում, պետք է ստեղծել այն- պիսի մթնոլորտ, որպեսզի այդ զրույցներն անցնեն աշխույժ, հետաքրքիր, լրիվ պարզաբանվեն աշխատավորներին հուզող հարցերը: Զրույցները և զե- կուցումները չպետք է կրեն պասիվ բնույթ, այլ ոգևորեն մարդկանց, բորբո- քեն նրանց քաղաքական և աշխատանքային կրքերը, խոր ազդեցություն թող- նեն նրանց վրա, յուրաքանչյուրին մղեն նոր ստեղծագործական աշխատան- քի, կրկնապատկեն նրանց եռանդը: Կոնկրետ կերպով այս բանի մեջ պետք է տեսնել մարքսիզմ-լենինիզմի թեորիական հարցերի կապը կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների հետ: Սակայն, փաստերը խոսում են այն մասին, որ ակտիվից որոշ ընկերներ, այդ թվում ռեսպուբլիկայի պար- տիական ակտիվից մի շարք ղեկավար աշխատողներ, երկար ժամանակ քա- ղաքական զեկուցումներով և զրույցներով աշխատավորների առաջ հանդես չեն գալիս: Այդպիսի ընկերներից կարելի է նշել Հայկական ՍՍՌ Արդարա- դատության մինիստր ընկ. Ա. Կարապետյանին, Հայարդխորհրդի նախագահ ընկ. Ն. Հայրապետյանին, Ժողտնտխորհի վարչությունների պետեր՝ ընկ. ընկ. Ի. Սոչինսկուն, Գ. Զոլախյանին և ուրիշներին:

Ակտիվի կապը ինչպես պարտիական, այնպես էլ անպարտիական մաս- սաների հետ դրսևորվում է նաև քաղկոմ-շրջկոմներում և սկզբնական պար- տիական կազմակերպություններում ստացված դիմում-բողոքների սիստեմա- տիկ ստուգման միջոցով: Աշխատավորների դիմումները և բողոքներն ըստ էության հանդիսանում են ներքևից եկող ահազանգումների կարևոր աղբյուր- ներից մեկը: Դրա համար էլ պարտիական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն այս հարցին, լայնորեն օգտագործելով ակ- տիվի ուժերը:

Պարտիական ակտիվի հետ տարվող աշխատանքի հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե պարտիական կազմակերպությունները որ- քանով են ճանաչում ակտիվին, ինչպես են կապված պարտիական մասսան- րի հետ: Այս առումով առաջին հերթին կարևոր նշանակություն է ստանում պարտիայի քաղկոմ-շրջկոմների անդամների հետ տարվող աշխատանքը, նրանց ուժերի արդյունավետ օգտագործումը: Առանձին քաղկոմ-շրջկոմներ կարևոր տնտեսական և քաղաքական միջոցառումներ անցկացնելիս սահմա- նափակվում են միայն ապարատի աշխատողների ուժերն օգտագործելով և այդ գործում ակտիվին չեն ներգրավում: Շատ դեպքերում նույնիսկ կոմիտե- ների անդամներին պլենումների, բյուրոների, ակտիվի ժողովների քննարկ- մանը ներկայացվող հարցերի նախապատրաստմանը և որոշումների մշակմա- նը մասնակից չեն դարձնում: Պարտիական կոմիտեի անդամները սիստեմա- տիկորեն պարտավոր են լինել սկզբնական պարտկազմակերպություններում, մասնակցել պարտիական կազմակերպությունների ժողովներին, բյուրոյի նիս- տերին, պարտիական կազմակերպությունների քարտուղարների և բյուրոնե- րի անդամների հրահանգավորմանը: Կոմիտեի անդամները մեծ անելիքներ



ունեն պարտիական աշխատանքի լավագույն փորձը ընդհանրացնելու և տա- րածելու գործում: Այս ամենը պահանջում են, որպեսզի քաղկոմ-շրջկոմների քարտուղարները հաճախակի հանդիպումներ ունենան կոմիտեի անդամների և մնացած ակտիվի հետ, ուշադիր լսեն նրանց կարծիքը քննարկվող հարցերի մասին և նրանց տեղյակ պահեն կոմիտեի առաջ կանգնած հերթական խըն- դիրների մասին: Իսկ առանձին քաղկոմ-շրջկոմներ էլ շատ անգամ աչքաթող են անում պարտիական ակտիվը նոր, հատկապես երիտասարդ մարդկանցով համալրելու գործը: Հաճախ այս կամ այն քաղաքական միջոցառումն անց- կացնելու կամ ակտիվի ժողովին մասնակցելու համար՝ համաձայն վաղուց կազմած ցուցակի հրավիրում են գրեթե միշտ նույն ընկերներին, իսկ երբեմն էլ տևական ժամանակով ցուցակը մնում է անփոփոխ:

Վերջերս ՀԿՊ Կենտկոմի բյուրոն քննության առնելով պարտիական որո- շումների կատարման վիճակը Լենինականի պարտիական կազմակերպությու- նում, լուրջ թերություններ բացահայտեց այդ գործում: Թերությունների հիմ- նական պատճառներից մեկն էլ այն է, որ քաղկոմը լուրջ ուշադրություն չի դարձնում ակտիվի հետ տարվող աշխատանքին, որի հետևանքով շատ քիչ նոր կադրեր են աճում: Քաղկոմն իր պրակտիկ աշխատանքում հիմնականում հենվում է միայն հաստիքային աշխատողների վրա, իսկ ակտիվի զգալի մասը հեռու է մնում անցկացվող միջոցառումներից:

Ակտիվի դաստիարակության համար շատ կարևոր նշանակություն ունի պարտիական ակտիվի ժողովը: Ակտիվի ժողովը նպաստում է ղեկավար պար- տիական օրգանների ու տեղական կազմակերպությունների միջև կապի ամ- րապնդմանը: Սովորաբար ժողովները հրավիրում են այս կամ այն խոշոր տնտեսական և քաղաքական նշանակություն ունեցող հարցերը քննարկելու համար, որի ժամանակ ձևավորվում է պարտիական կազմակերպության կար- ծիքը քննարկվող հարցի նկատմամբ: Ուստի նրանք չպետք է կրեն հանդիսա- վոր բնույթ, պետք է անցնեն գործարար պայմաններում, որպեսզի ճիշտ կա- տարեն իրենց առջև դրված խնդիրները: Միայն հարցի բազմակողմանի և գործնական քննարկման պայմաններում կարող է ակտիվի ժողովն անցնել բարձր մակարդակով: Պետք է խուսափել նախօրոք մշակված, շաբլոն, հան- դիսավոր ճառերից: Սակայն այդ չի նշանակում, որ ակտիվի ժողովը չպետք է նախապատրաստվի: Ընդհակառակը, պետք է լուրջ աշխատանք տանել հար- ցերը գործնականորեն քննարկելու համար: Ակտիվի ժողովի գործարար բնույ- թը և քաղաքական մակարդակը շատ բանով կախված է զեկուցողից, որի հիմնական խնդիրը պետք է լինի վերլուծել առաջ քաշված հարցերը, ակտիվի ուշադրությունը կենտրոնացնել հանգուցային հարցերի վրա, ստեղծել այնպի- սի մթնոլորտ, որպեսզի ակտիվի ժողովի մասնակիցները համարձակ և պար- զորոշ ասեն իրենց նկատառումները: Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ պարտիական ակտիվի մի շարք քաղաքային և շրջանային ժողովներ անցնում են ցածր մակարդակով:

Այսպես, օրինակ, 1957 թվականի երկրորդ կեսին Կոտայքի պարտշրջկո- մը պարտիական ակտիվի ժողովի քննարկմանն էր դրել մի շատ կարևոր հարց՝ սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կա- տարման ընթացքը շրջանում: Սակայն հարցի քննարկման ժամանակ պակա- սում էր խորությունը: Ելույթ ունեցող ընկերները հանդես եկան գրեթե ինք- նահաշվետվություններով և ցանկացան ստանձնած պարտավորությունների

կատարման գործում եղած թերությունների համար ամբողջ մեղքը գցել նյու-
թական-տեխնիկական վատ սպասարկման վրա։ Ելույթներում բացակայում
էր պարտիական-կազմակերպական աշխատանքի թերությունների և նրանց
պատճառների խոր վերլուծությունը։ Ավելին, ելույթներում շատ քիչ խոսվեց
պարտիական կազմակերպությունների կազմակերպական դերի մասին և փաս-
տորեն ակտիվի ժողովը վերածվեց տնտեսական խորհրդակցության։ Բավա-
կան է նշել, որ 13 ելույթ ունեցողներից միայն մեկն էր պարտիական կազ-
մակերպության քարտուղար, իսկ մյուսները հիմնականում կոլտնտեսու-
թյունների նախագահներ էին։ Պարտիական-կազմակերպական և քաղաքական
աշխատանքի կարևոր հարցերը լուրջ ուշադրության չարժանացան նաև այս
տարվա փետրվարին կայացած Կալինինոյի շրջանային պարտիական ակտիվի
ժողովում, որը քննարկեց Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարի
արդյունքները։

Անցյալ տարվա հոկտեմբերին Շամշադինի շրջանային պարտիական ակ-
տիվի ժողովը ևս հետաքրքիր հարց քննարկեց. դա պարտիական լուսավորու-
թյան ցանցի ուսումնական տարվա արդյունքների հարցն էր, որի շուրջը
ելույթ ունեցան վեց հոգի։ Որպես էական թերություն պետք է նշել, որ հարցի
քննարկումն անցավ միակողմանի, ելույթ ունեցող ընկերները խոսեցին հար-
ցի միայն կազմակերպական կողմի մասին։ Ժողովի ուշադրությունից գրեթե
վրիպեցին չափազանց կարևոր հարցեր, ինչպիսիք են քաղխմբակների պա-
րապմունքների գաղափարական մակարդակը, ուսուցման որակը, պրոպա-
գանդիստների հետ տարվող աշխատանքը, անցկացվող նյութի մատչելիու-
թյունը, հետաքրքրությունը և այլն։ Եվ պատահական չէ, որ ժողովի որոշման
մեջ ևս իրենց արտացոլումը չգտան այս բոլոր հարցերը։

Վերևում նշված փաստերը վկայում են այն մասին, որ երբ ակտիվի ժո-
ղովները պարտիայի շրջկոմների կողմից ինչպես հարկն է չեն նախապատ-
րաստվում, նման թերությունները անխուսափելի են։ Եվ ընդհակառակը, երբ
ակտիվի ժողովը նախապատրաստվում է բազմակողմանիորեն, շրջկոմին հե-
տաքրքրում է ոչ միայն ժողովի անցկացման կազմակերպական կողմը, այլ
հարցի քննարկման բուն էությունը, այդ դեպքում պարտիական ժողովը հաս-
նում է իր նպատակին։ Օրինակ, այս տարի փետրվարին ՀԿՊ Երևանի կազ-
մակերպության Լենինյան շրջանի պարտիական ակտիվի ժողովը քննարկեց
ընդունված որոշումների կատարման ստուգման վիճակը սկզբնական պար-
տիական կազմակերպություններում։ Շնորհիվ այն բանի, որ այդ հարցը կեն-
սական նշանակություն ուներ շրջանային պարտիական կազմակերպության
համար և շրջկոմն ակտիվի միջոցով մանրամասնորեն ուսումնասիրել էր այն,
ակտիվի ժողովի մասնակիցները մեծ հետաքրքրություն ցուցաբերեցին նրա
քննարկման նկատմամբ։ Զեկուցման շուրջը լայնորեն ծավալված մտքերի
փոխանակության միջոցով վեր հանվեց այդ բնագավառում պարտիական
կազմակերպությունների կատարած աշխատանքի դրական և բացասական
կողմերը։ Հարցի բազմակողմանի վերլուծությունը զեկուցման մեջ և նրա ակ-
տիվ քննարկումը ժողովում, հնարավորություն տվեց կոնկրետ միջոցառում-
ներ նշելու որոշումների կատարման ստուգումը շրջանի պարտիական կազ-
մակերպություններում բարելավելու ուղղությամբ։

Պարտիական ժողովների անցկացման պրակտիկայում լուրջ թերություն է
նաև այն, որ տեղական պարտիական կազմակերպությունների շատ կարևոր



հարցերի փոխարեն, ակտիվի ժողովների քննարկմանն են դրվում միայն վե-
րադաս պարտիական օրգանների որոշումները։ 1957 թվականին ռեսպուբլի-
կայի 42 քաղկոմ-շրջկոմներից 26-ը տեղական ոչ մի հարց չեն քննարկել պար-
տիական ակտիվի ժողովներում, կամ 312 ժողովներից միայն 22-ում են
քննարկվել տեղական հարցեր։

Պարտիական կազմակերպությունների կողմից ակտիվի առջև դրված
խնդիրների հաջող լուծումը գլխավորապես կախված է ակտիվի համախմբվա-
ծությունից, կոփվածությունից և մարտունակությունից, որոնք պայմանավոր-
վում են ամենից առաջ ակտիվի քաղաքական պատրաստականությամբ։ Այս
տեսակետից էլ ակտիվի ուսուցման հարցը պետք է լինի պարտիական օրգան-
ների մշտական ուշադրության կենտրոնում։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն ակտիվի ուսուցու-
մը կազմակերպելու բավական հարուստ փորձ ունեն։ Հայտնի է, որ ակտիվի
ուսուցման մշտական և ստանդարտ ձև չի կարող լինել։ Այդ աշխատանքը պլա-
նավորելիս քաղկոմ-շրջկոմները պետք է նկատի ունենան ակտիվի աշխատան-
քի կոնկրետ պայմանները, պատրաստության աստիճանը, կարողությունները,
աշխատանքի բնույթը, փորձը և այլն։

Սխալ էր այն պրակտիկան, երբ պարտիական, սովետական, տնտեսական
ակտիվի հետ անցկացվող միջոցառումները շատ դեպքում պարտադիր կերպով
կանոնարկվում էին պարտիական օրգանների կողմից, և երբեմն էլ պարտիա-
կան ակտիվին հախուռն կերպով ընդգրկում էին քաղկոմ-շրջկոմներին կից
ստեղծված երկկոյան դպրոցներում, թեմատիկ պլանները շատ դեպքերում չէին
տարբերվում քաղխմբակների համար նախատեսված թեմատիկայից։

ՍՄԿՊ XX համագումարից հետո, երբ խստիվ դատապարտվեց քաղաքա-
կան ուսուցման կտրվածությունը կոմունիստական շինարարության պրակտի-
կայից, վերանայվեց նաև ակտիվի ուսուցման գոյություն ունեցող պրակտի-
կան։ Այժմ մարքսիզմ-լենինիզմի թեորիայի ուսումնասիրության հետ զուգըն-
թաց՝ լուրջ ուշադրություն է դարձվում կադրերի տնտեսագիտական ուսուցման
վրա։ Արդեն երրորդ տարին է, ինչ կազմակերպված և հաջող կերպով գործում
է տնտեսագիտական հարցերն ուսումնասիրող ռեսպուբլիկական սեմինար, որ-
տեղ ընդգրկված են մինիստրները, ժողտնտխորհի վարչությունների պետերը,
նրանց տեղակալները և ուրիշ ղեկավար աշխատողներ։

Սեմինար պարապմունքներում, որոնք գումարվում են ամսական մեկ ան-
գամ, դասախոսություններ և զեկուցումներ են լսվում մարքսիզմ-լենինիզմի
տնտեսագիտական թեորիայի ու կոնկրետ էկոնոմիկայի վերաբերյալ։ Բացի
դրանից, պրակտիկ հարցերի շուրջը ելույթներ են ունենում նաև սեմինարների
մասնակիցները։ Մշտական գործող այդ սեմինար-պարապմունքները խոշոր դեր
են խաղում ռեսպուբլիկական ակտիվի ինչպես տեսական մակարդակի բարձ-
րացման, այնպես էլ արդյունաբերության, գյուղատնտեսության և առևտրի
էկոնոմիկայի տիրապետման գործում։

Ակտիվի ուսուցումը կազմակերպելու գործում մեծ աշխատանք են կատա-
րում պարտիայի քաղկոմ-շրջկոմները։ ՀԿՊ Երևանի կազմակերպության շըրջ-
կոմներին, Լենինականի և Կիրովականի քաղկոմներին կից գործող ակտիվի
սեմինարներում, որտեղ ընդգրկված են գործարանների և ֆաբրիկաների դի-
րեկտորները, գլխավոր ինժեներները, պարտիական կազմա-
կերպությունների քարտուղարները՝ թվով մոտ 700 հոգի, ուսումնասիրում են

սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկայի հարցերը:

Ակտիվի ուսուցման գործը լավ է կազմակերպել պարտիայի Երևանի կազմակերպության Ստալինյան շրջկոմը, որի փորձն ուսանելի է: Այստեղ ակտիվի սեմինար պարապմունքներն անցկացվում են արդյունաբերության տարբեր ճյուղերի ղեկավար կադրերի համար առանձին-առանձին: Այն հնարավորություն է տալիս սեմինարների մասնակիցներին ավելի հանգամանորեն ուսումնասիրելու արդյունաբերության զանազան ճյուղերի կոնկրետ էկոնոմիկայի հարցերը, խորանալու իրենց մասնագիտության մեջ: Պարտիայի շրջանային կոմիտեն բյուրոյում, խորհրդակցություններում հաճախակի անդրադառնում է ակտիվի տնտեսագիտական ուսուցման հարցերին, ընդհանրացնում և քննարկման դնում սեմինար պարապմունքների արդյունքները:

Սակայն պետք է նշել, որ պարտիայի քաղկոմներին կից գործող սեմինարների աշխատանքներում միաժամանակ կան լուրջ թերություններ, որոնցից ամենահիմնականն այն է, որ ակտիվի մի զգալի մասը դուրս է մնացել ուսուցումից և նրա հետ գրեթե ոչ մի աշխատանք չի տարվում:

Ակտիվի ուսուցման գործը վերջին տարիներին որոշ չափով բարելավվել է նաև գյուղական պարտիական կազմակերպություններում: Ներկայումս պարտիայի գյուղական 10 շրջկոմներին կից (Շամշադին, Արտաշատ, Ղուկասյան և այլն) ստեղծված են տնտեսագիտական ուսուցման երկամյա դպրոցներ, որոնցում սովորում են շրջանի պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողները (մոտ 240 հոգի): Պարապմունքները տեղի են ունենում ամսական երկու անգամ: Բացի դրանից, մյուս գյուղական շրջկոմներին կից կոլտնտեսությունների նախագահների և պարտիական կազմակերպությունների քարտուղարների համար կազմակերպված են մշտական գործող սեմինարներ, որտեղ նրանք ուսումնասիրում են գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի հարցերը, պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումները գյուղատնտեսության վերաբերյալ: Այդ սեմինարներում առանձնակի ուշադրություն է դարձվում գյուղատնտեսական գիտության և առաջավոր փորձի ուսումնասիրությանը, սիստեմատիկորեն կազմակերպվում են գյուղատնտեսության մասնագետների, գիտնականների, առաջավոր կոլտնտեսությունների նախագահների, պարտիական կազմակերպությունների քարտուղարների զեկուցումներն ու զրույցները:

Գյուղական շրջկոմներին կից ստեղծված այս սեմինարների աշխատանքի հիմնական թերությունն այն է, որ դեռևս ցածր է ուսուցման մակարդակը, չի հաղթահարված ձևական մոտեցումը պարտիական կարևոր նշանակություն ունեցող այս միջոցառման նկատմամբ: Բացի դրանից, քիչ ուշադրություն են դարձնում կոլտնտեսային մյուս ակտիվի, առանձնապես ֆերմայի վարիչների, բրիգադավարների և օղակավարների տնտեսագիտական ուսուցմանը: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և կոլտնտեսությունների տնտեսական ու կազմակերպական հետագա ամրապնդման շահերը գյուղական պարտիական կազմակերպություններից, և առաջին հերթին գյուղական շրջկոմներից հրամայաբար պահանջում են արմատապես բարելավել գյուղական պարտիական ակտիվի հետ տարվող աշխատանքը, և տնտեսական ուսուցումը սերտորեն կապել կոլտնտեսային արտադրության կոնկրետ խնդիրների հետ:

Պարտիական ակտիվի ուսուցման գործում հսկայական դեր ունեն կաբինետները, որոնց միջոցով ակտի-



րելու քաղկոմ-շրջկոմներին կից քաղլուսկաբինետները, որոնց միջոցով ակտիվի համար պետք է սիստեմատիկաբար դասախոսություններ, կոնսուլտացիաներ, ինչպես նաև հրահանգչական զեկուցումներ կազմակերպվեն: Երևանի 26 Կոմիսարների անվան պարտշրջկոմի քաղաքական լուսավորության կաբինետն զգալի աշխատանք է կատարում պարտիական ակտիվի քաղաքական և կուլտուրական մտահորիզոնի ընդլայնման ուղղությամբ: Պարտիական ակտիվի համար մարքսիստական փիլիսոփայության, քաղաքատնտեսության, ՍՄԿՊ թեորիայի ու պրակտիկայի, Սովետական Միության ներքին ու արտաքին քաղաքականության և այլ կարևորագույն հարցերի վերաբերյալ նրանք մշտապես կազմակերպում են դասախոսություններ և զեկուցումներ: Պարտիական ակտիվի ճնշող մեծամասնությունը սերտորեն կապված է Երևանի քաղկոմի քաղաքական լուսավորության տան հետ: Այստեղ ակտիվի համար անց են կացվում հետաքրքիր կոնսուլտացիաներ և զրույցներ, լավ է ցուցադրական ագիտացիան, հաճախակի կազմակերպվում են արդյունաբերության և գյուղատնտեսության նվիրված ցուցահանդեսներ: Ակտիվի հետ տարվող քաղաքական աշխատանքը որոշ չափով բարելավվել են նաև ՀԿՊ Ախտայի, Շամշադինի, Շահումյանի և այլ շրջկոմներին կից քաղաքական լուսավորության կաբինետները:

Սակայն առանձին շրջկոմների քաղլուսկաբինետներն այդ կարևոր խնդրի վրա ուշադրություն չեն դարձնում: ՀԿՊ Ախուրյանի, Նոյեմբերյանի, Վեդու շրջկոմների քաղլուսկաբինետները պարտիական ակտիվի համար հազվադեպ են անցկացնում դասախոսություններ, զեկուցումներ, ակտիվից շատ քիչ ընկերների են հանձնարարում դասախոսություններով և զեկուցումներով հանդես գալ աշխատավորության առաջ: Պետք է միշտ հիշել, որ ակտիվի առաջ կանգնած խնդիրների հաջող իրականացումը՝ հիմնականում կախված է նրա քաղաքական պատրաստությունից և գործիմացությունից:

Քաղկոմ-շրջկոմների խնդիրն է՝ ակտիվին դաստիարակել սկզբունքայնության, բարձր պատասխանատվության, թերությունների նկատմամբ անհաշտելիության ոգով և ապահովել նրանց եռանդուն մասնակցությունը կոմունիստական շինարարությանը:

# ՊԱՐՏԼՈՒՍՑԱՆՑԻ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՎԱ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ, Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ*

Պարտիական լուսավորության 1957—58 ուսումնական տարվա արդյունքները ցույց են տալիս, որ զգալիորեն բարձրացել է կոմունիստների հետաքրքրությունը մարքսիստական-լենինյան թեորիայի, կոնկրետ էկոնոմիկայի, պարտիայի և կառավարության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի նկատմամբ։

Պարտիական կազմակերպությունները ստեղծեցին բազմաթիվ քաղդըպրոցներ, ՍՄԿՊ պատմության, ընթացիկ քաղաքականության, փիլիսոփայության, քաղաքատնտեսության, կոնկրետ էկոնոմիկայի, ժողովրդական կրթության և կոմունիստական դաստիարակության, մարքսիստական-լենինյան թեորիայի առանձին պրոբլեմներ ուսումնասիրող խմբակներ ու սեմինարներ։ Տասնյակ հազարավոր կոմունիստներ տեսության հարցերն ուսումնասիրում էին ինքնուրույն կերպով։

Պարտիական կազմակերպությունները 1957—1958 ուսումնական տարում ավելի մեծ ուշադրություն նվիրեցին կադրերի տնտեսագիտական կրթությանը։ Ռեսպուբլիկայում ստեղծվեցին մարքս-լենինյան քաղաքատնտեսության ու կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող 845 խմբակ, դպրոց ու սեմինար, որոնցում սովորել են 16608 մարդ։ Բացի դրանից, մոտ 6200 կոմունիստ ինքնուրույն կարգով ուսումնասիրել են տնտեսագիտական հանգուցային հարցեր։ Եթե 1955—56 ուսումնական տարում տնտեսագիտական կրթությամբ զբաղվում էին ընդամենը 8000 կոմունիստ, ապա այս տարի՝ մոտ 23.000 կոմունիստ։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվել ռեսպուբլիկայի ղեկավար կադրերի տնտեսագիտական կրթության բարձրացման վրա։ Ահա երրորդ տարին է, ինչ ՀԿՊ Կենտկոմին կից գործում է մարքսիստական տնտեսագիտական թեորիայի և կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող սեմինարը, որտեղ ընդգրկված են ռեսպուբլիկայի 105 ղեկավար աշխատող։ Լենինականի, Կիրովականի քաղկոմներին, գյուղական բոլոր շրջկոմներին և սկզբնական պարտիական խոշոր կազմակերպություններին կից գործել են թեորիական սեմինարներ և երկամյա էկոնոմիկական դպրոցներ, որտեղ սովորել են ավելի քան 1 400 մարդ։

Տնտեսագիտական թեորիայի և կոնկրետ էկոնոմիկայի ուսուցումը լավ էր կազմակերպված Երևանի Ստալինյան, Շահումյանի, Ալավերդու, Ղափանի, Էջմիածնի պարտիական կազմակերպություններում։ Այդ բնագավառում ուսանելի փորձ ունի Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի սկզբնական պարտիական կազմակերպությունը։ Այստեղ 440 կոմունիստից 150-ը ընդ-



գրկված էին սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներում ու սեմինարներում։ Այդ խմբակներն ու սեմինարները ղեկավարել են տեսականորեն պատրաստված, արտադրության հմուտ կազմակերպիչներ՝ կոմբինատի դիրեկտոր Հ. Սարգսյանը, գըլխավոր ինժեներ Ա. Կազակովը, էլեկտրոլիզի ցեխի գլխավոր տեխնոլոգ Մ. Հայրապետյանը, աշխատանքի վերահսկողության բաժնի պետ Հ. Դանիելյանը և ուրիշներ։

Բովանդակալից անցան կոմբինատի դիրեկտոր Հ. Սարգսյանի ղեկավարած սեմինարի պարապմունքները. այդ սեմինարում ընդգրկված էին 33 ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ցեխերի պետեր, վարպետներ և բաժինների վարիչներ։ Սեմինար պարապմունքները անցնում էին հետաքրքիր ու գաղափարական բարձր մակարդակով, բոլոր ունկնդիրները նախօրոք բազմակողմանիորեն ուսումնասիրում և կոնսպեկտավորում էին հանձնարարված նյութը, գրի առնում կոմբինատի կյանքից շատ տվյալներ, օրինակներ և ուսումնասիրվող թեմայի քննարկման ժամանակ հմտորեն օգտագործում այն։ Սեմինարավար Հ. Սարգսյանը պարապմունքները անցկացնում էր աշխույժ զրույցի մեթոդով, մատչելի լեզվով ու խոր համոզվածությամբ շարադրում իր մտքերը, որը նպաստել է ունկնդիրների կողմից նյութի հեշտ ըմբռնմանը։ Անցած ուսումնական տարում սեմինարի մասնակիցներն ուսումնասիրել են՝ «Սոցիալիստական արդյունաբերությունը և նրա հետագա զարգացման խընդիրները», «Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման նոր ձևը», «Արտադրա-տնտեսական գործունեության պլանավորումը», «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման հարցերը» և այլն։ Վերը նշված ամեն մի թեման սեմինարում ուսումնասիրելիս, սեմինարավարը կոնկրետ օրինակներ է բերել սոցիալիստական շինարարության պրակտիկայից և հենց կոմբինատի արտադրական կյանքից, որով հիմնավորել է արդյունաբերական էկոնոմիկայի տեսական դրույթները։ Նվ պետք է գոհունակությամբ նշել, որ էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրությունը բավականաչափ օգնել է սեմինարի մասնակիցներին՝ աշխատանքների կազմակերպումը, խորը թափանցելու արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու պրոցեսների մեջ, հայտաբերելու ներքին ռեզերվներ, հումքի, վառելիքի խնայողության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման նոր բարելավելու կոմբինատի ձևեր։ Դա օգնել է կոմբինատի կոլեկտիվին՝ նորանոր հաջողությունների հասնելու։ Բավական է նշել, որ միայն 1957 թվականին կոմբինատն ստացավ ավելի քան 13 միլիոն ռուբլու օգուտ, որի համար արժանացավ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի առաջին մրցանակի և դրամական մեծ պարգևի։ 1958 թվականի առաջին չորս ամիսների պլանները կոմբինատը կատարեց 107,2 տոկոսով։ Տնտեսագիտական սեմինարի մասնակիցներ՝ Մ. Հայրապետյանը, Վ. Հարությունյանը, Ա. Ասլանյանը, Հ. Ծովյանը և շատ ուրիշներ հանդիսանում են մի շարք ռացիոնալիզատորական առաջարկությունների հեղինակներ։ Ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման շնորհիվ միայն այս տարվա առաջին եռամսյակի ընթացքում կոմբինատն ստացավ 300 հազար ռուբլու օգուտ։ Ձեռք բերած հաջողությունների համար կոմբինատին հանձնվեց շրջկոմի և շրջգործկոմի փոխանցիկ դրոշը։

Արդյունաբերության էկոնոմիկայի ուսուցումը լավ կազմակերպվեց նաև

Երևանի Ս. Մ. Կիրովի, հայէլեկտրո, «կանաչ» գործարանների, ձեթ-օճառ, Լենինականի տեքստիլ, Կիրովականի քիմիական, Ղափանի Քաջարանի կոմբինատների պարտիական կազմակերպություններում։

Պարտիական լուսավորության անցած ուսումնական տարում էկոնոմիկական գիտելիքների պրոպագանդան մեծ տեղ է գրավել նաև կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում։ Այդ գործում աշխատանքի դրական փորձ ունեն Շահումյանի, Շամշադինի, Իջևանի, էջմիածնի, Ապարանի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները։ Միայն Շահումյանի շրջանում գործել են սոցիալիստական գյուղատնտեսական ձեռնարկությունների էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրող 16 խմբակ ու սեմինար։ Պարապմունքները գաղափարական բարձր մակարդակով են անցել այդ շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակում, որը ղեկավարում է կոլտնտեսության վարչության նախագահ, Սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Մեժլումյանը։ Ուսումնական տարվա ընթացքում խմբակի ունկնդիրներն ուսումնասիրել են շուրջ 12 թեմա։ Բացի Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի վերաբերյալ թեզիսներից, ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիաների նյութերից, կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկովյան խորհրդակցության արդյունքներից և ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան ու Փետրվարյան պլենումների որոշումներից, ուսումնասիրել են նաև կոլտնտեսության արտադրության հետ առնչվող մի շարք կարևորագույն թեմաներ. այդպիսի թեմաներից են «Արտադրության մասնագիտացումը և նրա ճյուղերի զուգորդումը կոլտնտեսություններում», «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և գյուղատնտեսական արտադրանքի մեկ միավորի արտադրության վրա կատարվող ծախսերի իջեցման ուղիները», «Գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը», «Կոլտնտեսությունների կազմակերպական ու տնտեսական ամրապնդումը» և այլն։ Յուրաքանչյուր թեմա ուսումնասիրելիս խմբակի ունկնդիրներն իրենց կոնկրետ առաջարկություններով ու դիտողություններով օգնում են հայտաբերելու կոլտնտեսության արտադրության մեջ աշխատանքային ծախսումների կրճատման, բերքատվության ու մթերատվության ավելացման, արտադրության կուլտուրայի բարձրացման, ներքին ռեզերվների օգտագործման ուղիները և միջոցները։

Գյուղատնտեսական էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների պարապմունքները նպատակասլաց և արդյունավետ են անցկացվել նաև Շամշադինի շրջանի Նորաշեն (պրոպագանդիստ՝ Վ. Ավագյան), Արտաշատի շրջանի Մխչյան (պրոպագանդիստ՝ Ա. Ղազարյան) և էջմիածնի շրջանի Լենինի անվան (պրոպագանդիստ՝ Վ. Պետրոսյան) կոլտնտեսություններում։

Սակայն կադրերի տնտեսագիտական ուսուցումը պատշաճ բարձրության վրա չդրվեց Հոկտեմբերյանի, Կոտայքի, Ամասիայի և Բասարգեչարի շրջանների պարտիական կազմակերպություններում։ Այդ շրջաններում գործում էին 1—2 էկոնոմիկական խմբակներ կամ սեմինարներ, որոնց պարապմունքները շատ դեպքերում անցել են թեորիական ցածր մակարդակով, պրոպագանդիստները լավ չեն նախապատրաստել ուսումնասիրվող թեման, երբեմն էլ պարապմունքները ձախողվել են կամ վերածվել արտադրական խորհրդակցությունների։ Այսպես, օրինակ, Ղափանի շրջանի Ջափնի գյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության գյուղէկոնոմիկան ուսումնասիրող խմբա-



կի պրոպագանդիստ, կոլտնտվարչության նախագահ Մ. Մինասյանը պարապ-
մունքները հրավիրել է դեպքից-դեպք, խմբակի պարապմունքները վեր է
ածել կոլտնտեսության վարչության նիստերի։ Նման թերություններ չէին լի-
նի, եթե պարտիական կազմակերպությունները մոտիկից զբաղվեին և
առանձնահատուկ ուշադրություն դարձնեին խմբակների ու սեմինարների
աշխատանքներին։

Լուրջ թերություններ գոյություն ունեն նաև պարտշրջկոմներին կից եր-
կամյա էկոնոմիկական դպրոցների աշխատանքում։ Շատ շրջաններում (Ղու-
կասյան, Եղեգնաձոր, Վեդի և այլն) գործող էկոնոմիկական դպրոցներում
պարապմունքները շաբաթական 4 ժամվա փոխարեն հաճախակի անց են
կացվել ամսական 1—2 անգամ, երկու ժամվա տևողությամբ, որը խիստ
բացասաբար է անդրադարձել ծրագրով նախատեսված նյութի խոր և բազ-
մակողմանի ուսումնասիրության վրա։

Անցած ուսումնական տարում պարտիական լուսավորության ցանցում
լայն տարածում ստացան ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող
խմբակները։ 13.000 կոմունիստներ, 3500 անպարտիական ակտիվիստներ
1073 խմբակներում ուսումնասիրել են ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կա-
ռավարության որոշումները, միջազգային կյանքի իրադարձությունները,
ժողովրդա-դեմոկրատական երկրներում սոցիալիզմի կառուցման և ՍՍՌՄ-
ում կոմունիստական շինարարության ակտուալ պրոբլեմները։

Հանրակրթական և քաղաքական ցածր պատրաստականություն ունեցող
2700 կոմունիստ սովորել են 226 քաղդպրոցում։ Կոմունիստների քաղաքա-
կան ուսուցման այս կարևոր օղակին անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրել
Կիրովական քաղաքի, Երևանի Լենինյան շրջանի, Նոյեմբերյանի, Ազիզբե-
կովի, Ամասիայի, Աշտարակի, Կոտայքի և Կալինինոյի պարտիական կազ-
մակերպությունները, ուր անցած ուսումնական տարում չի կազմակերպվել
ոչ մի քաղդպրոց։

Հանրահայտ է, թե ինչպիսի հսկայական նշանակություն ունի կադրերի
գաղափարական դաստիարակության համար մեր փառապանծ պարտիայի
հերոսական պատմության ուսումնասիրությունը։ Ճիշտ է, որ
համաշխարհային պատմական փորձի ուսումնասիրողներն իրոք հանդիպում են որոշա-
պարտիայի պատմությունն ուսումնասիրողներն իրոք հանդիպում են որոշա-
կի դժվարությունների, որովհետև այժմ չկա պարտիայի պատմության այն-
պիսի մի դասագիրք, որտեղ այդ պատմությունը շարադրված լիներ մինչև մեր
օրերը։ Սակայն նման դժվարությունները անհաղթահարելի չեն, որովհետև
հրապարակի վրա կան այնպիսի աշխատություններ ու փաստաթղթեր, ինչպի-
սիք են՝ Վ. Ի. Լենինի աշխատությունները, պարտիայի որոշումների ժողո-
վածուները, որոնցում լուսաբանված է մեր պարտիայի պատմությունը։ Մյուս
տարիների հետ համեմատած, անցյալ տարի զգալիորեն ավելացավ ՍՄԿՊ
պատմությունն ուսումնասիրողների թիվը։ Այժմ ռեսպուբլիկայում 18.610 կո-
մունիստ և 3200 անպարտիական ուսումնասիրում են մեր պարտիայի հերո-
սական պատմությունը։ Չնայած դասագրքի բացակայությանը, շատ տեղե-
րում պրոպագանդիստների բարեխիղճ աշխատանքի շնորհիվ հաջողությամբ
է ընթացել պարտիայի պատմության ուսումնասիրությունը։ Պարտիական
լուսավորության նոր ուսումնական տարում չթուլացնելով տնտեսական գիտե-
լիքների պրոպագանդան, պարտիական կազմակերպությունները պետք է

առանձնահատուկ ուշադրություն դարձնեն նաև պարտիայի պատմության ուսումնասիրության կազմակերպման վրա։

Անհրաժեշտ է նշել, որ Սիսիանի, Սպիտակի, Ստեփանավանի, Շամշադինի, Եղեգնաձորի, Կրասնոսելսկի, Ապարանի և մի շարք այլ շրջանների պարտիական կազմակերպություններում միանգամայն աչքաթող են արել մարքսիստական փիլիսոփայության ուսումնասիրության գործը։ Մարքսիստական-լենինյան թեորիայի հարցերի ուսումնասիրության նկատմամբ նման մոտեցումը միանգամայն անհանդուրժելի է։ Նոր ուսումնական տարում պետք է արժանի տեղ հատկացնել մարքսիստական փիլիսոփայության հարցերի ուսումնասիրությանը։

Անցած ուսումնական տարում առանձնահատուկ տեղ տրվեց ժողովրդական կրթության բնագավառում աշխատող կադրերին կոմունիստական գաղափարայնությամբ զինելու գործին։ Ռեսպուբլիկայում առաջին անգամ կազմակերպվեց ժողովրդական կրթության, պոլիտեխնիկ ուսուցման և կոմունիստական դաստիարակության թեորիական դրույթներն ուսումնասիրող 111 սեմինար, որոնցում ընդգրկվեցին մոտ 2500 մանկավարժական կադրեր։ Այդ սեմինարների աշխատանքի մեկ տարվա փորձը ցույց տվեց նրանց օգտավետությունը ժողկրթության բնագավառի աշխատողների գաղափարական ու քաղաքական աճի բնագավառում։ Ձեռք բերված դրական փորձի հիման վրա պետք է ավելի մեծ տեղ տալ այդպիսի սեմինարների կազմակերպմանը գալիք ուսումնական տարում։

Մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները հանդիսանում են պարտիական լուսավորության սիստեմի կարևոր օղակներից մեկը, բայց պարտիայի Երևանի և Լենինականի քաղաքային կոմիտեներն անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկել երեկոյան համալսարաններում ուսուցման բարձր մակարդակն ապահովելու և համապատասխան կոնտիգենտ հավաքագրելու ու ընդունելության գործը կազմակերպելու համար։

Կոմունիստների և անպարտիականների գաղափարական դաստիարակության հիմնական ձևը մարքսիստական-լենինյան թեորիայի ինքնուրույն ուսումնասիրությունն է։ Մեր ռեսպուբլիկայի կոմունիստների 49,8 տոկոսից ավելին ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն, որոնք ի վիճակի են մարքսիստական-լենինյան թեորիան ուսումնասիրել ինքնուրույն կարգով։ Փորձը ցույց է տալիս, որ կոմունիստների քաղաքական ինքնակրթության գործը հաջող է ընթանում այն պարտիական կազմակերպություններում, որտեղ հետևողական ու շերտավորված օգնություն ու հսկողություն են կազմակերպում քաղաքական ինքնակրթությամբ զբաղվողների նկատմամբ։ Պրակտիկան ցույց է տվել, որ ինքնուրույն ուսումնասիրողների հետ տարվող արդյունավետ աշխատանքի կազմակերպման հիմնական ձևը տեսական սեմինարների ստեղծումն է։ Անցած ուսումնական տարում մարքսիստական-լենինյան թեորիայի ակտուալ պրոբլեմների ու հարցերի ուսումնասիրության գծով գործում էին 800-ից ավելի տեսական սեմինար։

Դժբախտաբար կոմունիստների քաղաքական ինքնակրթության կազմակերպման գործում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ։ Ալավերդու շրջանի Շնող, Այգեհատ գյուղերի, գարեջրի գործարանի, Ախտայի շրջավետի գործկոմի, Էջմիածնի Ներքին Ջեյվայի, Սամաղարի, Վերին Քյոլանլուի № 4 սովետական տնտեսության և մի շարք այլ պարտիական կազմակերպու-



թյուններ բավարարվել են միայն տարեսկզբին քաղաքական ինքնուսուցմամբ
զբաղվողների ցուցակագրումով։ Իսկ ուսումնական տարվա ընթացքում նրանց
համար դասախոսություններ, կոնսուլտացիաներ և տեսական զրույցներ չեն
կազմակերպվել, չեն վերահսկել ինքնակրթության գործը, որի հետևանքով էլ
ինքնուրույն ուսումնասիրողները դադարել են իրենց վրա աշխատելուց։ Դժ-
բախտաբար սրանք եզակի օրինակներ չեն։ Նման փաստեր կարելի է գտնել
գրեթե բոլոր շրջաններում։ Այդպիսի երևույթներին վերջ տալու համար ան-
հրաժեշտ է ինքնուրույն ուսումնասիրողներին ընդգրկել տեսական սեմինար-
ներում, հաճախ կազմակերպել ռեֆերատների քննարկումներ, տեսական կոն-
ֆերանսներ ու զրույցներ։ Պետք է հաշվի առնել, թե յուրաքանչյուր կոմու-
նիստ ինչ թեմա է ուսումնասիրում, ինչպիսի օգնության կարիք է զգում, ըստ
այնմ էլ պլանավորված ու սիստեմատիկ աշխատանք կազմակերպել նրանց
հետ։

Ղեկավար կադրերի քաղաքական կրթության կազմակերպման գործում
կարևոր նշանակություն ունի նրանց անմիջական և ակտիվ մասնակցությունը
պրոպագանդիստական աշխատանքներին։ Սակայն ղեկավար աշխատողներից
ոմանք այդ ասպարեզում պահանջվող ակտիվություն հանդես չեն բերում.
նրանք քաղաքական զեկուցումներով ու դասախոսություններով հանդես չեն
գալիս կոմունիստների ու անպարտիականների առջև և նրանց մի մասը
խիստ պասիվ մասնակցություն է ցուցաբերում աշխատավորության քաղա-
քական գաղափարական դաստիարակության գործում։ Պարտիայի քաղաքա-
յին ու շրջանային կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որպեսզի յու-
րաքանչյուր պարտիական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատող
լինի պրոպագանդիստ, սեմինարավար, կոնսուլտանտ և պարբերաբար հան-
դես գա դասախոսություններով ու զեկուցումներով։

Կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավորների կոմունիս-
տական դաստիարակության գործում մեծ անելիքներ ունեն քաղկոմ-շրջկոմ-
ների քաղաքական լուսավորության տներն ու կաբինետները։ Դրանք կոչված
են լինելու մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդման օջախներ,
որտեղ պրոպագանդիստն ու ունկնդիրները, դասախոսն ու զեկուցողը կարող
են ցանկացած ժամանակ տեսական և մեթոդական բազմակողմանի օգնու-
թյուն ստանալ։ Կոմունիստների քաղաքական ուսուցման գործում պարտիայի
քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերը և քաղաքական լուսավորության
տներն ու կաբինետները մեծ աշխատանք են տարել դասախոսական պրոպա-
գանդայի կազմակերպման գործում։

ՀԿՊ Լենինական, Կիրովական քաղաքների, Ախտայի, Սևանի, Կոտայքի,
Շամշադինի և Շահումյանի քաղլուսկաբինետները իրենց աշխատանքը դարձ-
րել են բազմաբովանդակ և արդյունավետ։ Այստեղ կազմակերպվում են ցիկ-
լային դասախոսություններ և զեկուցումներ, խմբակային ու անհատական կոն-
սուլտացիաներ, մասսայականացնում են պրոպագանդիստական աշխատանքի
լավագույն փորձը, կազմակերպում են տեսական կոնֆերանսներ ու զրույց-
ներ, պրոպագանդիստներին և ունկնդիրներին օգնում են համապատասխան
թվական և փաստական հարուստ նյութերով։ Սակայն այդ նույնը չի կարելի
ասել Վեդու, Ախուրյանի, Նոր-Բայազետի և Եղեգնաձորի քաղլուսկաբինետ-
ների մասին։ Այդ ամենից առաջ բացատրվում է նրանով, որ այդ քաղլուս-

կաբինետների աշխատանքը դուրս է մնացել վերոհիշյալ շրջանների շրջկոմների տեսադաշտից։

Կոմունիստների քաղաքական ուսուցման հաջողությունը մեծապես կախված է նաև պրոպագանդիստական կադրերի ընտրությունից և նրանց հետ տարվող աշխատանքից։ Չնայած զգալիորեն բարելավվել է պրոպագանդիստական կադրերի որակական կազմը, նրանց մոտ 92 տոկոսն ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն և երկարամյա պրոպագանդիստական աշխատանքի փորձ, բայց նրանք դարձյալ տեսական և մեթոդական օգնության կարիք են զգում։ Այդ բացը կարելի է լրացնել ինչպես Կենտրոնական Կոմիտեի կողմից պրոպագանդիստական մեկամսյա վերապատրաստման դասընթացների կազմակերպմամբ, այնպես էլ պարտիական կոմիտեներին կից պրոպագանդիստների մշտական գործող սեմինարների աշխատանքը բարելավելու միջոցով։

Պարտիական լուսավորության ուսումնական տարին ավարտելուց հետո՝ ամռան ամիսներին, քաղկոմ-շրջկոմները պետք է ավելի ուժեղացնեն դասախոսական պրոպագանդան, ընդլայնեն դասախոսությունների թեմատիկան, առանձնահատուկ ուշադրություն դարձնելով հակակրոնական, ժամանակակից բուրժուական իդեոլոգիայի ռեակցիոն բնույթի, ռևիզիոնիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մեր պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության ակտուալ հարցերի վերաբերյալ դասախոսությունների կազմակերպմանը։

Պարտիական կոմիտեների խնդիրն է՝ հաշվի առնել պարտիական լուսավորության ցանցի աշխատանքներում տեղ գտած թերությունները, ընդհանրացնելով և մասսայականացնելով պրոպագանդիստական աշխատանքի փորձը, հաջողությամբ նախապատրաստել պարտիական լուսավորության սիստեմի 1958—1959 ուսումնական տարին։

---

# ՄԵՐ ՍԵՄԻՆԱՐԻ ՓՈՐՁԻՑ

## Մ. ԾԱՏՈՒՐՅԱՆ

Երևանի էլեկտրալամպերի գործարանում արդեն երկրորդ տարին է ինչ գործում է սոցիալիստական արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրողների սեմինար։ Սեմինարում ընդգրկված է 22 հոգի (17 կոմունիստ և 5 անպարտիական)։ Այն հիմնականում կոմպլեկտավորված է գործարանի ղեկավար աշխատողներից, որոնց մեծ մասը ունի բարձրագույն կրթություն։ Սեմինարի 12 ունկնդիր գործարանի ցեխերի ու բաժինների պետեր են (հավաքման ցեխի պետ Բ. Թումասյանը, ապակու ցեխի պետ Վ. Մինասյանը, գործարանի գլխավոր մեխանիկ Ն. Վասիլյանը և ուրիշներ), որոնց տնտեսագիտական պատրաստությունից է մեծ չափով կախված արտադրական տեղամասերում աշխատանքի հաջող կազմակերպումը։

Պարտբյուրոյի նախաձեռնությամբ կազմակերպված այս սեմինարը պատահական երևույթ չէր։ Էլեկտրալամպերի գործարանը ռեսպուբլիկայի խոշորագույն ձեռնարկություններից է, որը շատ երիտասարդ է և դեռևս կառուցվում են նրա առանձին ցեխերը։ Գործարանի ղեկավար կադրերը մեծ մասամբ երիտասարդներ են, որոնք վերջերս են եկել արտադրություն և չունեն տնտեսական աշխատանքի բավականաչափ փորձ։ Այդ աշխատողները տեխնիկական հարցերի վերաբերյալ ունենալով տեսական լավ գիտելիքներ, միևնույն ժամանակ անբավարար գիտեին արդյունաբերության էկոնոմիկան, չէին կարողանում վերլուծել իրենց տեղամասի աշխատանքները՝ տնտեսական ցուցանիշների տեսակետից։ Արտադրական տեղամասի աշխատանքի կարևորագույն և վճռական ցուցանիշներ, ինչպիսիք են՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, նորմավորման, հաշվառման, աշխատավարձի ֆոնդի բաշխման և այլ հարցերը նրանք կարծես թե համարում էին միայն ձեռնարկության ղեկավարության գործը։

Գոյություն ուներ այսպիսի կարծիք, ըստ որի ցեխի, ամբողջ օբյեկտի արտադրական պլանը որևէ կերպ կատարելը համարվում էր կարևոր, իսկ եկամտաբերության, ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության և այլ կարևորագույն հարցեր հետին պլան էին մղվել։

Արտադրության հարցերի նկատմամբ այսպիսի մոտեցման հետևանքով գործարանը մեծ վնասներ էր կրում նյութերի և կիսաֆաբրիկատների գերածախսի, արտադրանքի ինքնարժեքի բարձրացման, աշխատանքի ցածր արտադրողականության, աշխատավարձի ֆոնդի գերածախսի և հաշվառման ու հաշվետվության թույլ դրվածքի պատճառով։ Դրա հետևանքով գործարանը չկատարեց 1957 թվականի արտադրական պլանը։

Մի շարք թերություններից բացի, գործարանի ցեխերի աշխատանքում հիմնական թերությունն է նաև դեֆիցիտային նյութերի գերածախսը։ Մեկ տարվա ընթացքում ամբողջ գործարանում նյութերի գերածախսը կազմել է 700

հազար ռուբլի: Եվ այդ գերածախսը հիմնականում եղել է գործարանի հա-
վաքման, նախապատրաստական և գալարագծի ցեխերում:

Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ այս բոլորը, հիմնականում տեղի են
ունեցել ոչ այն բանի հետևանքով, որ գործարանի ցեխերի ու տեղամասերի
ղեկավարները վատ են աշխատում, այլ այն պատճառով, որ այդ ղեկավար-
ները թույլ պատկերացում ունեն ձեռնարկության պլանավորման սկզբունքների,
ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և
այլ հարցերի վերաբերյալ: Կարճ ասած, երբ ամփոփվում էին գործարանի կամ
ցեխերի մեկ ամսվա կամ եռամսյակի աշխատանքի արդյունքները, ցեխերի
ղեկավարները տեսնում էին, որ չեն կատարվել առաջադրանքները, որ կան լուրջ
բացեր ու թերություններ, բայց որովհետև նրանք չունեին տնտեսական բավա-
րար գիտելիքներ և պրակտիկ աշխատանքի անհրաժեշտ փորձ, չէին կարողա-
նում գտնել դրանց պատճառները և անհրաժեշտ միջոցներ ձեռք չէին առնում
այդ բացերն ու թերությունները վերացնելու համար:

Շատ դեպքերում ցեխերի և տեղամասերի պետերը չկարողանալով գտնել
տնտեսական այս կամ այն ցուցանիշի գծով ցեխի ետ մնալու իսկական պատ-
ճառը և գործարանի վատ արդյունքները, դրանք բացատրում էին բանվորական
ուժի պակասով, այն ժամանակ, երբ տվյալ տեղամասում թույլ էր տրվել աշ-
խատավարձի գերածախս:

Ահա թե ինչու մեր գործարանի համար կարևոր, կենսական նշանակու-
թյուն ունեցավ ղեկավար կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակեր-
պումը, արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի ստեղ-
ծումը:

Ներկայումս, երբ սոցիալիստական արդյունաբերությունը հագեցած է հզոր
տեխնիկայով, որն անընդհատ կատարելագործվում է, երբ արդյունաբերական
ձեռնարկություններում աշխատում են միլիոնավոր, շատ որակյալ բանվորներ
և մասնագետներ, յուրաքանչյուր ձեռնարկության հաջող աշխատանքը կախ-
ված է տնտեսական ղեկավարության որակից, արտադրությունը ճիշտ կազմա-
կերպելու կարողությունից: Իսկ ձեռնարկությունը հմտորեն ղեկավարելու հա-
մար հրամանատարները պետք է ունենան տնտեսագիտական խոր գիտելիքներ:
Եվ գործարանի ղեկավար կադրերին տնտեսագիտական գիտելիքներով զինելու
գործում զգալի դեր խաղաց արդյունաբերության էկոնոմիկայի հարցերն
ուսումնասիրող սեմինարը:

Սեմինարի աշխատանքների կազմակերպման հենց սկզբից հարց ծագեց,
թե պարապմունքների համար ինչպիսի ձևեր ու մեթոդներ ընտրել, որպեսզի
ունկնդիրներն ավելի մեծ հետաքրքրություն հանդես բերեն ուսումնասիրվող
թեմաների նկատմամբ, որպեսզի ուսումնասիրվող թեորիական հարցերը
սերտորեն կապվեն կոմունիստական շինարարության հարցերի և ձեռնարկու-
թյան պրակտիկ խնդիրների հետ:

Սեմինարի աշխատանքի սկզբնական շրջանում, առաջին պարապմունքում
մենք մեր առաջ նպատակ էինք դրել բազմաթիվ օրինակներով ցույց տալ սո-
ցիալիստական ձեռնարկության աշխատողների տնտեսագիտական գիտելիքնե-
րի բարձրացման անհրաժեշտությունը և նրանց մեջ ճաշակ զարգացնել դեպի
արտադրական ձեռնարկությունների աշխատանքի տնտեսական վերլուծությու-
նը և հաշվարկումները, որ այնքան հարկավոր են այս կամ այն ձեռնարկու-
թյան հաջող աշխատանքի համար: Յուրաքանչյուր պարապմունքում, տվյալ թե-



մայի քննարկման ժամանակ, հերթականությամբ սեմինարի առանձին անդամ-
ներին հանձնարարվում էր զեկուցումներ կարդալ ուսումնասիրվող թեմայի
հիմնական հարցերի շուրջը: Մյուս ունկնդիրները նույնպես նախօրոք խոր
ուսումնասիրում էին թեման և կոնսպեկտավորում այն:

Ամեն անգամ զեկուցող ընտրելուց հետո, ունկնդիրներին առաջադրվում էր
համապատասխան գրականություն տվյալ թեման պատրաստելու համար: Բա-
ցի դասագրքից ունկնդիրները լայն կերպով օգտվում էին սոցիալիստական
էկոնոմիկայի տարբեր հարցերին վերաբերող բրոշյուրներից, որտեղ ավելի
հանրամատչելի ձևով են շարադրվում նյութի տեսական հիմունքները և այն
ամրապնդվում կոնկրետ օրինակներով:

Սեմինար պարապմունքը վարելիս ամենից առաջ ես աշխատում էի տալ
տվյալ նյութի տեսական սկզբունքները և որից հետո այն պարզաբանել գոր-
ծարանի կյանքից վերցրած պրակտիկ աշխատանքի օրինակներով:

Սովորաբար սեմինարի ծրագրով նախատեսվում էր յուրաքանչյուր տնտե-
սագիտական թեմայի ուսումնասիրությանը նվիրել 2 ակադեմիական ժամ, որը,
մեր կարծիքով, չափազանց քիչ էր, եթե սեմինարում քննարկման էր դրվում
նյութի բոլոր մանրամասնությունները: Այդ պատճառով, որպես կանոն, հիմ-
նական զեկուցումներն ընդգրկում էին նյութի միայն հանգուցային հարցերը,
որից հետո զեկուցողները անցնում էին մեր գործարանին վերաբերող կոնկրետ
հարցերին, պարզաբանում այս կամ այն ցեխի ետ մնալու պատճառները և
անում առաջարկություններ այդ ցեխերը առաջավորներին հասցնելու համար:
Կոլեկտիվ քննարկումից հետո ունկնդիրներին պարզ էր դառնում, թե ի՞նչ
հարցերի վրա պետք է ավելի լուրջ ուշադրություն դարձնել և ինչ պետք է անել,
որպեսզի բարելավվի ետ մնացող ցեխերի էկոնոմիկան: Ես որպես սեմինարի
ղեկավար նախապես բազմակողմանիորեն պատրաստվում էի պարապմունքի,
ուսումնասիրում էի թեմային վերաբերող օժանդակ գրականություն և կատա-
րում նշումներ: Եվ այսպես, մինչև սեմինար պարապմունք հրավիրելը, ես ար-
դեն յուրացրել էի անցկացվող թեման և հավաքել էի մեծ քանակությամբ հե-
տաքրքրական տվյալներ սոցիալիստական էկոնոմիկայի վերաբերյալ: Ուսում-
նասիրելով սեմինարում արծարծվող թեմաները, պարապմունքի սկզբին պարզ
և մատչելի ձևով շարադրում էի այն հարցերը, որոնք պետք է առաջ քաշվեին
պարապմունքի ընթացքում:

Զեկուցողին լսելուց հետո, սկսվում էր թեմայի աշխույժ քննարկումը և
ապա կատարվում սեմինար պարապմունքի ամփոփում:

Ինչպես փորձը ցույց է տալիս, պրոպագանդիստական աշխատանքի ըն-
թացքում տվյալ թեմայի տեսական հիմունքների մերկ շարադրանքը անհրա-
ժեշտ արդյունք չի տալիս, շատ ունկնդիրներ դժվարությամբ են յուրացնում
տեսական հարցերը: Բայց, երբ տեսական հարցերը շարադրվում և պարզա-
բանվում են կյանքից, պրակտիկ աշխատանքից վերցրած կոնկրետ փաստերով և
օրինակներով, ապա այն ցանկալի արդյունք է տալիս: Սեմինարի պարապմուն-
քի ընթացքում մենք ամեն կերպ խույս ենք տալիս նյութը դպրոցական ձևով
շարադրելու պրակտիկայից, և այն անցկացնում ենք ակտիվ զրույցի մեթոդով,
քննարկման դրված հարցերի հետևողական շարադրման մեթոդով: Եվ մեր սե-
մինարի փորձը ցույց տվեց, որ որքան շատ օրինակներ են բերվում պրակտիկ
կյանքից և նյութի շարադրումը կատարվում է մատչելի ձևով, այնքան ար-
դյունքը լավ է լինում: Օրինակ, ընթացիկ տարվա սկզբին անցկացվեց սեմի-

նարի հերթական պարապմունքը՝ «Արտադրական ձեռնարկությունների աշխատանքի արտադրողականությունը և նրա բարձրացման ուղիները» թեմայի շուրջը: Զրույցի ընթացքում պարզվեց, որ մի քանի ընկերներ որոշակի պատկերացում չունեին, թե ինչ պետք է հասկանալ աշխատանքի արտադրողականություն ասելով: Որո՞նք են աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները: Մենք հանգամանորեն քննարկեցինք թեման, պարզ շարադրեցինք Կ. Մարքսի դրույթներն աշխատանքի արտադրողականության մասին և սեմինարում կոնկրետ օրինակներ բերեցինք այդ հարցի վերաբերյալ: Բերեցինք այսպիսի օրինակ. եթե 1000 հատ էլեկտրալամպի պատրաստման համար պահանջվում է 60 րոպե աշխատաժամանակ, ապա հերթափոխում (8 ժամում) կարելի է թողարկել ութ անգամ ավելի լամպ: Բայց եթե աշխատանքի պրոցեսի փոփոխման շնորհիվ աշխատաժամանակը կրճատենք և հասցնենք մինչև 40 րոպեի, ապա այդ ժամանակ հերթափոխի ընթացքում համապատասխանաբար կարելի է պատրաստել ոչ թե 8 հազար, այլ 12 հազար լամպ: Արտադրանքի մեկ միավորի համար ծախսվող աշխատաժամանակի կրճատումը հենց արտահայտում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը: Նման օրինակներ բերեցինք գործարանի մյուս տեղամասերից ևս: Անմիջապես պարզ դարձավ, որ արտադրանքի չափանիշը աշխատաժամանակն է, իսկ աշխատանքի արտադրողականության ցուցանիշը՝ աշխատաժամանակի քանակը: Նշանակում է աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները պետք է որոնել թողարկվող արտադրանքի մեկ միավորի համար ծախսվող աշխատաժամանակի կրճատման մեջ:

Բնորոշ է նաև այն, որ կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրությունը մեզ մոտ չի սահմանափակվում միայն սեմինար պարապմունքներով: Սեմինարի մասնակիցները համարյա ամեն օր ինձ են դիմում էկոնոմիկայի գծով այս կամ այն միջոցառումը կիրառելու վերաբերյալ խորհուրդներ կամ պարզաբանումներ ստանալու համար: Եվ միշտ լավ արդյունք է ստացվում: Օրինակ, հավաքման ցեխը աշխատանքի արտադրողականության 1958 թվականի առաջին եռամսյակի պլանը կատարել է 100,2 տոկոսով: Այդ ժամանակամիջոցում, 1957 թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ, նյութերի գերածախսը նվազել է 10 տոկոսով: Նախապատրաստման ցեխը նույնպես գերակատարել է աշխատանքի արտադրողականության պլանը: Այսպիսի պատկեր ունեն նաև մյուս հիմնական ցեխերը:

Բերենք մի այլ օրինակ: Սեմինար պարապմունքներից մեկում ուսումնասիրվում էր՝ «Արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները» թեման: Զրույցը անց էր կացնում գործարանի ցեխերից մեկի պետ Բ. Թումասյանը: Հետո տեղի ունեցավ զրույցի քննարկում: Քննարկման ժամանակ պարզվեց, որ առանձին ունկնդիրներ, որոնք գործարանի ցեխերի ու տեղամասերի ղեկավարներ են, վատ գիտեն ինքնարժեքի հարցերը, լավ չեն պատկերացնում, թե ինչպես է հաշվվում արտադրանքի ինքնարժեքը, ծախսերի ինչպիսի հոդվածներից է կազմված և ինչպիսի ուղիներով կարելի է իջեցնել այն:

Պարապմունքներում բերվում էին բազմաթիվ կենդանի օրինակներ, կատարվում էին հաշվումներ, որից հետո իրենք՝ ունկնդիրները ցույց էին տալիս իրենց տեղամասերում ինքնարժեքի իջեցման հարցում եղած թերությունները:

Կոնկրետ էկոնոմիկայի գծով իրենց գիտելիքները հարստացնելու շնորհիվ մարդիկ սկսեցին կատարել ցեխերի տնտեսական գործունեության հաշվարկումներ և վերլուծություններ, զգալիորեն բարձրացավ նրանց պատասխանատվությունը՝ նյութերը և դրամական միջոցները ծախսելու գործում: Ցեխերի պետերն սկսեցին կարգի բերել հաշվառումը, բարձրացավ աշխատանքային և արտադրական կարգապահությունը: Գործարանի ցեխերից մեկի պետ Օ. Թադևոսյանը սիստեմատիկաբար թույլ էր տալիս աշխատավարձի և հաղվագյուտ նյութերի գերածախս, որը արգելակում էր նաև մյուս ցեխերի աշխատանքը: Բավականաչափ լավ չըմբռնելով ցեխի էկոնոմիկան, Օ. Թադևոսյանը ցեխի ետ մնալը բացատրում էր միայն բանվորական ուժի պակասով, չնայած, որ ցեխն աշխատանքի գծով պլանավորված լիմիտից համարյա 20 տոկոսով ավելի աշխատողներ ուներ: 1957 թվականից հաճախելով սեմինար պարապմունքներին, Օ. Թադևոսյանը մեծ հետաքրքրություն հանդես բերեց իր ղեկավարած արտադրության էկոնոմիկայի նկատմամբ: Ակտիվորեն հաճախելով սեմինարներին, նա ձեռք բերեց տնտեսական աշխատանքը վերլուծելու ունակություններ, որը նրան օգնեց լավ կազմակերպելու աշխատանքները և հասնելու արտադրական լավ ցուցանիշների: Դրանից հետո օրավուր սկսեցին բարձրանալ ցեխի բոլոր տեխնիկական ցուցանիշները և այսօր այն գործարանի առաջավոր ցեխերից մեկն է, որը արդեն մի քանի անգամ նվաճում է փոխանցիկ կարմիր դրոշը: Հատկապես բնորոշ է, որ եթե առաջներում ընկ. Օ. Թադևոսյանը պատրաստ էր ցեխում ունենալու թեկուզ 100 հոգի ավելի աշխատող, ապա այժմ նա ոչ միայն չի խնդրում, որ ավելացնեն իր ղեկավարած ցեխի աշխատողների թիվը, այլ ընդհակառակը, ուղիներ է որոնում աշխատողների թիվը կրճատելու համար:

Նման դրության մեջ էր գործարանի մեկ ուրիշ ցեխ, որը ղեկավարում է երիտասարդ մասնագետ Գ. Վասիլյանը: Ցեխը ոչ մի կերպ չէր կարողանում կանխել աշխատավարձի ֆոնդի գերածախսը: Այդ երևույթը, ինչպես ընդունված է ասել, նկատվում էր ամեն տեղ և ամենուրեք: Դա այն բանի հետևանքն էր, որ չունենալով համապատասխան տնտեսագիտական պատրաստություն, Գ. Վասիլյանը չէր կարողանում խորապես վերլուծել ցեխի ետ մնալու պատճառները: Բայց երբ նա սեմինարում մեծ ակտիվությամբ սկսեց ուսումնասիրել տնտեարդյունաբերության էկոնոմիկայի հարցերը և ձեռք բերեց անհրաժեշտ տնտեսագիտական գիտելիքներ, սկսեց ուղիներ որոնել աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, մշակել և ներդնել ցեխի տեղամասերի աշխատանքների բարելավման նորանոր միջոցառումներ, բացահայտել ցեխի թաքնված հնարավորությունները: Եվ այժմ արդեն արդյունքներն առկա են: Վերջին վեց ամիսների ընթացքում Գ. Վասիլյանի ղեկավարած ցեխը աշխատում է լավ, զգալիորեն խնայելով աշխատավարձի ֆոնդը և կատարելով տնտեսական այլ կարևորագույն ցուցանիշներ:

Այսպիսի օրինակներ շատ կարելի է բերել: Ցեխերի ղեկավարները, վարպետները և արտադրության մյուս հրամանատարները սկսել են ավելի խնայողաբար վերաբերվել պետական դրամական միջոցներին և նյութական ռեսուրսներին: Համարյա բոլոր տեղամասերում օժանդակ նյութերի ծախսերը կրճատվել են ոչ պակաս, քան 30 տոկոսով:

Եթե առաջներում ցեխերի պետերը, այն բոլոր օժանդակ նյութերը, ինչ հասնում էր իրենց լիմիտով, անմիջապես դուրս էին գրում գործարանի կենտրոնական պահեստից և փոխադրում իրենց ցեխը, ապա այժմ այդ գործին

զգուշությամբ են վերաբերվում, չեն ցանկանում վերցնել ոչ մի ավելորդ բան, եթե նույնիսկ այն առանձնացված է իրենց համար։

Առանձին թեմաների ուսումնասիրության ժամանակ մենք հրավիրում էինք հատուկ դասախոսներ։ Դա հնարավորություն էր տալիս ավելի խոր ուսումնասիրել տվյալ թեման։ Օրինակ, անցյալ տարի «Աշխատավարձը սոցիալիստական ձեռնարկությունում» հարցի ուսումնասիրությանը զուգընթաց այդ թեմայի վերաբերյալ կազմակերպեցինք դասախոսություն։

Սեմինարի վերջին պարապմունքում ուսումնասիրվեց «Արտադրության հաշվապահական հաշվեկշռի հիմունքները» թեման։ Այս թեմայի շուրջը դասախոսություն կարդաց գործարանի գլխավոր հաշվապահ Ն. Պողոսը։ Իհարկե, նպատակահարմար չէ կոնկրետ էկոնոմիկայի սեմինար պարապմունքում չափազանց մանրամասնորեն խորանալ հաշվապահական հաշվեկշիռների մանրուքների մեջ։ Դրա անհրաժեշտությունը չի զգացվում, որովհետև մեր նպատակն այն չէ, որպեսզի սեմինարի մասնակիցներից պատրաստենք մասնագետ-հաշվապահներ։ Սակայն մեր խոր համոզմունքն այն է, որ արտադրության յուրաքանչյուր ղեկավար պարտավոր է իմանալ հաշվապահական հաշվեկշռի հիմնական հարցերը։ Այդ նկատառումով մենք դասախոսին նախօրոք խորհուրդ տվեցինք դասախոսության ժամանակ շարադրել արտադրության հաշվապահական հաշվեկշռի հիմնական մոմենտները, նյութերի ծախսման հաշվառման, արտադրանքի կալկուլյացիայի կարգը, տնտեսական հաշվառման էությունը և այլն։ Եվ դասախոսն այդպես էլ վարվեց։

Կոնկրետ էկոնոմիկան ինքնուրույն կերպով ուսումնասիրողների համար որպես ուսումնական հիմնական ձեռնարկ ծառայում է «Սոցիալիստական արդյունաբերական ձեռնարկությունների էկոնոմիկան» գիրքը։ Մենք կարծում ենք, որ հարկավոր է լայնորեն օգտագործել նաև արդյունաբերական էկոնոմիկայի հարցերի վերաբերյալ բրոշյուրներ, ինֆորմացիոն թերթիկներ և ժուռնալային հոդվածներ։ Արդյունաբերության էկոնոմիկայի համարյա բոլոր հարցերի վերաբերյալ մեզ մոտ հրապարակվող այդպիսի բրոշյուրներում մատչելի ձևով շարադրված նյութերը ավելի հեշտ են յուրացնում արտադրության մեջ աշխատող այն ընկերները, որոնք չունեն տնտեսագիտական կրթություն։

Գործարանի պարտիական բյուրոն հատուկ ուշադրություն էր նվիրում մեր սեմինարին, անում էր ամեն բան, որպեսզի նրա աշխատանքը լինի հետաքրքիր ու բովանդակալից։

---

# ՓՈՔՐԻԿ ԹԵՐԹԵՐԻ ԼԱՎ ԳՈՐԾԵՐԸ

## Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

Անցյալ տարվա վերջերին Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի բյուրոն քննության առավ ռեսպուբլիկայի կոլտնտեսային բազմատիրաժ թերթերի աշխատանքի վիճակը, որը մեծ նշանակություն ունեցավ այդ թերթերի աշխատանքի բարելավման իմաստով։

Կոլտնտեսության սեփական տպագիր թերթերը մի նոր նշանակալից երևույթ, կարևոր իրադարձություն են մեր գյուղի կյանքում, որոնց հրատարակման անհրաժեշտությունը թելադրված է կյանքի կողմից։ Դրանք ավելի մատչելի ու ներգործուն են, քան պատի թերթերը։ Բազմատիրաժ թերթերը կոչված են զարգացնելու գյուղական աշխատավորների նախաձեռնությունն ու ակտիվությունը, մոբիլիզացնելու նրանց ուժերը՝ հաջողությամբ լուծելու կոլտնտեսությունների առջև կանգնած խնդիրները։ Չնայած իրենց փոքր ծավալին, բազմատիրաժ թերթերը մեծ գործ կարող են անել։ Այդ թերթերի առավելությունը հենց այն է, որ լույս տեսնելով անմիջապես կոլտնտեսությունում, մոտիկ կանգնած լինելով գյուղի մարդկանց, ավելի լավ կարող են արտահայտել գյուղական աշխատավորների հույզերն ու խոհերը, դառնալ նրանց իսկական բարեկամն ու խորհրդատուն։

Բայց ամեն մի գործի սկիզբ ունի իր դժվարությունները։ Բազմատիրաժ թերթերն էլ ունեն իրենց դժվարությունները։ Սկզբնական շրջանում որոշակի չէր այդ թերթերի դեմքը, պրոֆիլը, լավ չէր կազմակերպված խմբագրական կոլեգիաների աշխատանքը։ Դրանով պետք է բացատրել, որ նրանց էջերը երբեմն լցվում էին երկարաշունչ նյութերով, շատ էին արտատպությունները, որոնք անմիջական առնչություն չունեին կոլտնտեսային արտադրության հետ. շատ թղթակցություններում տիրապետողն ընդհանուր դատողություններն էին՝ զուրկ կոնկրետ փաստերից։ Առանձին սկզբնական պարտիական կազմակերպություններ և կոլտնտեսությունների վարչություններ նախաձեռնելով տպագիր թերթի հրատարակումը, այդ թերթերի առաջին համարները լույս ընծայելուց հետո, նրանց անհրաժեշտ օգնություն ու ղեկավարություն ցույց չէին տալիս։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումից հետո զգալիորեն բարելավվել է կոլտնտեսային թերթերի գործունեությունը։ Այժմ ռեսպուբլիկայի 24 կոլտնտեսություններ ունեն իրենց տպագիր օրգանները։ Պարտշրջկոմները և սկզբնական կազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել կոլտնտեսային բազմատիրաժների աշխատանքի կազմակերպման հարցերով, օգնելով խմբկոլներին՝ թերթերը դարձնելու առաջավոր մարդկանց լավագույն ամբիոն, գործարար կերպով քննադատելու աշխատանքում տեղ գտած թերությունները։ Այնտեղ, ուր պարտիական հոգատարություն կա ստորին մամուլի նկատմամբ, թերթերը կանգնած են իրենց կոչման բարձրության

վրա։ Ձնայած իրենց երիտասարդ կյանքին, դրանցից շատերն արդեն կուտակել են որոշակի փորձ, որը պետք է ընդհանրացվի։ Դա անհրաժեշտ է, քանի որ այդ թերթերն ունեն մեծ ապագա։ Նրանք զարգանում են, տարածվում։ Եվ այդ միանգամայն բնական, օրինաչափ երևույթ է, ուրախալի երևույթ։ Իրենց գոյության այս կարճ ժամանակամիջոցում կոլտնտեսային թերթերը ցույց տվեցին, թե ինչեր կարող են անել նրանք գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի, յուղի արտադրությամբ առաջիկա տարիներում ԱՄՆ-ին հասնելու մասին մեր պարտիայի առաջադրանքը կատարելու համար։

Ընդամենը երեք ամիս է, որ Արտաշատի շրջանի Նորաշեն, Այգեզարդ, Վերին Արտաշատ, Մխչյան գյուղերում լույս են տեսնում կոլտնտեսային տպագիր թերթեր։ Առաջին հայացքից գուցե թվա, թե դեռ վաղ է դրանց փորձի մասին խոսելը, քանի որ նրանք դեռ ապրում են այսպես կոչված «կազմակերպական» շրջան։ Սակայն այդպես չմտածեցին Արտաշատի պարտշրջկոմի ընկերները։ Վերջերս շրջկոմի բյուրոյում ամփոփվեց կոլտնտեսային տպագիր թերթերի աշխատանքի նախնական արդյունքները։ Քննարկումը ցույց տվեց, որ այդ թերթերի խմբագրական կոլեգիաները ճիշտ են հասկացել իրենց խնդիրները և նկատելի գործ են կատարում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդման ուղղությամբ։

Ձնայած թերթերի շատ փոքր ծավալին, այնուամենայնիվ դա չի խանգարում յուրաքանչյուր համարում զետեղել 15—20 թղթակցություն և ֆոտոնկարներ։

Իսկ ինչի՞ մասին են գրում կոլտնտեսային թերթերը։

Ահա «Նորաշեն» թերթի առաջին համարը, որը լույս է տեսել մարտի 16-ին։ «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու հարցի քննարկումը» խորագրի տակ տպագրված են կոլտնտեսային պարտկազմակերպության բյուրոյի քարտուղար Բ. Մանուկյանի ելույթը՝ «Կյանքի թելադրանքով» վերնագրով, ինֆորմացիա կոլտնտեսականների ընդհանուր ժողովի և այդ ժողովի որոշումը՝ տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ գնելու մասին։ «Խոսում են բարձր բերքի վարպետները» խորագրի տակ իր տպավորություններն է պատմում բամբակագործների Համամիութենական խորհրդակցության մասնակից Ն. Օհանյանը, իսկ այգեգործ բրիգադիր Լ. Բոյախչյանի թղթակցությունը նվիրված է խաղողի այգիների մշակության ընթացքին։ Այդ նույն համարում տպագրվել է թղթակցություն երիտասարդության քաղաքական ուսուցման մասին, ինչպես նաև կարճ հաղորդումներ դաշտերից ու ֆերմաներից։

«Այգեզարդ» թերթի համարներից մեկում զետեղված թղթակցություններից ընթերցողն իրազեկ է դառնում, թե կոնկրետ ի՛նչ է արվում կոլտնտեսությունում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ, տպագրված են առաջավոր անասնապահներ Մուսա Բարոևի և Վարսիկ Դավթյանի նկարները։ Խաղողի այգիների մշակության ընթացքի մասին պատմում է գյուղատնտես Ա. Սայիլյանը, դպրոցի հասունության ատեստատով արտադրություն գնացող երիտասարդության լավագույն աշխատանքի մասին է գրում դպրոցի դիրեկտոր Ա. Միրիբյանը։

Ահա և Մխչյան գյուղի կոլտնտեսության «Խաղողագործ» թերթի մեկ հա-



մարը։ «Մեծ հեռանկարներ» վերնագրով հոդվածում պատմվում է առաջիկա
տարիներին կոլտնտեսության էկոնոմիկայի հեռանկարային զարգացման մա-
սին։ Թերթը էջ է նվիրել Մխչյան—Աղամզալու կոլտնտեսությունների միջև
ծավալվող սոցիալիստական մրցությանը։

Արտաշատի պարտշրջկոմը նշելով այն դրականը, որ կա բազմատիրաժ
թերթերի աշխատանքում, միաժամանակ բացահայտեց գոյություն ունեցող
թերությունները և նրանց վերացման նպատակով նշեց կոնկրետ միջոցառում-
ներ։ Նա պարտիական կազմակերպությունների, խմբկոլների ուշադրությունը
հրավիրեց առաջավոր փորձի պրոպագանդայի, սոցիալիստական մրցության
ծավալման, գյուղերի բարեկարգման ու կուլտուրական շինարարության հար-
ցերի լուսաբանման վրա։

Պարտշրջկոմների, սկզբնական պարտկազմակերպությունների ուշադրու-
թյան ու հոգատարության շնորհիվ բազմատիրաժ թերթերը գնալով դառնում
են մարտական, ներգործուն։ Այդ իմաստով ուսանելի է նաև Վեդու պարտ-
շրջկոմի և Արարատ գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսության պարտկազ-
մակերպության փորձը։ Անցյալ տարվա դեկտեմբերին պարտշրջկոմը հան-
գամանորեն քննության առավ «Արարատ» թերթի խմբկոլի գործունեությունը,
որը զգալիորեն նպաստեց բարելավելու բազմատիրաժի աշխատանքը։ Կոլ-
տնտեսության պարտկազմակերպության բյուրոն կենսագործելով շրջկոմի
բյուրոյի որոշումը, կարողացել է թերթը դարձնել ավելի հետաքրքրական,
նրա յուրաքանչյուր նոր համար տարբերվում է նախորդից՝ նյութերի բազ-
մազանությամբ, հարուստ բովանդակությամբ։

Պարտիական կազմակերպության բյուրոն ուշի-ուշով հետևում ու ամեն
կերպ պաշտպանում է թերթի քննադատական ելույթները։ Թերթի ոչ մի ահա-
զանգ չի մնում անպատասխան։ Այսպես, օրինակ, գյուղի թղթակիցներն ահա-
զանգեցին, որ ֆերմայում վատ է կազմակերպված մատղաշների խնամքը։
Այդ նյութերի հիման վրա թերթը տպագրեց ֆելիետոն։ Պարտբյուրոն անդրա-
դարձավ այդ հարցին և նրա կողմից ձեռնարկված միջոցառումները օգնեցին
անհապաղ վերացնելու նշված թերությունները։

Երկար ժամանակ կաթնապրանքային ֆերմայում, որոշ կթվորուհիների
անազնվության պատճառով, ցածր էր ստացվող կաթի յուղայնության տոկո-
սը։ Դրա հետևանքով կոլտնտեսությունը ստիպված էր անցյալ տարի 260
ցենտներ պլանից ավելի կաթ հանձնել՝ յուղայնության տոկոսը լրացնելու
համար։ Այդ մասին ֆերմայում գիտեին, բայց լռում էին, սակայն երբ թեր-
թում քննադատական հոդված տպագրվեց, այլևս լռել հնարավոր չէր։ Պար-
տիական կազմակերպությունը ֆերմայի աշխատողների հետ միասին քննու-
թյան առավ թերթի ահազանգը։ Ձեռնարկված միջոցառումները օգնեցին
վերացնելու այդ արատավոր պրակտիկան, բարձրացնելու կաթի յուղայնու-
թյան տոկոսը։ Թերթի ելույթը առիթ եղավ, որպեսզի պարտկազմակերպու-
թյունը լրջորեն զբաղվեր անասնապահների մեջ տարվող քաղաքական-մաս-
սայական աշխատանքի բարելավման հարցով։

Արարատի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը ուղղու-
թյուն է տալիս թերթի խմբագրական կոլեգիայի աշխատանքին, օգնում իր
խորհուրդներով ու հանձնարարականներով։ Օրինակ, նրան խորհուրդ տրվեց
առաջիկա համարներում առաջ քաշել ֆերմաներում կոմերիտական հերթա-
պահություն սահմանելու և կոլտնտեսությունում վաղահաս կաղամբ մշակե-

լու հարցերը: Այդ նյութերը լայն արձագանք ու պաշտպանություն գտան ընթերցողների կողմից, տալով հիանալի արդյունքներ:

Կոլտնտեսականների հետ կապը ուժեղացնելու նպատակով պարտկազմակերպության որոշմամբ արտադրության վճռական տեղամասերում ստեղծված են «Արարատ» թերթի հսկիչ պոստեր, որոնք նկատված թերությունների մասին անմիջապես իրազեկ են պահում խմբագրությանը: Թերթի շուրջը այժմ համախմբված է թղթակցական լայն ակտիվ: Իրենց բազմատիրաժին աշխատակցում են բազմաթիվ կոլտնտեսականներ, որոնք թելադրում են առանձին թեմաներ, հիշեցնում խմբագրությանը, թե ինչի մասին և ինչպես գրել:

Կոլտնտեսային թերթերի լույս ընծայումը էպիզոդիկ գործ, կարճատև կամպանիա չէ: Մամուլը պարտիական աշխատանքի կարևորագույն օղակն է: Նրա միջոցով պարտիական կազմակերպությունը խոսում է կոլտնտեսականների, գյուղական ինտելիգենցիայի հետ, պատմում է պարտիայի և կառավարության առաջադրանքներից ելնելով տվյալ կոլտնտեսության խնդիրների մասին, գյուղի աշխատավորության ուշադրությունն է հրավիրում քաղաքական, տնտեսական հրատապ հարցերի վրա:

Ահա թե ինչով պետք է բացատրել այն մեծ ձգտումը, որ ունեն մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսային պարտկազմակերպությունները դեպի բազմատիրաժ թերթերի հրատարակումը: Վերը նշված փաստերը դեռևս սպառիչ չեն բնութագրում կոլտնտեսային թերթերի բեղմնավոր աշխատանքը, այնուամենայնիվ որոշ պատկերացում տալիս են:

Սակայն ճիշտ չէր լինի աչք փակել այն թերությունների առաջ, որոնք գոյություն ունեն այդ թերթերի աշխատանքում: Ահազանգումներ են ստացվում տեղերից, որ առանձին պարտկազմակերպություններ և կոլտնտեսությունների վարչություններ անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս իրենց տպագիր օրգանին, որի պատճառով նրանցից մի քանիսը դադարել են լույս տեսնելուց: Ինչպե՞ս են հանդուրժում նմանօրինակ երևույթը, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր, Թալինի շրջանի Մաստարա, Սպիտակի շրջանի Մեծ Պարնի գյուղերի կոլտնտեսությունների պարտկազմակերպություններն ու արտելների վարչությունները: Զարմանալի է, որ պարտշրջկոմները չեն միջամտում գործին: Բազմատիրաժ թերթերի հրատարակումը պարտիայի առանձին շրջկոմներ դեռևս շարունակում են ամբողջապես վերավստահել շրջանային թերթերի խմբագրությունների աշխատողներին, որոնք ամենօրյա կապ չունեն տվյալ կոլտնտեսության հետ, շաբաթներով չեն երևում գյուղում: Հետևանքը լինում է այն, որ երբեմն առանց այն էլ սուղ էջերը լցվում են այնպիսի նյութերով, որոնք չեն արտացոլում տվյալ կոլտնտեսության ու նրա մարդկանց բազմաբովանդակ կյանքը, այն անձնվեր աշխատանքը, որ մղվում է գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար:

Նոր Բայազետի պարտշրջկոմում մի առանձին կրքոտությամբ ձեռնամուխ եղան կոլտնտեսային տպագիր թերթերի հրատարակությանը: Շրջանում արդեն լույս են տեսնում կոլտնտեսային չորս բազմատիրաժ թերթ՝ Սարուխանում, Նորադուզում, Հացառատում և Կարմիրում: Սակայն հարկ է նշել, որ կոլտնտեսային պարտիական կազմակերպություններն անհրաժեշտ չափով չեն օգնում ու ղեկավարում իրենց տպագիր օրգանների գործունեությունը: Նորադուզի «Իլյիչի պատգամներով» թերթի մինչև օրս լույս տեսած համարները հրատարակվել են գրեթե միայն խմբագրի ուժերով, իսկ խմբկոլի անդամների մեծ մասը հեռու են կանգնած խմբագրական աշխատանքից: Բայց դա շատ քիչ է անհանգստացնում պարտիական կազմակերպությանը:



Բազմատիրաժ թերթերում քիչ չեն կոլտնտեսային արտադրության, սովետական շինարարության և այլ հարցերին վերաբերող քննադատական նյութերը, բայց միշտ չէ, որ դրանք հարկ եղած ուշադրության են արժանանում կոլտնտեսության վարչության ու պարտիական կազմակերպության կողմից: Հաճախ քննադատական դիտողություններ են արվում շրջանային առանձին կազմակերպությունների հասցեին: Այսպես, «Սարուխանի կոլտնտեսական» թերթն իր համարներից մեկում սուր քննադատության էր ենթարկել շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնին և շրջկոոպի վարչությանը: Բայց այդ քննադատական հոդվածները մնացին անհետևանք. շրջկոոպի վարչությունը և կուլտուրայի բաժինը հարկ չհամարեցին պատասխանել թերթի տեղին քննադատությանը:

Գրեթե բոլոր թերթերում անբավարար է լուսաբանվում առաջավոր անասնապահների փորձը: Այսպես, Սարուխանի և Նորադուզի կոլտնտեսությունները լուրջ հաջողությունների են հասել կովերի կաթնատվության բարձրացման ուղղությամբ, բայց բազմատիրաժների էջերում անբավարար է լուսաբանվում սոցիալիստական մրցության ընթացքը: Նրանք դեռևս լրջորեն չեն անդրադարձել այն հարցին, թե ինչպե՞ս, ի՞նչ միջոցառումներով են ձեռք բերվել այդ արդյունքները:

Անցյալ տարվա սեպտեմբեր ամսից Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղում սկսեց թերթ լույս տեսնել: Առաջին համարի առաջնորդող հոդվածում «Վարդենիկը» մեծ խոստումներ էր տալիս գյուղի աշխատավորներին.

«... Թերթը նպատակ է դնում ավելի մոտիկ կանգնել կոլտնտեսային կյանքին, կարևոր դեր խաղալ գյուղատնտեսության վերելքի գործում... Թերթի էջերում ցայտուն կերպով երևալու են կոլտնտեսության աշխատանքներին նվիրված, նախաձեռնող մարդիկ, կպրոպագանդվի նրանց աշխատանքի փորձը...»: Սակայն թերթը դեռևս վատ է կատարում իր տված խոստումները: Ավելի մոտ լինելով կոլտնտեսային արտադրությանը, թվում էր, թե թերթը լայնորեն կլուսաբաներ ամեն մի բրիգադի, օղակի, կոլտնտեսականի, մեխանիզատորի աշխատանքը, նրանց առօրյան: Բայց իրականում այդպես չստացվեց: Առաջին մի քանի համարները կանոնավոր լույս ընծայելուց հետո, թերթի խմբագիր ընկ. Ս. Սարգսյանը և խմբագրական կոլեգիայի մյուս անդամները սկսեցին անտարբեր վերաբերվել գործին: Վերջին շրջանում սկսեցին հաճախակի երևալ երկարաշունչ նյութերն ու արտատպությունները: Թղթակցությունները ընդհանուր են և կոնկրետ փաստերից զուրկ: Չեն տպագրվում նաև քննադատական նյութեր, չեն բացահայտվում կոլտնտեսությունում գոյություն ունեցող թերությունները, չեն խարազանվում մակաբույծները, լոդրերը, կոլտնտեսային արտադրությունից խուսափողները: Վերջերս շրջանային «Կոլտնտեսային ուղի» թերթում տպագրվեց մամուլի տեսություն «Վարդենիկի» համարներից մեկի մասին: ՀԿՊ Մարտունու շրջկոմի բյուրոն քննության առավ մամուլի տեսությունը և արձանագրեց, որ նրանում հիշատակված բոլոր փաստերը համապատասխանում են իրականությանը: Շրջանային կոմիտեն գործնական միջոցառումներ մշակեց կոլտնտեսային թերթի աշխատանքները բարելավելու համար:

Բազմատիրաժ թերթերի առաջին համարների հրատարակման փորձը ցույց է տալիս, որ այդ գործը գլուխ բերելու համար դժվարություններն ավելի շատ են, քան ենթադրում էին դրանց հրատարակողները: Այդ տեսակետից շատ հետաքրքրական է Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղի կոլտնտեսային թերթի խմբագիր Ն. Սահակյանի նամակը, ուր ասված է.

«Մեր թերթի այս տարվա հունվարի համարում տպագրված «Ուշադրություն դարձնել երիտասարդության դաստիարակությանը» հոդվածը քննարկեց կոլտնտեսության պարտիական կազմակերպության բյուրոն և գրեթե մեղադրեց ինձ: Բյուրոյի քարտուղար ընկ. Մ. Աբգարյանը, գյուղսովետի գործկոմի նախագահ ընկ. Ս. Անթառանյանը և պարտիայի Ալավերդու շրջկոմի հրահանգիչ Վ. Մելիքյանը դատապարտեցին ինձ այն բանի համար, որ ես համարձակվել եմ քննադատել գյուղի պարտիական և սովետական կազմակերպություններին: Ընկերների արած դիտողությունները ես չընդունեցի, որովհետև նրանք պնդում էին, որ իբր թերթն իր շրջանակներից ու սահմաններից դուրս է եկել: Նրանք գտնում են, քանի որ թերթը պարտիական կազմակերպության բյուրոյի, կոլվարչության և գյուղական Սովետի օրգանն է՝ նշանակում է դրանց գործունեությունը չպետք է քննադատի»:

Տեղում կատարված ստուգումից պարզվեց, որ «Ուզունլարի կոլտնտեսական» թերթը տպագրելով վերոհիշյալ հոդվածը, խրախուսելի գործ է կատարել: Պարտկազմակերպության բյուրոյում այդ հոդվածի քննարկման ժամանակ բյուրոյի անդամներն իրենց ելույթներում նշել են, որ հոդվածում բարձրացված հարցերը կարևոր են: Այդ որոշումից չի երևում, թե պարտկազմակերպության բյուրոն ի՞նչ միջոցառումներ է մշակել գյուղի երիտասարդության դաստիարակությունն ուժեղացնելու համար:

Ուրեմն ինչո՞ւմն է բանը, ինչո՞ւ վեճեր առաջացան վերոհիշյալ թղթակցության շուրջը: Պարզվում է, որ այդ բոլորը տեղի է ունեցել թղթակցության եզրափակիչ մասի պատճառով, որը վերջանում է հետևյալ խոսքերով. «Գյուղի պարտիական և սովետական կազմակերպությունները պետք է երիտասարդության շրջանում ուժեղացնեն ագիտացիոն-մասսայական աշխատանքները: Անհրաժեշտ է հաճախակի կազմակերպել զրույցներ ու զեկուցումներ, երեկոներ ու հետաքրքիր այլ միջոցառումներ»:

Թերթը, ինչպես երևում է, բարի նպատակ է հետապնդում, ուզում է լավացնել գյուղի երիտասարդության դաստիարակության գործը: Բայց թղթակցության հեղինակը քննադատելով կոլտնտեսային, դպրոցական ու տերիտորիալ պարտկազմակերպությունների բյուրոներին, ոչ մի կոնկրետ օրինակ չի բերել, սահմանափակվել է ընդհանուր դատողություններով և խորհուրդներով:

Պարտկազմակերպությանը, կոլտնտեսության վարչությանը, գյուղսովետի գործկոմին ցուցումներ տալու շատ հավակնություն ունի նաև Ախտայի շրջանի Ալափարս գյուղի տպագիր թերթը: Նրա նյութերի վերջին պարբերություններում կարելի է կարդալ «պարտկազմակերպության խնդիրն է», «պարտիական կազմակերպությունն ու գյուղական Սովետը հանդես են գալիս դիտողի դերում», «պարտիական կազմակերպությունը պետք է համապատասխան եզրակացություն հանի»:

Ինչպես «Ալափարսի կոլտնտեսական», այնպես էլ մի քանի կոլտնտեսային բազմատիրաժ թերթեր պատճենահանում են շրջանային և ռեսպուբլիկական մամուլին, մոռանալով, որ նրանք իրենց խոսքը պետք է ուղղեն առաջին հերթին շարքային կոլտնտեսականներին, նրանց ուշադրությունը բևեռեն կոլտնտեսության առաջ կանգնած խնդիրների կատարման վրա:



Ինչ խոսք, որ թերթը հանդիսանում է պարտկազմակերպության բյուրոյի օրգանը, նա չի կարող իրեն բարձր դասել բյուրոյից, պարտկազմակերպությունից, ընդհակառակը՝ թերթը կոչված է կենսագործելու պարտկազմակերպության, նրա բյուրոյի որոշումները, բայց նա կարող է և պարտավոր է քննադատել պարտբյուրոյի առանձին անդամներին, կոլտնտեսության վարչությանը և այն մարդկանց, ովքեր թերանում են, իրենց աշխատանքում թույլ են տալիս սխալներ:

Քննադատությունն, իհարկե, ինքնանպատակ չէ: Այն պետք է լինի օգնող, բարեկամական: Խնդիրը այն է, որ անհետևանք չմնան թերթերի քննադատական ելույթները, ընթացք տրվեն համապատասխան կազմակերպությունների կողմից, և որ ամենից կարևորն է, արագորեն վերացվեն բացահայտված թերությունները:

Սխալ կլիներ կոլտնտեսային թերթերի աշխատանքում նկատվող թերությունները ամբողջովին բարդել սկզբնական պարտկազմակերպությունների, նրանց բյուրոների վրա: Քիչ մեղք չունեն շրջանային և ռեսպուբլիկական թերթերի խմբագրությունները, որոնք ոչինչ չեն գրում այդ թերթերի ո՛չ դրականի, ո՛չ բացասականի մասին, չկան մամուլի տեսություններ, կոնսուլտացիոն հոդվածներ և այլն. բոլորովին անբավարար են այն հատ ու կենտ, կցկտուր ինֆորմացիաները, որոնք մեկ-մեկ երևում են այս կամ այն թերթում: Ուշադիր կարդալով այդ փոքրիկ թերթերը, ունկնդրելով նրանց առողջ ձայնը, հատկապես շրջանային թերթերը խելացիորեն կարող են օգտագործել նրանց նյութերը: Ինչո՞ւ չի կարելի կոլտնտեսային թերթերում տպագրված լավագույն փորձը, քննադատական թղթակցությունը, երգիծանքն ու հումորը արտատպել շրջանային թերթում: Այդ բանը աշխուժություն կմտցնի ոչ միայն կոլտնտեսությունում, նրա թերթի խմբագրական կոլեգիայում, այլև հենց շրջանային թերթում: Կարելի է հասնել այն բանին, որ կոլտնտեսային տպագիր թերթը, նրա խմբկոլը դառնա շրջանային և ռեսպուբլիկական թերթի հսկիչ պոստը, աչքն ու ականջը, շոշափուկը: Այդ դեպքում գյուղի աշխատավորության հարուստ կյանքը կլուսաբանվի բազմակողմանի, ճշմարտացի, օպերատիվ:

Կոլտնտեսային բազմատիրաժ թերթերի աշխատանքում նկատվող թերությունները ու դժվարությունները հնարավոր է հաղթահարել, եթե պարտկազմակերպություններն անհրաժեշտ օգնություն ու ղեկավարություն ցույց տան խմբկոլներին, օգնելով նրանց թերթի շուրջը համախմբելու թղթակցական ավելի լայն ակտիվ: Թերթերի էջերում պետք է հանդես գան շարքային կոլտնտեսականները, բրիգադիրները, գյուղական ինտելիգենցիայի ներկայացուցիչները, կոլտնտեսությունների վարչությունների և գյուղսովետների գործկոմների նախագահները, կոլտնտեսային գյուղի բոլոր մարդիկ: Այդ դեպքում կոլտնտեսային փոքր թերթերը կարող են ավելի մեծ գործեր կատարել:

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ՆՈՐ ԺՈՂՈՎԱԾՈՒ*

Հայ ընթերցողը ստացավ մի լավ նվեր։ Հայպետհրատը հրատարակել է մի ժողովածու, ուր ամփոփված են Վ. Ի. Լենինի կարևորագույն աշխատությունները ազգային և ազգային-գաղութային հարցի մասին։

Ազգային հարցը պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի ընդհանուր հարցի բաղկացուցիչ մասն է։ Պատմական նոր պայմաններում զարգացնելով մարքսիզմը, Լենինը տեսականորեն հիմնավորեց ու ամբողջական ուսմունք ստեղծեց ազգային և ազգային գաղութային հարցի մասին, մշակեց կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականությունը և ղեկավարեց նրա պրակտիկ իրականացումը սոցիալիստական առաջին երկրում։

Ներկա ժողովածուում ժամանակագրական կարգով զետեղված են Վ. Ի. Լենինի հոդվածները, զեկուցումները, նամակները և նրա կողմից գրված բազմաթիվ փաստաթղթերը՝ բանաձևեր, թեզիսներ, օրինագծեր և այլն։ Ընթերցողն այստեղ կգտնի առաջնորդի ծրագրային այնպիսի աշխատություններ, ուր նա տեսականորեն հիմնավորել է մեր պարտիայի ծրագիրը ազգային հարցում, բացահայտել ու ջախջախիչ հարված հասցրել հակամարքսիստական հայացքներին։ Այդ աշխատություններից են՝ «Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին», «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին», «Սոցիալիստական ռևոլյուցիան և ազգերի ինքնորոշման իրավունքը», «Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունքները», «Մարքսիզմի ծաղրանկարի և «իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին» և այլն։

Ժողովածուում բազմաթիվ նյութեր կան ազգային-գաղութային հարցի մասին։ Լենինը իր աշխատություններում դիմակազերծ է արել իմպերիալիզմի գաղութային քաղաքականությունը, քննարկել ազգային-ազատագրական շարժման կարևորագույն պրոբլեմները։ Նա իր գործերում գիտականորեն հիմնավորել է սոցիալիստական բազմազգ պետության կառուցման, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, որոնք ուղեցույց են հանդիսանում ոչ միայն մեր պարտիայի, այլև մյուս երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների պրակտիկ գործունեության համար։

Այս ժողովածուն մեր կադրերին զինում է ազգային և ազգային-գաղութային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքով։ Նշելով հրատարակիչների գովելի նախաձեռնությունը և նրանց խնամքով աշխատանքը, կարելի է միայն ափսոսալ, որ ժողովածուում տեղ են գտել թարգմանական որոշ սխալներ ու սրբագրական բնույթի վրիպումներ։

Ահա դրանցից մի քանիսը։ Բնագրում ասված է.

«В каждом буржуазном национализме угнетенной нации есть общедемократическое содержание против угнетения, и это-то содержание мы безусловно поддерживаем...» (В. И. Ленин «О национальном и национально-колониальном вопросе», 1956 г., стр. 191).

Հայերեն տեքստում կարդում ենք. «Ճնշված ազգի յուրաքանչյուր բուրժուական նացիոնալիզմի մեջ կա ՀԱԿԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ (ընդգծումը մերն է — Ա. Հ.) բովանդակություն ընդդեմ ճնշման, և հենց այդ բովանդակությունն է, որ մենք անպայման պաշտպանում ենք...» (էջ 252)։ Բնագրի ավելի կոպիտ աղավաղում դժվար է պատկերացնել։ Ինչպես տեսնում ենք, Լենինի մոտ խոսքը ճնշված ազգի նացիոնալիզմի մեջ եղած ոչ թե հակադեմոկրատական, այլ համադեմոկրատական (ընդգծումը մերն է — Ա. Հ.) բովանդակության մասին է, բովանդակություն, որն ուղղված է իմպերիալիստական ճնշման դեմ։

«По цензурным условиям эта работа в словаре не была опубликована...» (стр. 563).

Այս տողերը թարգմանված են. «Գրաքննադատական պայմանների հետևանքով այդ աշխատությունը չհրատարակվեց բառարանում...» (էջ 749)։ Բայց մի՞թե ներելի է շփոթել այնպիսի երկու միանգամայն տարբեր հասկացություններ, ինչպիսիք են՝ գրաքննությունն ու գրաքննադատությունը։ Չէ՞ որ բնագրում խոսքը ոչ թե գրաքննադատության, այլ գրաքննության մասին է։

Ռուսերենում ասված է.

«Можно быть решительным противником этого принципа и сторонником демократического централизма, но предпочитать федерацию национальному неравноправию, как единственный путь к полному демократическому централизму» (стр. 261)

Հայերեն տեքստում կարդում ենք.

«Կարելի է լինել այդ սկզբունքի վճռական հակառակորդ և դեմոկրատական կենտրոնացման կողմնակից, բայց ազգային անիրավահավասարությունից գերադասել ֆեդերացիան, իբրև միակ ուղի և դեպի լիակատար դեմոկրատական ցենտրալիզմը» (էջ 347)։

Համեմատենք այս երկու տեքստերը։ Բնագրում նշվում է, որ ազգային անիրավահավասարությունից պետք է գերադասել ֆեդերացիան «իբրև միակ ուղի դեպի լիակատար դեմոկրատական ցենտրալիզմը», իսկ հայերենում անփույթ սրբագրման հետևանքով «իբրև միակ ուղի», «դեպի լիակատար դեմոկրատական ցենտրալիզմը» արտահայտությունները կապակցվել են «և» շաղկապով, որի հետևանքով իմաստը աղճատվել է։ Բացի այդ, միևնույն հրատարակության մեջ «централизм» բառը թարգմանված է «կենտրոնացում», իսկ մյուս դեպքում «ցենտրալիզմ»։

Ահա և մի այլ օրինակ։ «Другое дело, когда мы сами попадаем, хотя бы даже в мелочах в империалистские отношения к угнетаемым народностям...» (стр. 552).

Այս նախադասությունը թարգմանված է. «Այլ բան է, երբ մենք ինքներս ճնշվող ժողովուրդների նկատմամբ, թեկուզ և նույնիսկ մանրուքներում, իմպերիալիստական վերաբերմունք ենք ցուցաբերում...» (էջ 734)։ Միանգամայն անհասկանալի է, թե ինչու «попадаем» բառը թարգմանված է «ցուցաբերում». չէ որ բնագրում խոսքը գնում է ճնշված ժողովուրդների նկատմամբ այդպիսի վերաբերմունք ունենալու «դրության մեջ ընկնելու» մասին։

Հայերեն տեքստը ինչպես հարկն է չսրբագրելու օրինակ է գրքի հետևյալ պարբերությունը. «Մինչև այժմ այս ճշմարտությունը սոցիալիստների համար անվիճելի է եղել, իսկ նրանում պարփակված պետության ճանաչումը՝ ընդհուպ մինչև հաղթած սոցիալիզմի լիակատար կոմունիզմի վերաճելը» (էջ 421)։ Մեր խոսքը վերջին նախադասության մասին է, ուր խախտված են հայերեն լեզվի քերականության տարրական կանոնները։ Պարզվում է, որ այդ «պարփակված» բառից հետո դուրս է ընկել «է» օժանդակ բայը։

«Гобсон предвосхитил Каутского...» (стр. 285), թարգմանված է. «Հոբսոնը կանխել է Կաուցկուն...» (էջ 380)։ Այն ժամանակ, երբ «предвосхитил» բառը նշանակում է «կռահել», «գուշակել», «կանխապես իմանալ» և այլն։ Բնագրում նշվում է, որ ազգերի ինքնորոշման իրավունքի ծրագիրը ամբողջությամբ վերցրած (огульно), վերաբերում է բուրժուա-դեմոկրատական ազգային շարժումների բոլոր դեպքերին (ռուս. տեքստ, էջ 183)։ Իսկ հայերեն տեքստում ստացվել է, որ այդ ծրագիրը «վայրիվերո» վերաբերում է բուրժուա-դեմոկրատական ազգային շարժումների բոլոր դեպքերին» (էջ 242)։

Կարծում ենք՝ ժամանակն է, որ Հայպետհրատը ավելի մեծ խնամքով ընթերցողներին մատուցի մարքսիզմի կլասիկների երկերի թարգմանությունը։

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

---

* Վ. Ի. Լենին — «Ազգային և ազգային-գաղութային հարցի մասին», Հայպետհրատ, Երևան, 1957 թ., 794 էջ։

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ԿՈՆՖԵՐԱՆՍՆԵՐ

Ապրիլ-մայիս ամիսներին Արտաշատի, Գորիսի, Եղեգնաձորի, Իջևանի, Ղափանի, Նոր-Բայազետի, Շամշադինի, Սիսիանի և Վեդու շրջաններում գումարվեցին «Լենինյան ուղիով» ամսագրի ընթերցողների ու հեղինակային ակտիվի կոնֆերանսներ։ Այդ կոնֆերանսներում շուրջ 50 ընկերների ելույթները վկայում են այն մասին, որ բարձրացել է մեր ընթերցողների կուլտուրան ու քաղաքական մակարդակը, ընդլայնվել նրանց մտահորիզոնը և զարգացել նրանց ճաշակը։ Այժմ նրանք պահանջում են, որպեսզի հրապարակվող հոդվածները լինեն գաղափարական բարձր մակարդակով, խոր, գիտականորեն հիմնավորված ձևով լուսաբանվեն մեր պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, լիարյուն կերպով արծարծվեն պարտիական կյանքն ու սովետական մարդկանց ստեղծագործական առօրյան։

Իրենց ելույթներում ընկ. ընկ. Կարապետյանը (Եղեգնաձոր), Միրզոյանը (Շամշադին), Հայրապետյանը (Ղափան) նշեցին, որ պրոպագանդիստները, ագիտատորները և շատ ուրիշ ընկերներ հաճախակի դիմում են «Լենինյան ուղիով» ամսագրի օգնության և նրանից նյութեր են քաղում զեկուցումների ու զրույցների, պարտիական լուսավորության ցանցի պարապմունքների թեմաները մշակելու, ինքնազարգացմամբ զբաղվելու համար։ Սակայն նրանք իրենց հուզող ոչ բոլոր հարցերի վերաբերյալ սպառիչ պատասխան են գտնում ամսագրի էջերում։ Ելույթ ունեցողները, արտահայտելով շատ ընթերցողների կարծիքը, ցանկություն հայտնեցին, որպեսզի ամսագիրը հետագայում ավելի շատ տեղ հատկացնի ՍՄԿՊ պատմության ու տեսության, մեր պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության խոր, գիտական վերլուծության, քաղաքատնտեսության, կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրության, փիլիսոփայության վերաբերվող թեմաներին, որոնք մեծ օգնություն կհանդիսանան պրոպագանդիստներին ու ագիտատորներին, կոմունիստներին ու անկուսակցականներին։

Արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտում, կոլտնտեսություններում ու պետական հիմնարկներում պարտիական կազմակերպությունները գլխավորելով աշխատավորության քաղաքական ակտիվությունն ու արտադրական խանդավառությունը, այն ուղղել են ՍՄԿՊ XX համագումարի առաջադրանքներն անթերի կատարելու նպատակին։ Ամենուրեք կոմունիստները ապահովելով իրենց ավանգարդային դերը՝ աշխատանքային սխրագործությունների հիանալի օրինակ են տալիս մասսաներին։ Ահա թե ինչու պարտիական կյանքը լայնորեն ամսագրի էջերում լուսաբանելու հարցին նվիրեցին իրենց ելույթները ընկերներ՝ Պապիկյանը (Սիսիան), Մաթևոսյանը (Շամշադին), Աղաջանյանը (Նոր-Բայազետ), Փարսյանը (Գորիս), Տիգրանյանը (Վեդի) և ուրիշներ։ Նրանք ցանկանում են ամսագրի էջերում հաճախակի ընթերցել ուսանելի հոդվածներ ու թղթակցություններ՝ գրված առաջավոր պարտիական կազմակերպությունների, նրանց բյուրոների ու քարտուղարների աշխատանքի փորձի, հերթափոխությունների, բրիգադաների ու կոլտնտեսային ֆերմաների պարտիական խմբերի գործունեության մասին, որոնց լավագույն աշխատանքի փորձը կընդօրինակեն մյուսները։

Ընթերցողները բուռն ցանկություն հայտնեցին մշտապես իրազեկ լինել միջազգային կյանքին։ Նրանց հետաքրքրում են եղբայրական կոմունիստական պարտիաների գործունեությունն ու պայքարը, սոցիալիզմ կառուցող ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորության հաջողությունները։ Այդ իմաստով արտահայտվեցին ընկերներ՝ Թադևոսյանը (Ղափան), Դավթյանը (Իջևան), Հարությունյանը (Եղեգնաձոր), Բողոյանը (Նոր-Բայազետ), Վարդանյանը (Վեդի) և ուրիշներ։ Նրանք պահանջեցին, որպեսզի միջազգային հարցերին վերաբերող նյութերը լինեն թարմ, բարձրացված հարցերը վերլուծվեն խորը և ընթերցողին ճիշտ պատկերացում տան այս կամ այն երկրում տեղի ունեցող իրադարձությունների մասին։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներին նվիրված հոդվածները պետք է արտացոլեն այդ երկրների քաղաքական կառուցվածքը, պարտիաների նպատակներն ու փոխհարաբերությունները և սպառիչ պատկերացում տան այդ երկրներում սոցիալիզմի կառուցման առանձնահատկությունների վերաբերյալ։

Արտադրության մեջ հարյուրավոր ու հազարավոր բանվորներ և կոլտնտեսականներ աչքի են ընկնում իրենց նորարարություններով և առաջավոր մեթոդի կիրառումով։ Մինչդեռ առաջավոր փորձի պրոպագանդան, իրավացի կերպով նշեցին ընկերներ՝ Իսախանյանը (Գորիս), Ոսկանյանը (Սիսիան) և ուրիշները, «Լենինյան ուղիով»-ի էջերում իր արժանի տեղը չի գտնում։ Այդ մասին տպագրված հոդվածները երբեմն մակերեսային են, գրված են ընդհանուր առմամբ, չարչոտ ոճով։ Չկան առաջավորի իսկական փորձը բնութագրող փաստեր, որոնք ուսանելի լինեն մյուսների համար։ Մինչդեռ ամսագիրը պետք է հասնի այն բանին, որպեսզի առաջավոր փորձի պրոպագանդային նվիրված հոդվածները լինեն կոնկրետ, բանվորի կամ կոլտնտեսականի աշխատանքի մեթոդներն ու իսկական փորձը արտացոլող նյութեր։

Ընկերներ Օրդոյանը (Արտաշատ), Գրիգորյանը (Ղափան), Խաչատրյանը (Սիսիան) իրենց ելույթներում նշեցին, որ ընթերցողները ամսագրի էջերում քիչ են հանդիպում կոնսուլտացիոն ու պրոպագանդիստական հոդվածների սովետական օրինականության, պետության ու նրա տեղական օրգանների դերի և խնդիրների մասին։ Նրանք ասացին, որ աշխատավորների դեպուտատների շատ գյուղական, ավանային, քաղաքային ու շրջանային Սովետների գործադիր կոմիտեներ ունեն լավագույն աշխատանքի հարուստ փորձ, մինչդեռ այն չի ամփոփվում և հրապարակվում։ Նրանք ցանկություն հայտնեցին, որպեսզի ամսագրի էջերում այսուհետև ավելի լայն տեղ հատկացվի վերոհիշյալ հարցերին, որը լավագույն օժանդակություն կլինի պետական և սովետական ապարատների աշխատակիցներին։

Մեր Հայրենիքը խոշորագույն նվաճումներ է ձեռք բերել գիտության ու տեխնիկայի զարգացման բնագավառում։ Սովետական մարդկանց մանավանդ երիտասարդության մոտ մեծ հետաքրքրություն, սեր ու ձգտում կա տեխնիկական գիտության նորամուծություններին իրազեկ լինելու ուղղությամբ։ Այդ նկատառումով էլ ելույթ ունեցողներից ընկ. Գրիգորյանը (Նոր-Բայազետ) և ուրիշներ ցանկություն հայտնեցին, որպեսզի ամսագիրը մատչելի հոդվածներ տպագրի մեքենաշինության, գործիքաշինության նվաճումների, քիմիական արդյունաբերության դերը ժողովրդական տնտեսության մեջ և նրա հեռանկարները, գիտության մեջ կատարված հայտնագործությունների հարցերի մասին։

Ընտանիքի և կոմունիստական բարոյականության հարցերը բարձրացրին իրենց ելույթներում ընկերներ Քոչարյանը (Գորիս), Սողոմոնյանը (Արտաշատ), Մանուչարյանը (Շամշադին) և ուրիշներ։ Նրանք ցանկություն հայտնեցին, որպեսզի «Լենինյան ուղիով» ամսագիրը իր էջերում տեղ հատկացնի սոցիալիստական հասարակարգում ընտանիքի դերի հարցերին, արծարծի կոմունիստական բարոյականության հարցերը, ցույց տա սովետական մարդու ազնիվ, բյուրեղյա հատկությունները։ Ըստ որում այս մասին գրված հոդվածները ոչ միայն լինեն պրոպագանդիստական ու հրապարակախոսական, այլև գրվեն ակնարկներ, որոնք ավելի մատչելի են ընթերցող լայն զանգվածների համար։

Շատ հաճելի է, ասաց իր ելույթում ընկ. Մայսուրյանը, որ «Լենինյան ուղիով»-ը իր էջերում տեղ է հատկացնում ռևոլյուցիոն գործիչներին և հին բոլշևիկների հիշողություններին։ Նա ցանկություն հայտնեց, որպեսզի այսուհետև էլ ամսագրում տպագրվեն այդ կարգի նյութեր, որոնք երիտասարդությանը Կոմունիստական պարտիայի վեհ գործին նվիրվածության և սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործում մեծ նշանակություն կունենան։

Գրախոսության և մամուլի տեսության հարցերին նվիրեցին իրենց ելույթները ընկերներ Նիկողոսյանը (Վեդի), Մանվելյանը (Գորիս), Խուդավերդյանը (Սիսիան)։ Նրանք նշեցին, որ ճշմարտացի և օբյեկտիվորեն գրված մամուլի տեսությունները մեծ օժանդակություն և օգնություն են հանդիսանում շրջանային թերթերի խմբագրություններին՝ նրանց աշխատանքում եղած թերությունները վերացնելու և ավելի լայն ու օպերատիվ լուսաբանել շրջանի առօրյան։ Սակայն, երբեմն մամուլի տեսությունները գրվում են ոչ ճշմարտացի, աղավաղված փաստերի հիման վրա, որոնք ուսանելի ոչինչ չեն պարունակում իրենց մեջ։ Նրանք ցանկություն հայտնեցին, որպեսզի այսուհետև մամուլի տեսությունները գրվեն ոչ թե ընդհանուր խոսքերով ու շարլոն ֆրազներով, այլ կոնկրետ օրինակներով, հիմնավորված փաստերով, ընկերական տոնով ու խորհուրդներով, որոնք իրոք մեծ օգնություն կհանդիսանան գրախոսվող թերթի խմբագրության աշխատակիցներին։ Նրանք ցանկություն հայտնեցին տեսություններ գրել նաև լավագույն թերթերի դրական աշխատանքի փորձի մասին, որոնցից օրինակ կվերցնեն մյուսները։

Ելույթ ունեցող ընկերներից ոմանք բարձրացրին գիտաաթեիստական պրոպագանդայի հարցերը, որոնք ներկա պայմաններում կարևոր նշանակություն ունեն։ Նրանք ցանկություն հայտնեցին, որպեսզի ամսագրում տպագրվի բնագիտական և աթեիստական բնույթի մատչելի հոդվածներ, որոնք լավագույն օժանդակություն կհանդիսանան ագիտատորներին՝ բնակչության մեջ հակակրոնական պրոպագանդա կազմակերպելու գործում։

Ընկերներ Ղազարյանը (Արտաշատ), Մանուկյանը (Նոր-Բայազետ), Աղաբաբյանը (Շամ-

տանքների վիճակի համար։ Շրջկոմի բյուրոն միաժամանակ «Արթիկ-տուֆ»-ի դիրեկցիային պարտավորեցրեց առանց ձգձգելու լուծել կատարված արժեքավոր առաջարկությունների ընդունելու և արտադրության մեջ կիրառելու հարցերը։

## ՀՈԳԱՏԱՐ ԽՆԱՄՔ ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻՆ

Ընդամենը երեք ամիս է, ինչ Էջմիածնի շրջանի դաշտերում հնչում են կոլտնտեսությունների սեփական տրակտորները։ Այդ կարճ ժամանակամիջոցում կոլտնտեսականները սեփական փորձով համոզվեցին, թե որքան անհրաժեշտ ու իմաստուն էր ՄՏ կայանները վերակազմելու և կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, թե ինչպես այդ որոշման կենսագործումը լայն հնարավորություններ է ստեղծում կոլտնտեսությունների էկոնոմիկան է՛լ ավելի բարձրացնելու համար։

Սակայն շրջանի ոչ բոլոր գյուղերում է, որ նոր ձեռք բերված տեխնիկան օգտագործվում է լրիվ կարողությամբ։ Սամաղարի կոլտնտեսությունում հոգ չեն տարել տրակտորների ու մյուս գյուղատնտեսական մեքենաների ճիշտ օգտագործման, նրանց տեխնիկական խնամքի և մեխանիզատորական կադրերի ճիշտ ընտրության նկատմամբ։ Մեքենաները գտնվում են բացօթյա վիճակում, չի մաքրվում դիզելային մեքենաների վառելանյութերի ապարատուրան և այլն։ Մեքենաների պահպանման նպատակով կառուցվող ծածկերի շինարարությունը ձգձգվում է, կոլտնտեսությունը չունի արհեստանոց։

Կոլտնտեսությունում չեն կազմված ագրոմիջոցառումների կենսագործման, գնված տեխնիկայի օգտագործման, մարշրուտային ու տեխնիկական խնամքի անցկացման գրաֆիկ պլաններ։

Քննարկելով գնված տրակտորների օգտագործման հարցը Սամաղարի կոլտնտեսությունում, ՀԿՊ Էջմիածնի շրջկոմի բյուրոն Սամաղարի սկզբնական կազմակերպությանը պարտավորեցրեց միջոցների դիմել բարելավելու կոլտնտեսության կողմից գնված մեխանիզմների տեխնիկական խնամքը, կարգավորելու մեքենաների շահագործման հետ կապված ծախսումների, ինչպես նաև վառելանյութի, քսանյութի, պահեստային մասերի հաշվառումը, ձեռնարկել արհեստանոցի կառուցման աշխատանքները, ստեղծել հարմարություններ տրակտորների ու գյուղգործիքների տեխնիկական խնամքի և ընթացիկ նորոգումների հետ կապված աշխատանքները տեղերում կազմակերպելու համար։

Շրջկոմի բյուրոն միաժամանակ Սամաղարի պարտկազմակերպության բյուրոյին պարտավորեցրեց ուժեղացնել աշխատավորության մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը, ապահովել բոլոր կոմունիստների, նրանց ընտանիքների անդամների ու կոմերիտականների մասնակցությունը կոլտնտեսային աշխատանքներին։

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ—02673 Պատվեր 1621 Տիրաժ 6350
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 21/VI 1958 թ.։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։